### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

12 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1968

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении




Բովանդակություն

# Содержание



# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

Հոկտեմբերի 30—31-ը Մոսկվայում տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի հերթական պլենումը, որը լսեց և քննարկեց Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցումները «Գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ կուսակցության XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների կատարման ընթացքի մասին» և «ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի արտաքին քաղաքական գործունեության մասին»: Կենտկոմի պլենումը քննարկված հարցերի առթիվ ընդունեց համապատասխան որոշումներ:

Պլենումի որոշման և ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ տրված է գյուղատնտեսական հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ XXIII համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումների կատարման ընթացքի խոր վերլուծությունը, ուրվագծված էկոնոմիկայի այդ կարևոր ճյուղի հետագա վերելքի կոնկրետ ուղիները:

Գյուղատնտեսության զարգացման հարցի քննարկումը պլենումում մեր երկրի համար ունի կարևորագույն նշանակություն: *ՍՍՀՄ Գյուղատնտեսության ավելի արագ վերելքի հարցը*,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը իր զեկուցման մեջ,— *ոչ թե պարզապես տնտեսական հարց է, այլ քաղաքական, համակուսակցական, համապետական խնդիր:*

Կենտկոմի պլենումը հանրագումարի բերեց անցած երեք տարում երկրի էկոնոմիկայի, հատկապես գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ կուսակցության կատարած վիթխարի քաղաքական-կազմակերպական աշխատանքը, ցույց տվեց ժողովրդական տնտեսության այդ կարևոր ճյուղում ձեռք բերված նոր նվաճումները: Պլենումի փաստաթղթերը տոգորված են մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման լենինյան վեհ գաղափարներով:

Սովետական բազմազգ ժողովուրդն ընթանալով կուսակցության նշած ուղիով, վերջին տարիներին նորանոր հաջողությունների է հասել տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզներում: ՍՍՀՄ արդյունաբերության արտադրանքը 1966—1968 թվականներին աճել է 30 տոկոսով: Այդ տարիներին գործարկվել են ավելի քան 1000 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն և օբյեկտ, ավելի է զարգացել ծանր արդյունաբերությունը, զգալիորեն աճել է թեթև և սննդի արդյունաբերության համախառն արտադրանքը, լուծվել են մի շարք հրատապ տեխնիկական պրոբլեմներ: Նոր հաջողություններ են ձեռք բերված գյուղատնտեսության բնագավառում:

Կուսակցության կենտկոմն ու սովետական կառավարությունը կարճ ժամանակաընթացքում կոնկրետ միջոցառումներ իրականացրին գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազան ամրապնդելու և կոլտնտեսային ու սովխոզային արտադրության վերելքի գործում տնտեսական խթանների դերը բարձրացնելու ուղղությամբ: 1965—1967 թթ. պետությունն արտադրական շինարարության և տեխնիկա ձեռք բերելու համար գյուղատնտեսության մեջ ներդրեց ավելի քան 5 միլիարդ ռուբլով շատ միջոցներ, քան նախորդ երեք տարիներում: Եթե 1964 թ. գյուղն ստացել էր 223 հազար, ապա 1967 թ. ստացավ 287 հազար տրակտոր:

Ինչպես մատնանշված է Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի որոշման մեջ, գյուղատնտեսության վերելքի գործում կարևոր նշանակություն է ունեցել գյուղատնտեսական մթերքների գնումների նոր քաղաքականությունը, որը հիմնված է կայուն պլաններ սահմանելու և հացահատիկի գերպլանային վաճառքը նյութապես խրախուսելու վրա: Գյուղում նույնպես իրագործվել են սոցիալ-տնտեսական մի շարք անհրաժեշտ միջոցառումներ. կոլտնտեսականներին տրվում է ամենամսյա երաշխավորված վարձատրություն, բարելավված է նրանց և սովխոզների բանվորների կենսաթոշակային ապահովությունը:

Կուսակցության ու կառավարության կիրառած այդ միջոցառումները, կուսակցական, սովետական և հողային օրգանների կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը, կոլտնտեսականների և սովխոզների բանվորների, գյուղատնտեսական մասնագետների գործադրած հերոսական ջանքերը դրական արդյունքներ են տվել: Դրանք նպաստել են դաշտավարության և անասնապահության վերելքին, կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկայի ամրապնդմանը: Այսպես, 1965—1967 թվականներին ՍՍՀՄ գյուղատընտեսության տարեկան միջին համախառն արտադրանքը կազմել է 75 միլիարդ ռուբլի՝ գրեթե 10 միլիարդով ավելի, քան նախորդ եռամյակում: Գյուղատընտեսական մթերքների արտադրությունը, մեկ շնչի հաշվով, ավելացել է 11 տոկոսով: Հացահատիկի տարեկան միջին համախառն բերքը հասել է 147 միլիոն տոննայի կամ 10,5 տոկոսով ավելի, քան 1962—1964 թվականներին, բամբակինը՝ 5,9 միլիոն տոննայի՝ 20,4 տոկոսով ավելի, շաքարի ճակնդեղինը՝ 78 միլիոն տոննայի՝ 34,5 տոկոսով ավելի: Զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների բերքատվությունը:

Այդ նույն տարիներին մսի տարեկան միջին արտադրությունը բարձրացել-հասել է 10,7 միլիոն տոննայի կամ նախորդ եռամյակի համեմատությամբ աճել է 15 տոկոսով, կաթինը՝ 76,2 միլիոն տոննայի կամ 21,3 տոկոսով, ձվինը՝ 31,6 միլիարդ հատի կամ 11,2 տոկոսով: Հաջողությամբ են կատարվել հողագործության և անասնապահության մթերքների գնումների պետական պլանները: Բարձրացել է գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերի շահութաբերությունը: Երկրի սովխոզները, ամբողջությամբ վերցրած, վերջին երկու տարին փակել են շահույթով: Ավելացել են կոլտնտեսությունների և կոլտնտեսականների եկամուտները:

Գյուղատնտեսության աշխատողները նոր հաջողությունների հասան նաև 1968 թվականին: Հնգամյակի երրորդ տարում հացահատիկի համախառն բերքը կազմեց ավելի քան 165 միլիոն տոննա: Գերակատարվեց հացահատիկի գնումների պլանը, պետությունն ստացավ ավելի քան 68 միլիոն տոննա հաց: Ստացվեց բամբակի, շաքարի ճակնդեղի և մյուս կուլտուրաների հաջող բերք: Նախորդ տարվա համեմատությամբ ավելի շատ են արտադրվել ու գնվել



անասնապահական մթերքներ: Երկրում մսի, կաթի, ձվի և բրդի գնումների պետական պլանները կատարվել են ժամկետից շուտ:

Սույն թվականի նոյեմբերի 19-ին կայացած ՀԿԿ Կենտկոմի պլենումը քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի Հոկտեմբերյան պլենումի արդյունքները, միահամուռ հավանություն տվեց «Գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ կուսակցության XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների կատարման ընթացքի մասին» ընդունած որոշմանը և անվերապահորեն պաշտպանեց Կենտկոմի քաղբյուրոյի արտաքին քաղաքականության վարած կուրսը:

ՀԿԿ Կենտկոմի պլենումը միաժամանակ գոհունակությամբ նշեց, որ 1965—1967 թթ., նախորդ երեք տարիների համեմատությամբ, հանրապետության գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումներն ավելացել են 59 տոկոսով: Սա հիրավի խոշոր նվաճում է: Միայն ջրաշինարարության բնագավառում (1965—1968 թթ.) ներդրվել է 81 միլիոն ռուբլի և կառուցվել են մի շարք խոշոր ջրամբարներ, ջրհան կայաններ. ոռոգելի հողատարածությունները ընդարձակվել են 18,5 հազար ու ջրարբիացվել են 75 հազար հեկտար հողեր: Այդ նույն ժամանակահատվածում հանրապետության գյուղատնտեսության մեքենայացումն ու քիմիացումը նշանակալի չափով առաջ են ընթացել, որի շնորհիվ համախառն արտադրանքն ավելացել է 18 տոկոսով, զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, ինչպես և ավելացել են անասունների գլխաքանակն ու պետությանը հանձնվող և վաճառվող գյուղատնտեսական մթերքները:

Այդ հաջողությունները, որոնք հանրապետության գյուղական աշխատավորների նվիրված աշխատանքի արդյունքն են, մեզ բոլորովին չպետք է հանգստացնեն: Պլենումը բացահայտեց մի շարք լուրջ թերություններ ու պակասություններ գյուղատնտեսության ընդհանուր զարգացման տարբեր ոլորտներում և շրջանների կուսակցական ու պետական մարմինների ուշադրությունը սևեռեց գյուղատնտեսության բնագավառի չլուծված բազմաթիվ խնդիրների վրա: Պլենումը պահանջեց, որպեսզի հետայսու շրջանային համապատասխան կազմակերպություններն ու օրգանները անթերի կատարեն հնգամյակի բոլոր առաջադրանքները: Մի անգամ ևս նշվեց, որ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը Հայաստանում այսուհետև պետք է ավելանա հիմնականում բերքատվության բարձրացման հաշվին: Մինչդեռ, իրականում դեռ շատ են այն կոլտնտեսությունները և սովխոզները, որոնց մոտ ցածր է ստացվող բերքը, դեռ անբավարար են օգտագործվում խաղողի և պտղատու այգիների ռեզերվները, գյուղատնտեսական մեքենաների հզորությունը և ցածր է անասնապահության մթերատվությունը, մեկընդմիշտ չի լուծված կերի կայուն բազա ունենալու հարցը և այլն:

ՀԿԿ Կենտկոմի պլենումը կուսակցական շրջկոմների և շրջանային ակտիվի ուշադրությունն հրավիրեց այն հանգամանքի վրա, որ վերջին տարիներին մի շարք կոլտնտեսություններում անթույլատրելի կերպով նվազել են անբաժանելի ֆոնդերին արվող հատկացումները և աճել են վարչա-կառավարչական ծախսերը: Դեռ ավելին, պլենումում ելույթ ունեցող որոշ ընկերներ, ինչպես և Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Քոչինյանը իր զեկուցման մեջ վկայակոչեց բազմաթիվ փաստեր, երբ սովխոզներում և կոլտնտեսություններում տեղ են գտել անտնտեսվարության և աշխատանքի կարգապահության խախտման դեպքեր:

Համակողմանիորեն քննարկելով գյուղատնտեսության արդի վիճակը հանրապետությունում, պլենումը մի անգամ ևս կուսակցական կազմակերպությունների և շրջանային գործադիր կոմիտեների ուշադրությունը հրավիրեց կուսակցության այն ծրագրային դրույթի վրա, որ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացումը և բոլոր մթերքների արտադրության ավելացումը՝ եղել ու մնում է մեր կուսակցության և պետության գործունեության գլխավոր նպատակակետը:

Առաջիկա տարիներում անհրաժեշտ է շարունակել պատշաճ թափով առաջ մղել գյուղատնտեսության քիմիացման հույժ կարևոր գործը, որի համար անհրաժեշտ է ընդլայնել հանքային պարարտանյութերի և թունաքիմիկատների արտադրությունը:

Հանրապետության մելիորացիայի և ջրային տնտեսության զարգացման շահերը պարտավորեցնում են պետական համապատասխան օրգաններին, ինչպես և սովխոզներին ու կոլտնտեսություններին, առավելագույն խնայողությամբ օգտագործել ջրապաշարները, սիստեմատիկ նորոգել գործող ջրամբարներն ու ջրանցքները և լիակատար կարգ ու կանոն սահմանել ջրօգտագործման բնագավառում:

Քննարկելով սովխոզների շահութաբերության բարձրացման գործում գյուղատնտեսական և շրջանային օրգանների անբավարար գործունեությունը, պլենումը պահանջեց, որ հետագա տարիներին այնպես վարել աշխատանքները, որպեսզի բոլոր սովխոզները դառնան իրոք շահութաբեր: Միաժամանակ հանձնարարվեց հանրապետական համապատասխան մինիստրություններին և օրգաններին բարելավելու սովխոզների ղեկավարումը:

Պլենումում հանրագումարի բերելով հանրապետության գյուղատնտեսության մարզի աշխատողների անելիքները, ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Քոչինյանը նշեց, որ գյուղատնտեսության արագ զարգացման գործում աշխատավորներին մոբիլիզացնելու գլխավոր դերը պատկանում է կուսակցական կազմակերպություններին, կուսշրջկոմներին: Գյուղական կուսակցական կազմակերպությունները, գյուղի կոմունիստներն ունեն աշխատանքային սխրանքների հիանալի տրադիցիաներ: Ներկայումս հանրապետության գյուղի կոմունիստների քանակն իր շարքերում ունի մոտ 30 հազար մարդ: Անհրաժեշտ է առավել բանիմացությամբ և կազմակերպական արգասաբեր ջանքերով առաջ մղել այդ բանակի ստեղծարար գործունեությունը:

Բացահայտելով գյուղատնտեսության զարգացման և նրա ղեկավարման գործում եղած թերությունները, Կենտկոմի Հոկտեմբերյան պլենումը նշեց դրանց վերացման ու գյուղատնտեսության հետագա վերելքի ուղիները:

Հավանություն տալով գյուղատնտեսության հետագա զարգացման հիմնական ուղղությունների և միջոցառումների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի մշակած և ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման մեջ շարադրված առաջարկներին, պլենումը համակուսակցական և համապետական քաղաքական կարևորագույն խնդիր համարեց գյուղատնտեսության զարգացման տեմպերի ապահովումը:

Առաջիկա տարիներին երկրում հացահատիկի տարեկան արտադրությունը միջին թվով պետք է կազմի շուրջ 190—200 միլիոն տոննա: Այդ բանին հասնելու համար անհրաժեշտ է միջին բերքատվությունը (ամբողջությամբ վերցրած) մեկ հեկտարից հասցնել մոտավորապես 16—17 ցենտների:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը կոնկրետ միջոցառումներ մշակեց նոր տեխնիկական հիմքի վրա գյուղատնտեսության հետագա վերազինման, հանքային պարարտանյութերի արտադրության տեմպերի արագացման, մելիորատիվ աշխատանքների ծրագրերի հետագա իրականացման, գյուղատնտեսության բնագավառում գիտական հետազոտությունների արդյունավետության բարձրացման համար:

Խնդիր է դրված վերացնել գյուղատնտեսական հումքի մթերումների և վերամշակման գործում գոյություն ունեցող թերությունները և հիմնովին բարելավել դրանց կազմակերպումը, ավելի արդյունավետ դարձնել տնտեսական աշխատանքը կոլտնտեսություններում ու սովխոզներում, բարելավել կադրերի ճիշտ տեղաբաշխումն ու պատրաստումը:

Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի որոշումների կապակցությամբ նոր խնդիրներ են ծառանում կուսակցության քաղկոմ-շրջկոմների, սկզբնական կուսկազմակերպությունների առջև: Անհրաժեշտ է պլենումի փաստաթղթերի լայն պրոպագանդումը և մասսայականացումը: Այդ կապակցությամբ տարվող քաղաքական պրոպագանդան պետք է վարել նպատակասլաց, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի առջև ծառացած կոնկրետ խնդիրների հետ սերտորեն առնչված:

Հատուկ ուշադրություն պետք է հատկացնել Կենտկոմի պլենումի արդյունքների քննարկմանը նվիրված կուսակցական ժողովների, քաղկոմ-շրջկոմների, ակտիվի նիստերի նախապատրաստմանը: Անհրաժեշտ է ինքնաքննադատաբար վեր հանել և ընդհանրացնել հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների վերջին տարիների գործունեության փորձը, հաշվի առնել դրական ու բացասական երևույթները, կոնկրետ միջոցառումներ նշել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումները կենսագործելու համար:

Գյուղական շրջկոմներն ու սկզբնական կուսկազմակերպությունները պետք է ավելի բարձրացնեն աշխատավորների շրջանում տարվող կազմակերպչական և մասսայական-քաղաքական աշխատանքի մակարդակը: Անհրաժեշտ է կատարելագործել սոցիալիստական մրցության ձևերն ու մեթոդները, պայքար ծավալել աշխատանքի արտադրողականության բարձրացման, խնայողության ռեժիմի համար, ռեզերվները լրիվ օգտագործելու, պետական և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունն ամրապնդելու, աշխատանքի սոցիալիստական բարձր կարգապահության համար:

Բացառիկ կարևոր նշանակություն ունի Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի արտաքին քաղաքականության հարցի վերաբերյալ որոշումը, որով նա միահամուռ հավանություն տվեց ու լիովին պաշտպանեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի արտաքին քաղաքական գործունեությունը:

Հոկտեմբերյան պլենումի որոշումները քաղաքական և աշխատանքային նոր վերելքով դիմավորեցին Սովետական Միության աշխատավորները: Պլենումի որոշումների լույսի տակ մեր երկրի կոլտնտեսականները, սովխոզների բանվորները, գյուղատնտեսական մասնագետները հայտաբերում են չօգտագործված ռեզերվներն ու հնարավորությունները, լրացուցիչ պարտավորություններ ստանձնում, ճշգրտում այն բնագծերը, որ պետք է նվաճենք Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 50-ամյակի պատվին ծավալված համաժողովրդական սոցիալիստական մրցությունում:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ Մ. Ա.

## ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆ Է

Մարքս-լենինյան տեսության ուսումնասիրության կարևորագույն պրոբլեմներից են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ծագման ու զարգացման օրինաչափությունները, կապիտալիստականի նկատմամբ նրա մեծագույն առավելությունների լուսաբանումը։

Սոցիալիստական երկրների համագործակցությունը միջպետական հարաբերությունների նոր ձև է, որտեղ ներդաշնակորեն զուգակցվում են ազգային և ինտերնացիոնալ շահերը։ Սոցիալիստական երկրների բազմակողմանի կապերը, նրանց կատարելագործումն ու ընդլայնումը, աշխատանքի միջազգային բաժանումը մեծ ազդակ են համագործակցության յուրաքանչյուր երկրի զարգացման և բարգավաճման համար։

Սոցիալիզմի պայմաններում ազգային սուվերենությունը ձեռք է բերել նոր բովանդակություն. այն անհարիր է ինքնամեկուսացման, տնտեսական ավտարկիայի, կուլտուրական ներփակվածության հետ։ Սոցիալիստական սուվերենության սկզբունքը նպաստում է ազգի սոցիալական պրոգրեսին, նրա բազմակողմանի զարգացմանը։

«Կյանքը ցույց է տալիս,— ասում է ընկ. Լ. Ի. Բրեժնևը,— որ սոցիալիստական համագործակցության շրջանակներում երկրներից յուրաքանչյուրն ստանում է ամենաբարենպաստ հնարավորություններ իր սուվերենության, անկախության ամրապնդման համար և միևնույն ժամանակ վայելում այն բոլոր առավելությունները, որոնք տալիս են փոխօգնությունը և ընկերական աջակցությունը»։

Գրականության մեջ չի կարելի հիմնավորված համարել այն կարծիքները, թե հնարավոր է կամ նույնիսկ անհրաժեշտ է յուրաքանչյուր երկրում ստեղծել արտադրության բոլոր ճյուղերը, արտադրել բացարձակապես ամեն ինչ։ Դա առաջ է բերում չարդարացված ունիվերսալիզմ, ավելորդ զուգահեռականություն, վնասում արտադրության արդյունավետությանը, արտադրանքի որակին և այլն։

«Գոյություն ունեցող ունիվերսալիզմը,— գրում է ԼԺՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ Պ. Յարոշևիչը,— որ բխում է պատմական անցյալից և տնտեսական զարգացման սպեցիֆիկ պայմաններից, մինչև վերջ չհաղթահարված տենդենցը՝ յուրաքանչյուր երկրում թողարկել բոլոր ապրանքները, ինչպես նաև մի շարք այլ պատճառներ, հասցրին այն բանին, որ մենք ոչ միշտ ճիշտ գնահատեցինք ՏՓԽ-ի անդամ երկրների միջև արտադրության տնտեսապես շահավետ և արդյունավետ մասնագիտացման և կոոպերացման զարգացման անհրաժեշտությունը...» («Правда», 13 ապրիլի, 1966 թ.)։

Սոցիալիստական երկրների ինդուստրացումը և բազմաճյուղ ազգային տնտեսության ստեղծումը չպետք է վնասի արտադրության միջպետական մասնագիտացմանը, եղբայրական երկրների հետ համագործակցության ամրապնդմանը։ Դրանցից խուսափելը և ազգային շրջանակներում ներփակվելը մեծ վնաս են բերում և՛ այդ ազգային տնտեսությանը և՛ սոցիալիզմի համաշխարհային սիստեմին։

Անհիմն է նաև յուրաքանչյուր երկրի չափազանց նեղ մասնագիտացումը, «մասնագիտացված ինդուստրացման» կոնցեպցիան, որը, ըստ էության, անտեսում է բազմաճյուղ տնտեսության ստեղծման հնարավորությունը։ Այսպիսով, ազգային և ինտերնացիոնալ խնդիրների խելացի զուգակցումը սոցիալիստական համագործակցության սիստեմում միակ ճիշտ սկզբունքն է, որն ապահովում է յուրաքանչյուր երկրի և ամբողջ սիստեմի կենսական կարիքներն ու պահանջմունքները։ Սակայն այդ երկու խնդիրների ներդաշնակ զուգակցումը քաղաքականության մեջ, սոցիալիստական երկրների միջպետական փոխհարաբերություններում իրականացվում է որոշակի դժվարությունների հաղթահարմամբ։

Ազգային և ինտերնացիոնալ շահերը ամեն մի երկրի համար ունեն կարևոր նշանակություն։ Պատմականորեն ազգայինը նախորդել է ինտերնացիոնալիստականին։ Ինտերնացիոնալիստականը հանդես է գալիս որպես բանվոր դասակարգի, աշխատավորների ընդհանուր դասակարգային շահերի արտահայտություն, իսկ ազգայինը՝ որպես դրանց առանձնահատուկ դրսևորում։ Ժողովրդի ազգային շահերի մասին խոսելիս չպետք է ելնել ինչ-որ «ազգային ոգու» առանձնահատկություններից։ Սոցիալիստական համագործակցության սիստեմում յուրաքանչյուր երկրի արմատական շահերն օբյեկտիվորեն համընկնում են դաշնակից երկրների ազգային շահերին։ Նման զուգորդումը մշտական և կարևոր գործոն է սոցիալիստական երկրների կյանքում և սոցիալիստական շինարարության զարգացման օրինաչափություններից մեկն է։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը, մարքս-լենինյան տեսությունը լիակատար չափով հաշվի են առնում ինչպես սոցիալիստական երկրների ընդհանուր, ինտերնացիոնալ, այնպես էլ առանձին երկրների ազգային շահերը։ Եվ դա հասկանալի է։ Գիտական կոմունիզմը խորապես ինտերնացիոնալ է իր ծագումով, բնույթով և նպատակով։ Սոցիալիստական երկրների ազգային և ինտերնացիոնալ շահերը գտնվում են դիալեկտիկական միասնության և մշտական փոխազդեցության մեջ։ Այստեղ տեղի է ունենում երկրների մակարդակների հավասարեցում, որը սոցիալիստական համագործակցության շրջանակներում ինտերնացիոնալ և ազգային շահերի հարմոնիկ զարգացման օրինաչափության գործողության արտահայտությունն է։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, միջազգային կոմունիստական շարժման մայրուղին ինտերնացիոնալիզմն է, կոմունիստական և բանվորա-

կան կուսակցությունների քաղաքական գծի ճշտության չափանիշը։ Միաժամանակ պետք է նկատել, որ սոցիալիստական երկրների միասնությունը և համախմբվածությունը խարսխված են ո՛չ միայն ընդհանուր, այլև ազգային, սպեցիֆիկ շահերի խստիվ հաշվառման և պահպանման սկզբունքների վրա։ Բնականաբար, առաջին պլանի վրա պետք է դրվեն և ընդգծվեն ընդհանուր օրինաչափությունները։

Սոցիալիստական երկրների համագործակցությունը և բարեկամությունը պատմական զարգացման ուղի են անցել, կազմավորման շրջանից սկսած որակական փոփոխությունների են ենթարկվել, հաղթահարել օբյեկտիվ և սուբյեկտիվ բնույթի դժվարություններ։ Հաղթահարվում են սոցիալիստական համագործակցության երկրների էկոնոմիկայում, կուլտուրայում ու կենցաղում եղած տարբերությունները։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումն արդիականության վճռական գործոնն է, մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունը։

«Եղբայրական կուսակցությունները,— ասված է Բրատիսլավայում կայացած սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունների հայտարարության մեջ,— պատմական փորձով համոզվել են, որ սոցիալիզմի ու կոմունիզմի ուղիով առաջ ընթանալ կարելի է միայն խստիվ ու հետևողականորեն առաջնորդվելով սոցիալիստական հասարակարգի կառուցման ընդհանուր օրինաչափություններով և, առաջին հերթին, ամրապնդելով բանվոր դասակարգի ու նրա ավանգարդի՝ կոմունիստական կուսակցությունների ղեկավար դերը։ Ընդ որում ամեն մի եղբայրական կուսակցություն, ստեղծագործաբար լուծելով սոցիալիստական հետագա զարգացման հարցերը, հաշվի է առնում ազգային առանձնահատկություններն ու պայմանները»։

Այսօր էլ ակտուալ են Վ. Ի. Լենինի մի շարք սկզբունքային դրույթները ազգերի փոխհարաբերությունների մասին։

Խոսելով փոքր ազգերի առավելագույն վստահություն ձեռք բերելու մասին, մեծ առաջնորդը նշում էր, որ հարկավոր է նրանց նկատմամբ «...ունեցած իր վերաբերմունքով կամ զիջումներով այսպես թե այնպես փոխհատուցել այն անվստահությունը, այն կասկածամտությունը, այն վիրավորանքները, որ պատմական անցյալում նրան հասցրել է ազգի «մեծապետական» կառավարությունը» (Երկեր, հ. 36, էջ 703)։

Կամ, ոչ մի բան այնպես չի կասեցնում պրոլետարական դասակարգային համերաշխության զարգացումն ու ամրապնդումը, ինչպես ազգային անարդարությունը, որ փոքր ազգի ներկայացուցիչները «...ոչ մի բանի նկատմամբ այնպես զգայուն չեն, ինչպես հավասարության զգացմունքի և այդ հավասարության խախտման նկատմամբ, իր ընկեր պրոլետարների կողմից թեկուզ նույնիսկ անփութորեն, թեկուզ նույնիսկ կատակի ձևով այդ հավասարությունը խախտելու նկատմամբ։ Ահա թե ինչու տվյալ դեպքում ավելի լավ է չափազանցնել ազգային փոքրամասնությունների նկատմամբ զիջողականության ու մեղմության կողմը, քան չչափազանցել» (նույն տեղը, էջ 704)։ Իմպերիալիզմի դարաշրջանում պատմական հանգամանքների բերումով ժողովուրդների կյանքում ազգային էգոիզմը, սահմանափակությունը շարունակում են խաղալ իրենց բացասական դերը։ «Այստեղից պարտավորություն է բխում բոլոր երկրների գիտակից կոմունիստական պրոլետարիատի համար՝ առանձին զգուշությամբ և առանձին ուշադրությամբ վերաբերվել ազգային



զգացմունքների մնացուկներին առավել երկար ժամանակ ճնշված երկրների և ժողովուրդների մեջ, հավասարապես պարտավորություն՝ որոշ զիջումներ անել նշված անվստահությունը և նշված նախապաշարմունքներն ավելի արագորեն վերացնելու նպատակով» (Երկեր, հ. 31, էջ 173)։

Շատ կարևոր է, որ մեծ և ավելի զարգացած ժողովուրդներն առավել ուշադիր և հոգատար լինեն փոքր և պակաս զարգացած ժողովուրդների նկատմամբ, հաշվի առնեն նրանց առանձնահատկությունները, սպեցիֆիկ շահերը և այլն։ Լենինյան տվյալ բնութագրումները գրված են ցարական կայսրության լուծը թոթափած ժողովուրդների փոխհարաբերությունների ուսումնասիրության վերլուծության վրա։ Սակայն լենինյան գաղափարներն իրենց ակտուալությունն ու թարմությունը պահպանում են նաև մեր օրերում, իրենց հիմնական գծերով կիրառելի են նաև սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների փոխհարաբերությունների բնագավառում։

Շատ կարևոր է և այն հանգամանքը, որ սոցիալիզմը զարգացնում է ժողովուրդների ազգային ինքնագիտակցությունը, նրանց հայրենասիրական զգացումները, ազգային հպարտությունը։ «Պետք է ելնել այն փաստից,— գրել է Հունգարիայի ՍԲԿ-ի Կենտկոմի քարտուղար Զոլտան Կոմոչինը,— որ մեր ժամանակ հայրենասիրական և ազգային զգացումների նշանակությունը ո՛չ միայն չի պակասում, այլ, ավելի շուտ, մեծանում է» («Правда» 13 սեպտեմբերի, 1966 թ.)։ Դա մեր դարաշրջանի բնորոշ գծերից մեկն է, երբ հայրենասիրությունը, ինտերնացիոնալիզմը, ազգային հպարտությունը մեծ դեր են խաղում միջազգային քաղաքականության մեջ, միջազգային մեծ ու փոքր պրոբլեմների լուծման գործում։

Սոցիալիստական հայրենասիրությունը կոմունիստական գաղափարախոսության արտահայտությունն է, ժողովուրդների համերաշխության ու եղբայրության խորհրդանիշը։ Սոցիալիստական ազգային հպարտությունը նոր հասարակարգի հաստատման շնորհիվ ձեռք բերված սոցիալական անվիճելի նվաճումների, արդիականության առաջընթացը գլխավորելու գիտակցումն է։ Սոցիալիստական երկրների աշխատավորները հպարտանալու շատ բան ունեն։ Նրանք որոշիչ դեր են խաղում համաշխարհային հեղափոխական պրոցեսում, գիտական կոմունիզմի տեսության զարգացման և պրոպագանդման գործում, գիտության ու արվեստի բնագավառներում։

Անհրաժեշտ է ուսումնասիրել և ստեղծագործաբար յուրացնել Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների դրական փորձը։ Սոցիալիստական համագործակցության երկրների փորձի, նրանցում կատարվող երևույթների ուսումնասիրության և գնահատման ժամանակ հարկավոր է ելնել գոյություն ունեցող կոնկրետ իրավիճակից, ուժերի փոխհարաբերություններից, սոցիալական վերափոխումների ուղղությունից։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմում կատարելագործվում են երկրների երկկողմանի և բազմակողմանի համագործակցության ու փոխօգնության ձևերը, մեթոդներն ու եղանակները։ Այդ են պահանջում համաշխարհային սոցիալիզմի շահերը։

Սոցիալիստական երկրների միասնությունը ենթադրում է նոր հասարակարգ կառուցող ժողովուրդների արմատական, կենսական շահերի և խնդիրների համակցում, հասարակական-տնտեսական առանձնահատկությունների հաշվառում։

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմն անհարիր է ազգային շահերի և առանձնահատկությունների թերագնահատման, գերագնահատման կամ ու-

հեցման հետ, որոնք անխուսափելիորեն տանում են դեպի նացիոնալիզմ, ազգային սնապարծություն, անտեսում ընդհանուր շահերը։

Վ. Ի. Լենինը բազմիցս ընդգծել է ժողովուրդների միջև նոր հարաբերություններ հաստատելու գործում նացիոնալիզմի վտանգը, եղբայրական միության ստեղծման ճանապարհին հայտնվող խոչընդոտները։ «Այդպիսի միությունը,— գրել է նա,— չի կարելի միանգամից իրագործել, դրան հարկավոր է հասնել մեծագույն համբերությամբ և զգուշությամբ աշխատելով, որպեսզի գործը չփչանա, որպեսզի անվստահություն չառաջանա, որպեսզի վերացվի այն անվստահությունը, որը մնացել է կալվածատերերի և կապիտալիստների դարավոր ճնշումից, մասնավոր սեփականության և դրա բաժանման ու վերաբաժանման համար եղած թշնամանքից» (Երկեր, հ. 30, էջ 368)։

Դասակարգային հակամարտությունների վերացումով ժողովուրդների միջև անհետանում են ազգային կոնֆլիկտները, անվստահությունը։ Սակայն անմիջականորեն կախված լինելով դասակարգային հարաբերություններից, ազգային հարաբերություններն իրենց զարգացման մեջ դրսևորում են հարաբերական ինքնուրույնություն։ Այն հնարավորություն է ընձեռում ազգային էգոիզմի դրսևորումներին անգամ սոցիալիզմի պայմաններում, երբ այլևս ժողովուրդների և պետությունների միջև չկան հակամարտություն ծնող սոցիալ-տնտեսական գործոններ։ «Նացիոնալիստական նախապաշարմունքները,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— և երբեմնի ազգային երկպառակության մնացորդները կազմում են այն բնագավառը, որտեղ սոցիալական առաջադիմությանը ցույց տրվող դիմադրությունը կարող է լինել առավել տևական ու համառ, կատաղի և ճկուն» (էջ 28)։ Մեծապետական շովինիզմը և նացիոնալիզմը, նրանց ամեն տեսակ դրսևորումները մեծ վնաս են հասցնում սոցիալական առաջադիմությանը, համագործակցության երկրների ընդհանուր շահերին։

Ինտերնացիոնալիզմի սկզբունքներից նահանջելը, ազգային սահմանափակվածության դրսևորումները վնասում են կոմունիստական շարժման ընդհանուր գործին, նրա առանձին ջոկատներին։ «Պրակտիկան ցույց է տալիս, որ մարքս-լենինյան գծից շեղումներն առանձնապես վտանգավոր են դառնում, երբ դրանք զուգորդվում են նացիոնալիզմի, մեծապետական շովինիզմի և հեգեմոնիզմի դրսևորումների հետ» (Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50 տարին։ ՍՄԿԿ Կենտկոմի թեզիսները։ 1967, էջ 86)։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմն անհամատեղելի է Սովետական Միության նկատմամբ անբարյացակամ վերաբերմունքի հետ։ ՍՄԿԿ XXIII համագումարի ամբիոնից ընկեր Յանոշ Կադարը ասաց. «Հակասովետական կոմունիզմ չի եղել, չկա և երբեք չի լինի» (Проблемы мира и социализма 1966 թ., № 5)։ Պատահական չէ, որ իմպերիալիստական ռեակցիան սոցիալիզմի համաշխարհային սիստեմի դեմ պայքարելիս իր հույսը դնում է նացիոնալիստական տարրերի աշխուժացման վրա։ Նացիոնալիզմի վտանգը մեծանում է այնտեղ, որտեղ նրա դեմ հետևողական պայքար չի մղվում, որտեղ չափազանցնում են տվյալ երկրի ազգային և պատմական առանձնահատկությունները, հեռանում ընդհանուր օրինաչափություններից, իրար հակադրում ժողովուրդների շահերը։

Պայքարը նացիոնալիզմի բոլոր դրսևորումների դեմ շատ նուրբ և դժվար գործ է ինչպես առանձին երկրի, այնպես էլ սովերեն պետությունների ամբողջ սիստեմի շրջանակներում։ «Պրոլետարական ինտերնացիոնալիզմի հիմնական պահանջներից է այն,— նույն հոդվածում նշում է Ջ. Կոմոլինը,— որ յուրաքանչյուր կոմունիստական կուսակցություն պետք է, առաջին հերթին, պայքար մղի սեփական նացիոնալիզմի դեմ և դրանով ամենամեծ օգնությունը ցույց տա ուրիշ ազգերի նացիոնալիզմի դեմ մղվող պայքարին»։ Նացիոնալիզմի դրսևորումների դեմ պայքարելիս չպետք է վիրավորել ազգային զգացմունքները։ «Կյանքն ամեն քայլում ցույց է տալիս,— գրում են Լ. Ջելենեցը և Ա. Ջարակչիևը,— որ կոմունիստներից պահանջվում է նուրբ և բարդ, կարելի է ասել ոսկերչական աշխատանք, որպեսզի մաքրելով նացիոնալիզմի ժանգը՝ չվնասեն, չվիրավորեն մասսաների հայրենասիրական զգացմունքները» (Великий исторический опыт· «Проблемы мира и социализма», № 5, 1965, стр. 22);

Սոցիալիստական համաշխարհային սիստեմում օբյեկտիվ պատճառներ չկան նրա մեջ մտնող ժողովուրդների և պետությունների միջև հակամարտությունների և կոնֆլիկտների համար։ Այստեղ որոշիչ տենդենցը միասնությունն է, իսկ տարակարծիքները, տարաձայնությունները ժամանակավոր են։ Այն, ինչ որ միավորում է սոցիալիստական երկրները (նրանց տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական հիմքերի ընդհանրությունը), շատ ավելի ուժեղ է, քան այն, ինչ որ կարող է նրանց բաժանել որոշ ժամանակ։ Տարաձայնությունները եղբայրական կուսակցությունների միջև, նրանց մասնակի շահերի անհամապատասխանությունն անցողիկ են, ամբողջությամբ վերցրած տիպական չեն սոցիալիստական համագործակցությանը։ Մինչդեռ եղբայրական ժողովուրդների բարեկամական դաշինքը հավիտենական է, անխախտ, օրինաչափ։

Կոմունիստական կուսակցությունների ճիշտ, մարքս-լենինյան, ինտերնացիոնալիստական քաղաքականության կիրառման դեպքում բոլոր հնարավորությունները կան բարեկամորեն լուծելու պրակտիկայում ծագած տարաձայնությունները, հաղթահարելու հակասությունները։ Չինական ղեկավարության ներկայիս կուրսը հեռու է մարքսիստական-լենինյան սկզբունքներից. այն բուրժուական ավանտյուրիզմի քաղաքականության, մեծապետական շովինիզմի և հեգեմոնիզմի դրսևորում է։

Բոլոր տեսակի, նույնիսկ ամենասուր տարաձայնությունների և հակասությունների դեպքում արմատական դասակարգային շահերը պահանջում են, որ սոցիալիստական բոլոր երկրներում ժողովրդական մասսաները դաստիարակվեն փոխադարձ հարգանքի, ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության, համագործակցության և փոխօգնության բարձր գիտակցությամբ։ «Կոմունիստներն իրենց առաջնահերթ պարտականությունն են համարում,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— աշխատավորներին դաստիարակել ինտերնացիոնալիզմի և սոցիալիստական հայրենասիրության ոգով, նացիոնալիզմի և շովինիզմի ամեն տեսակ դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով» (էջ 28)։

Կոմունիստական շարժման միասնության համար կարևոր նշանակություն ունեն եղբայրական կուսակցությունների ներկայացուցիչների հանդիպումները, բարեկամական, գործարար մթնոլորտում կարծիքների փոխանակումը, գործունեության ընդհանուր պլատֆորմի մշակումը։ Կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1960 թվականի Մոսկվայի խորհրդակցության Հայտարարության մեջ ցույց է տրված, որ յուրաքանչյուր կոմունիստական կուսակցություն պատասխանատու է ո՛չ միայն իր երկրի, այլև միջազգային բան-

վոր դասակարգի առջև, ամբողջ միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման առաջ. նա պարտավոր է ոչ թե խոսքով, այլև գործով իրականացնել պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները։

ՍՄԿԿ մյուս մարքս-լենինյան կուսակցությունների հետ միասին հետևողականորեն պաշտպանում է միջազգային կոմունիստական շարժման գլխավոր գիծը։ ՍՄԿԿ XXIII համագումարը Կենտկոմին հանձնարարեց «Այսուհետև ևս սոցիալիզմի բոլոր երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հետ գաղափարա-քաղաքական կապերը զարգացնել և ամրապնդել մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա, ըստ ամենայնի նպաստել սոցիալիստական համագործակցության համախմբվածությանը, նրա հզորության ու ազդեցության ամրապնդմանը, ընդլայնել տնտեսական, գիտատեխնիկական համագործակցությունը և կուլտուրական կապերը, սովետական մարդկանց դաստիարակել եղբայրական երկրների ժողովուրդների հետ բարեկամության ու ինտերնացիոնալ համերաշխության ոգով» (ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը, Երևան, 1967, էջ 289—290)։ Միասնության ապահովումը մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա, միջազգային կոմունիստական շարժման ամենահրատապ պրոբլեմն է։ Աշխարհի կոմունիստների միասնության ամրապնդման համար մեծ նշանակություն ունեցան Եվրոպայի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Կառլովի-Վարիի կոնֆերանսը և 1968 թ. փետրվար—մարտ ամիսներին Բուդապեշտի կոնսուլտատիվ հանդիպումը։ Միջազգային մասշտաբով լայն արձագանք գտավ սոցիալիստական երկրների կոմունիստական-բանվորական կուսակցությունների ներկայացուցիչների 1968 թ. օգոստոսի 3-ի Բրատիսլավայում կայացած խորհրդակցությունը։ Ընդունված հայտարարության մեջ ասված է. «Խորհրդակցության մասնակիցներն իրենց պարտքն են համարում հետևողականորեն պայքարել միջազգային կոմունիստական շարժման համախմբվածությունն ամրապնդելու համար։ Նրանք նշում են, որ վերջին ժամանակներս մեծ աշխատանք է կատարվել կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային նոր խորհրդակցության նախապատրաստման ուղղությամբ։ Եղբայրական կուսակցությունները բարձր են գնահատում այդ աշխատանքը և այն համոզմունքն են հայտնում, որ առաջիկա խորհրդակցությունը կանցնի հաջողությամբ և կարևոր ավանդ կներդնի արդիականության հեղափոխական բոլոր ուժերի համախմբման գործում»։

Սոցիալիստական երկրների կոմունիստական կուսակցությունները իրենց համերաշխությունը, բարձր զգոնությունը հաստատակամորեն հակադրում են իմպերիալիզմի հակակոմունիստական բոլոր ուժերի ամեն տեսակ փորձերին, որոնց նպատակն է «դեմոկրատիայի զարգացման», «սուվերենության ամրապնդման» կեղծ լոզունգների քողի տակ սոցիալիստական առանձին երկրների, մասնավորապես Չեխոսլովակիայի ազգային շահերը հակադրել ամբողջ սիստեմի ընդհանուր շահերին, խարխլել սոցիալիզմի երկրների մեծ համագործակցությունը։ Սոցիալիստական երկրները եղբայրական օգնության հասնելով Չեխոսլովակիային, դրանով իսկ ցույց տվին ազգային և ինտերնացիոնալ շահերի զուգակցման նոր օրինակ։

«Եղբայրական կուսակցությունները,— գրված է Բրատիսլավայի խորհրդակցության հայտարարության մեջ,— երբեք ոչ-ոքի թույլ չեն տա սեպ խրել սոցիալիստական պետությունների միջև, խարխլել սոցիալիստական հասարակարգի հիմքերը»։

ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ.
Հայկական ՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ

# ԱԶԳԱՅԻՆ ՀԱՐՑԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԾՐԱԳԻՐԸ ԵՎ ՆՐԱ ԻՐԱԳՈՐԾՈՒՄԸ ՍՍՀՄ-ՈՒՄ

«Հին աշխարհին, ազգային ճնշման աշխարհին, ազգային կռվոցին ու ազգային առանձնացմանը բանվորները հակադրում էին բոլոր ազգերի աշխատավորների միասնականության նոր աշխարհը, որի մեջ տեղ չկա ո՛չ մի արտոնության, ո՛չ էլ մարդու կողմից մարդու ամենափոքր ճնշման»։

ԼԵՆԻՆ

Ազգային հարցը մարքս-լենինյան հեղափոխական ուսմունքի հիմնարար սկզբունքներից է։ Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կարլ Մարքսը և Ֆրիդրիխ Էնգելսը առաջինը սահմանեցին ազգային հարցի ելակետային դրույթները, հռչակեցին պրոլետարական ինտերնացիոնալիզմի մարտական նշանաբանը՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք»։ Դրանով Մարքսն ու Էնգելսը ընդգծում էին, որ բոլոր երկրներում պրոլետարներն ունեն միևնույն շահերը, միևնույն թշնամին, ուստի և նրանք պետք է միահամուռ պայքարեն։ Մարքսն ու Էնգելսը բազմիցս նշել են, որ աշխատավորների ազատագրությունը ո՛չ թե ազգային, այլ սոցիալական պրոբլեմ է, որ ազգային հարցը ենթակա է գլխավորին՝ սոցիալիզմի հաղթանակի համար մղվող պայքարին։

Համաշխարհային պրոլետարիատի առաջնորդ և ուսուցիչ Վլադիմիր Իլյիչ Լենինը, զարգացնելով մարքսիզմը պատմական նոր պայմաններում՝ իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների դարաշրջանում, ստեղծեց ազգային և ազգային-գաղութային հարցի ամբողջական ուսմունք, մշակեց կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականությունը։

Տակավին 90-ական թվականների իր վաղ շրջանի երկերում («Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ի՞նչպես են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ», «Սոցիալ-դեմոկրատական կուսակցության ծրագրի նախագիծն ու բացատրությունը» և այլն) Լենինը նշել է ազգային հարցի կարևորությունը, ցույց տվել, որ ճնշված երկրներում ազգային-ազատագրական շարժումը պրո-

լետարիատի և պրոլետարական հեղափոխության ռեզերվն ու դաշնակիցն է, ընդգծել ցարիզմի ու կապիտալիզմի դեմ մղվող պայքարում Ռուսաստանի բոլոր ազգությունների բանվորների համախմբման անհրաժեշտությունը։

Կուսակցության II համագումարի նախօրեին Լենինի մշակած դրույթները ազգերի ինքնորոշման իրավունքի, մարզային ինքնավարության, պրոլետարական կուսակցության կառուցման ինտերնացիոնալ սկզբունքների մասին դարձան ծրագրային և ընդունվեցին կուսակցության գերագույն օրգանի կողմից։ Ռուսական առաջին հեղափոխության փորձը լիովին հաստատեց բոլշևիկյան ծրագրի ճշտությունը։

Ազգային հարցը մեծ հրատապություն ստացավ, բոլշևիկների հատուկ ուշադրության առարկա դարձավ ռեակցիայի և հեղափոխական նոր վերելքի տարիներին։ 1905—1907 թթ. հեղափոխության ժամանակավոր պարտությունից հետո ուժեղացան մեծապետական շովինիզմը, ինչպես նաև տեղական նացիոնալիզմը, որոնք թշնամի էին աշխատավորների ազատագրական գործին։ Ռուսաստանում, ուր բնակչության 57 տոկոսը կազմում էին ազգային փոքրամասնությունները, հեղափոխությունը կարող էր իրագործել միայն Ռուսաստանի բոլոր ազգությունների միավորված պրոլետարիատը, որն իր հետևից տանում էր բոլոր ազգությունների աշխատավորական մասսաների հետևողական դեմոկրատական և հեղափոխական պայքարի ընդունակ տարրերին, ասում էր Լենինը։

Անցկացնելով բռնի ռուսականացում, բորբոքելով ազգային երկպառակություն, ցարիզմը ձգտում էր անվստահություն ու թշնամանք սերմանել ժողովուրդների միջև, խանգարել նրանց համախմբմանը հեղափոխական պայքարում։

1913—14 թթ. Լենինը գրեց մի շարք աշխատություններ՝ «ՌՍԴԲԿ-ի ազգային ծրագրի մասին», «Քննադատական դիտողություններ ազգային հարցի վերաբերյալ», «Ազգերի ինքնորոշման իրավունքի մասին» և այլն, որտեղ զարգացրեց ու կոնկրետացրեց կուսակցության ծրագիրն ու քաղաքականությունը, մերկացրեց հակամարքսիստական հայացքները։ Ազգային հարցը կարևոր տեղ էր գրավում կուսակցության Պրագայի կոնֆերանսում, ՌՍԴԲԿ Կենտկոմի Կրակովի և, հատկապես, Պորոնինոյի խորհրդակցություններում, որոնք տեղի ունեցան 1912—1913 թվականներին՝ Լենինի անմիջական ղեկավարությամբ։

Ազգերի և ազգային-ազատագրական շարժումների զարգացման խոր ուսումնասիրության հիման վրա Լենինը ցույց է տվել, որ մարքսիստական կուսակցությունն ազգային հարցի լուծման գործում հաշվի է առնում կապիտալիզմի զարգացման պատմական երկու տենդենց՝ առաջինը՝ ազգային կյանքի և ազգային շարժումների զարթոնքն է, պայքարն ամեն տեսակի ազգային ճնշման դեմ, ազգային պետությունների ստեղծումը։ Երկրորդը՝ ամեն տեսակ հարաբերությունների զարգացումն ու հաճախացումն է ազգերի միջև, ազգային միջնորմների քանդումը, կապիտալի, տնտեսական կյանքի, քաղաքականության, գիտության և այլնի ինտերնացիոնալ միասնության ստեղծումը (տե՛ս Երկեր, հ. 20, էջ 14)։

Այդ տենդենցներից առաջինը համընկնում է կապիտալիզմի զարգացման սկզբին, երկրորդը՝ բնորոշ է հասունացած կապիտալիզմին։ Մարքսիստների ազգային ծրագիրը ելնում է այդ երկու տենդենցներից, պաշտպանում ազգերի իրավահավասարությունը, լեզուները, այդ հարցում անթույլատրելի հա-



մարում որևէ արտոնություն, հաստատում ինտերնացիոնալիզմը, անհաշտ պայքար մղում պրոլետարիատի շրջանում բուրժուական նացիոնալիզմի վարակը տարածելու դեմ։

Ազատ զարգացման տենդենցի կապակցությամբ Լենինը մշակեց ազգերի ինքնորոշման իրավունքի հարցը։ Յուրաքանչյուր ազգ ինքնին ազատ է. առանց ուրիշ ազգի կողմից գործադրվող բռնության ու ճնշման կարող է տնօրինել իր ճակատագիրը, այս կամ այն իրավահավասար հիմունքներով մնալ կենտրոնացված դեմոկրատական մեծ պետության շրջանակներում կամ դուրս գալ նրա կազմից։ Ազգերի ինքնորոշման իրավունքը, նշել է Լենինը, չի կարող մեկնաբանվել «այլ կերպ, քան քաղաքական ինքնորոշման, այսինքն՝ անջատման և ինքնուրույն պետություն կազմելու իրավունքի իմաստով»։ Տարբեր ազգերի բանվորների դասակարգային համերաշխությունը, գրել է Լենինը, անհնար է առանց անջատման իրավունքի ճանաչման։

Սակայն ինքնորոշման իրավունքի հարցը չի կարելի շփոթել այս կամ այն ազգի անջատման նպատակահարմարության վերաբերյալ հարցի հետ։ «Այս վերջին հարցը, ասված է բոլշևիկների Պորոնինոյի խորհրդակցության լենինյան բանաձևում, սոցիալ-դեմոկրատական կուսակցությունը յուրաքանչյուր առանձին դեպքում պետք է լուծի միանգամայն ինքնուրույն կերպով՝ ամբողջ հասարակական զարգացման շահերի և սոցիալիզմի համար պրոլետարիատի դասակարգային պայքարի շահերի տեսակետից»։ «Մենք բնավ չենք քարոզում անջատում։ Ընդհանրապես, մենք անջատման դեմ ենք։ Բայց մենք անջատման ի ր ա վ ո ւ ն ք ի կողմն ենք՝ նկատի ունենալով սևհարյուրակային վելիկոռուսական նացիոնալիզմը, որն այնպես է պղծել ազգային համակեցության գործը, որ երբեմն ավելի մեծ կապ կստացվի ազատ անջատումի՛ց հետո»,— գրում էր Լենինը Ս. Գ. Շահումյանին 1913 թ. (Երկեր, հ. 19, էջ 625)։

Մշակելով ազգային հարցի բոլշևիկյան կուսակցության ծրագիրը, Լենինը մերկացրեց, այսպես կոչված՝ կուլտուր-ազգային ինքնորոշման օպորտունիստական տեսակետը, որի քարոզիչներն էին բունդականները, ավստրիական սոցիալ-դեմոկրատները, էսեռական և ազգային կազմակերպությունները, ուկրաինական, կովկասյան նացիոնալիստները, բոլոր տեսակի լիկվիդատորները։ Նրանք ազգը դիտում էին որպես վերպատմական երևույթ, նրանում տեսնելով սոսկ մարդկանց միություն, որոնք միմյանց հետ կապված են միայն լեզվի, ազգային բնավորության և, գլխավորապես, մշակույթի ընդհանրությամբ։ Ելնելով դրանից, նրանք ազգերի իրավունքը հանգեցնում էին ազգային մշակույթի զարգացման ազատության, ազգային հարցի լուծումը միանգամայն հնարավոր համարելով բուրժուական պետության շրջանակներում։ «Ազգային-կուլտուրական ինքնավարության» տեսակետի կողմնակիցները պրոլետարիատին արհեստականորեն բաժանում էին ըստ այս կամ այն ազգի պատկանելության, բթացնում դասակարգային պայքարն ազգի ներսում, ջուր լցնում ազգայնականների, ցարիզմի ու բուրժուազիայի ջրաղացին։

Լենինը ցույց տվեց, որ «ազգային-կուլտուրական ինքնավարությունը» բուրժուական նացիոնալիստական լոզունգ է, որ «մ ի ա ց ն ո ւ մ է մ ե կ ազգի պրոլետարիատին և բուրժուազիային, ա ն ջ ա տ ո ւ մ է տ ա ր բ ե ր ազգերի պրոլետարիատին» (Երկեր, հ. 19, էջ 122)։

1913 թ. գրած «Քննադատական դիտողություններ ազգային հարցի վերաբերյալ» աշխատությունում Լենինը նշել է. «Բուրժուական նացիոնալիզմ և

պրոլետարական ինտերնացիոնալիզմ՝ ահա երկու թշնամական, անհաշտ լոզունգներ, որ համապատասխանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի երկու մեծ դասակարգային լագերներին և արտահայտում են երկու քաղաքականություն (ավելին՝ երկու աշխարհայեցողություն) ազգային հարցում։ Պաշտպանելով ազգային կուլտուրայի լոզունգը, կառուցելով նրա վրա այսպես կոչված «ազգային-կուլտուրական ինքնավարության» մի ամբողջ պլան և գործնական ծրագիր՝ բունդականները իրականում հանդես են գալիս որպես բուրժուական նացիոնալիզմ անցկացնողներ բանվորական միջավայրում» (Երկեր, հ. 20, էջ 13)։

Օպորտունիզմի և նացիոնալիզմի մերկացմամբ, ազգային հարցի վերաբերյալ լենինյան ծրագրի վճռական պաշտպանությամբ դեռ մինչև հեղափոխությունը հանդես են եկել կուսակցության ականավոր գործիչներ Վ. Մ. Կասպարյանցը, Ա. Ֆ. Մյասնիկյանը, Ս. Գ. Շահումյանը, Գ. Ի. Պետրովսկին, Ի. Վ. Ստալինը, Ն. Ա. Սկրիպնիկը, Պ. Ի. Ստուչկան և մյուս լենինյանները։

Ղեկավարվելով լենինյան ազգային քաղաքականությամբ, կոմունիստական կուսակցությունն ամրապնդեց ռուսական բանվոր դասակարգի դաշինքն ազգային շրջանների աշխատավորների հետ, համախմբեց Ռուսաստանի բոլոր ժողովուրդներին և նրանց տարավ դեպի Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը, հաղթանակ, որի շնորհիվ առմիշտ ոչնչացվեց սոցիալական ու ազգային ճնշումը։

Տակավին 1916 թ. Լենինն ընդգծել է, որ ազգային հարցում կուսակցության գլխավոր խնդիրը ժողովուրդների ազատագրումն ու միավորումն է «ոչ թե ուժի ուժով, ոչ թե մահակի ուժով, ոչ թե բռնությամբ, այլ կամավոր համաձայնությամբ, աշխատավորների համերաշխությամբ ընդդեմ շահագործողների» (Երկեր, հ. 23, էջ 20)։

Կանգնելով իշխանության գլուխ, լենինյան կուսակցությունը հետևողականորեն իրագործեց ազգային հարցի իր ծրագիրը։

1917 թ. հոկտեմբերին սովետական կառավարությունը հայտարարեց, որ սովետական իշխանությունը նախկին ցարական կայսրության բոլոր ազգերի համար կապահովի ինքնորոշման իրավունք։

Ազգային հարցի լենինյան ծրագրի հիմնական դրույթները հռչակվեցին Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայում, որը սովետական կառավարությունը ընդունեց 1917 թ. նոյեմբերի 2 (15)-ին։ Այդ պատմական փաստաթղթում շարադրված են ազգային հարցի վերաբերյալ սովետական կառավարության լենինյան սկզբունքները. ժողովուրդների հավասարությունն ու սուվերենությունը, ազատ ինքնորոշման նրանց իրավունքը՝ ընդհուպ մինչև անջատվելը և ինքնուրույն պետություն կազմելը, ազգային ու կրոնական բոլոր և ամեն տեսակ արտոնությունների ու սահմանափակումների վերացումը, Ռուսաստանում ապրող բոլոր ժողովուրդների ազատ զարգացումը։

Արդեն դեկտեմբեր ամսին սովետական կառավարությունը ճանաչեց Ուկրաինայի անկախությունը, հռչակեց Ֆինլանդիայի անկախությունը և դեկրետ հրապարակեց թուրքական զավթիչների ճնշման տակ գտնվող Արևմտյան Հայաստանի ինքնորոշման մասին։

Լենինն ազգային հարցին մեծ ուշադրություն նվիրեց կուսակցության VIII համագումարում (1919 թ. մարտ) ունեցած իր զեկուցումներում ու ելույթներում։ Համագումարը հաստատեց ազգային հարցի լենինյան ծրագիրը։ Լենինը ձևակերպեց բազմազգ սովետական սոցիալիստական պետության կառուցման հիմնական սկզբունքները, հիմնավորեց սովետական հանրապետությունների ամենասերտ դաշինքի անհրաժեշտությունը։



Սովետական Միությունը բազմազգ պետության օրինակ է։ ՍՍՀՄ կազմավորման փորձը լենինյան ազգային քաղաքականության ճշտության փայլուն հաստատումն է։

Վ. Ի. Լենինը նշել է, որ սոցիալիստական ժողովուրդների կամավոր միության ստեղծումը տևական գործ է և նախազգուշացրել, որ դրան պետք է հասնել մեծագույն համբերությամբ և զգուշությամբ։ «Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն, որը ո՛չ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնըված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա։ Այդպիսի միությունը չի կարելի միանգամից իրագործել, դրան հարկավոր է հասնել մեծագույն համբերությամբ և զգուշությամբ աշխատելով, որպեսզի գործը չփչանա, որպեսզի անվստահություն չառաջանա, որպեսզի վերացվի այն անվստահությունը, որը մնացել է կալվածատերերի և կապիտալիստների դարավոր ճնշումից, մասնավոր սեփականության և դրա բաժանման ու վերաբաժանման համար եղած դարավոր թշնամանքից» (Երկեր, հ. 30, էջ 368)։

Սովետական Միությունը ազգային հարցի ճիշտ լուծման օրինակ է։ Մեր երկրում լիովին ոչնչացված է ազգային ճնշումը, ազգերի և ազատ ժողովուրդների միջև իշխում է աշխարհում մինչ այդ չտեսնված եղբայրական համագործակցությունն ու վստահությունը։ Այժմ ՍՍՀՄ-ում կան 15 միութենական և 20 ինքնավար հանրապետություն, 8 ինքնավար մարզ և 10 ազգային օկրուգ։ Յուրաքանչյուր ազգ իր բախտի տերն է, իրեն հավասար է զգում հավասարների հարազատ ընտանիքում։

Իրագործելով լենինյան ցուցումները, կոմունիստական կուսակցությունը սոցիալիստական ազգերի տերիտորիալ ամբողջականության ուղղությամբ իրականացրեց մի շարք խնդիրներ։ Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում, հաշվի առնելով «բնակչության կամքն ու համակրանքը» (Լենին), կապիտալիզմի, բուրժուա-կալվածատիրական պետությունների կողմից արհեստականորեն անջատված ազգերի մի մասը վերամիավորվեց միասնական ազգային-պետական տերիտորիայում։ Արևելյան և Արևմտյան Բելոռուսիայի վերամիավորումը միասնական Սովետական Սոցիալիստական Բելոռուսիայի հետ, Կլայպեդայի մարզի հանձնումը Լիտվական ՍՍՀ-ին, Արևմտյան Ուկրաինայի, Հյուսիսային Բուկովինայի (Ռումինիայից), Անդրկարպատյան Ուկրաինայի (Չեխոսլովակիայից) և Ղրիմի վերամիավորումը Ուկրաինական Սովետական Սոցիալիստական Հանրապետությանը, Ղազախական ՍՍՀ Բոստանդիկի շրջանը Ուզբեկստանին, իսկ Ուզբեկստանի Դալվերզինսկի տափաստանի հարավային մասը Տաջիկստանին հանձնելը և այլն՝ ուժեղացրին փոխադարձ վստահությունն ու բարեկամությունը ժողովուրդների միջև։

Կուսակցությունն իրագործել է նախկինում հետամնաց, ճնշված ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական վերելքի լայն ծրագիր։ Պատմական կարճ ժամկետում ցարական Ռուսաստանի երբեմնի ծայրամասերը դարձել են բարձր զարգացած ինդուստրիալ-ագրարային հանրապետություններ։

«Կամավոր հիմունքներով միասնական բազմազգ պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ իրավահավա-

սար ժողովուրդների միավորումն ու համախմբումը, նշված է ՍՄԿԿ ծրագրում, պետական, տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում նրանց սերտ համագործակցությունը, եղբայրական բարեկամությունը, նրանց էկոնոմիկայի և կուլտուրայի ծաղկումը լենինյան ազգային քաղաքականության կարևորագույն արդյունքն են»։

ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը բազմազգ սոցիալիստական պետության ուժի և հզորության աղբյուրն է։

Կուսակցության ծրագրում ցույց է տրված, որ սոցիալիզմի պայմաններում տեղի է ունենում ազգերի ծաղկում, ամրապնդվում է նրանց ինքնուրույնությունը։ Սոցիալիստական հասարակարգում արմատականորեն փոխվում են ազգային հարաբերությունների զարգացման օրենքները։ Այստեղ ազգերի զարգացումն իրականացվում է ո՛չ թե ազգային երկպառակության, ազգային սահմանափակության և էգոիզմի, այլ նրանց մերձեցման, եղբայրական համագործակցության ու բարեկամության միջոցով։

Կոպիտ սխալ կլիներ այդ մերձեցումը դիտել որպես ազգերի միաձուլում, «ազգերի փոխադարձ ասիմիլյացիա», ինչպես գրում են առանձին հեղինակներ։ Սխալվում են նաև նրանք, ովքեր սովետական մարդկանց հոգեկան կերպարի միջև եղած ընդհանուր գծերը, նրանց միավորումը՝ որպես սովետական ժողովուրդ, փորձում են դիտել ինչ-որ նոր, միասնական ազգի առաջացում։

Իրավացի է Ի. Ծամերյանը, որը «Կոմունիստ» ամսագրի այս տարվա 9-րդ համարում տպագրված «Լենինյան ազգային քաղաքականությունը գործողության մեջ» իր հոդվածում հանդես եկավ «ազգերի միաձուլման» սխալ տեսակետի դեմ։ Չի կարելի թռիչք կատարել պատմական կոնկրետ իրականության վրայով և վաղաժամ դատողություններ անել ամբողջ աշխարհում կոմունիզմի հաղթանակի պայմաններում ապազգային հասարակարգ ստեղծելու վերաբերյալ։ Արդյոք տեսական այդ մարզանքների դեմ չէ՞ր, որ սովետական ականավոր բանաստեղծ, ավար ժողովրդի տաղանդավոր զավակ Ռասուլ Համզատովը գրեց.

Եթե իմ լեզուն վաղը չքանա,
Ապա պատրաստ եմ ես այսօր մեռնել:

Վ. Ի. Լենինը բազմիցս նշել է, որ պետք է ծայրահեղ զգույշ, համբերատար, մեղմ, զիջող լինել նախկինում ճնշված փոքր ազգերի ժողովուրդների նկատմամբ, որոնք պատմական անցյալում հալածվել են, վիրավորանքներ կրել, բռնությունների ենթարկվել «մեծապետական» ազգի կառավարության կողմից։

«...ոչ մի բան այնպես չի կասեցնում պրոլետարական դասակարգային համերաշխության զարգացումն ու ամրապնդումը, ինչպես ազգային անարդարությունը, և «վիրավորված» նացիոնալները ոչ մի բանի նկատմամբ այնպես զգայուն չեն, ինչպես հավասարության զգացմունքի և այդ հավասարության խախտման նկատմամբ, իր ընկեր պրոլետարների կողմից թեկուզ նույնիսկ անփութորեն, թեկուզ նույնիսկ կատակի ձևով այդ հավասարությունը խախտելու նկատմամբ» (Երկեր, հ. 36, էջ 704)։ Լենինը նշում էր, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության քաղաքականության խեղաթյուրումը կարող է խախտել կոմունիստական կուսակցության և սովետական իշխանության հեղինակությունը։

Ժողովուրդների բարեկամության լենինյան քաղաքականության խեղաթյուրման կոպիտ արտահայտություններն են առանձին պատմաբանների ու



գրականագետների կողմից եղբայրական ժողովուրդների պատմական անցյալի և ազգային հերոսների կերպարների սխալ, ոչ բարեկամական գրքերից մեկնաբանումները, որոնք, ցավոք, առանձին դեպքերում թափանցում են սովետական մամուլի էջերը։

Մեր մեծ Միության բոլոր հանրապետությունների տնտեսական բուռն վերելքը, ազգային կուլտուրաների չտեսնված ծաղկումը, ազգերի ու ազգությունների անխախտ բարեկամության ամրապնդումը մի՞թե բավարար ապացույց չեն կոմունիստական կուսակցության վարած ազգային քաղաքականության լենինյան ծրագրի անշեղ իրագործմանը։ Այո՛, հազարավոր փաստերն ապացուցում են, որ աշխարհում միայն լենինյաններին հաջողվեց գործնականում լուծել դարերով անլուծելի ազգային հարցը։

Թո՛ղ տեսնեն մեր թշնամիները, որ, ի փառս սոցիալիզմի անպարտելի հայրենիքի, Սովետական Միության էկոնոմիկայի, կուլտուրայի, տեխնիկայի, գիտության և սոցիալ-քաղաքական բոլոր մարզերում եղբայրական համերաշխությամբ են ստեղծագործում մեր մեծ հայրենիքի տարբեր ազգերի անձնվեր ու տաղանդավոր զավակները։ Հիրավի, Սովետական Միության միջազգային հմայքի ու հեղինակության բարձրացմանը, իրենց հայրենասիրական ջանքերով, մասնակցում են սովետական բոլոր ազգերի ներկայացուցիչները։

Այն իրողությունը, որ նախահեղափոխական ժամանակաշրջանում ներկայիս սովետական մի շարք ազգեր, ժողովուրդներ և ազգություններ զուրկ էին գրագիտությունից և տարրական կուլտուրայից, իսկ այսօր իրենց վիթխարի նվաճումներով և ազգային կուլտուրայով կանգնել են աշխարհի առաջավոր ժողովուրդների դեմ հանդիման, մի՞թե մեկընդմիշտ չի հերքում հակակոմունիզմի գրչակների վայնասունն ու զրպարտանքները ՍՄԿԿ ազգային քաղաքականության վերաբերյալ։ Եվ, վերջապես, սովետական բազմազգ ժողովուրդների միության անսասանությունը և վիթխարի վերելքը մեկընդմիշտ չե՞ն ապացուցում, որ ազգային հարցը մեր երկրում լուծված է ավելի՛ հաջող, ավելի՛ ճիշտ և արդյունավետ, քան որևէ բուրժուական տեսաբան կարող էր կռահել։

Անդրկովկասյան սովետական հանրապետությունների գիտնականներն ու կուլտուրայի գործիչները հարևան ժողովուրդների համագործակցության փայլուն օրինակ են ցույց տալիս։ Նրանց համատեղ ջանքերով ստեղծվել են եղբայրական ժողովուրդների պատմության, գրականության, արվեստի հիանալի գործեր։ Անդրկովկասի մարքսիստ-լենինյան պատմաբանների լավագույն գործերից է Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների պատմության ուրվագծերի առաջին մասը, որը լույս տեսավ անցյալ տարի։ Շուտով կհրատարակվի նրա երկրորդ մասը, որը մարքսիստական-լենինյան դիրքերից լուսաբանում է Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի սովետական հանրապետություններում լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը։

Իրագործելով լենինյան ազգային քաղաքականությունը, կոմունիստական կուսակցությունը սովետական երկրի բոլոր ազգերին համախմբել է եղբայրական միասնական ընտանիքում, ապահովել մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական վերելքը։

Ազգային հարցի լուծումը մեր բազմազգ երկրում հրաշալի օրինակ է բոլոր եղբայրական կոմունիստական, բանվորական, դեմոկրատական կու-

սակցությունների համար, որոնք գլխավորում են աշխատավոր մասսաների պայքարն ընդդեմ իմպերիալիստական ճնշման, հանուն ժողովուրդների ազատության, իրավահավասարության և խաղաղ զարգացման։

Հավատարիմ լենինյան պատգամներին, սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, ըստ ամենայնի ամրապնդում է եղբայրական հարաբերությունները սոցիալիստական երկրների հետ, բարեկամությունն ու համագործակցությունը՝ իմպերիալիստական ճնշումից ազատագրված ժողովուրդների հետ։

«Կապիտալը միջազգային ուժ է,— նշել է Վ. Ի. Լենինը,— նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային միություն, նրանց միջազգային եղբայրություն։

Մենք ազգային թշնամության, ազգային պառակտման, ազգային մեկուսացվածության հակառակորդներ ենք։ Մենք միջազգայնականներ, ինտերնացիոնալիստներ ենք»։

Ընթանալով լենինյան կուրսով, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը սկզբունքային, անհաշտ պայքար է մղում բուրժուական գաղափարախոսության ամեն մի դրսևորման դեմ, սրբությամբ կատարելով իր ինտերնացիոնալ պարտքը, ամրապնդում է միջազգային պրոլետարիատի համերաշխությունը իմպերիալիզմի ու ռեակցիայի դեմ մղվող պայքարում։

Լենինյան կուսակցությունը հետևողականորեն ամրապնդում է մեր երկրի ժողովուրդների եղբայրությունն ու բարեկամությունը, պաշտպանում ազգային շարժումը կապիտալի երկրներում։

«Լենինյան հանճարը տվեց ազգային հարցի տեսական ու գործնական լուծումը, —ասված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստության մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։— Վ. Ի. Լենինը ընդգծում էր, որ անհրաժեշտ է ազատագրված ազգերի այնպիսի դաշինք, որը հիմնված լինի լիակատար վստահության, եղբայրական միասնության պարզ գիտակցման վրա՝ սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։ ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ եղբայրության հաստատումը, մեր հայրենիքի սոցիալիստական հանրապետությունների էկոնոմիկայի ու կուլտուրայի բարգավաճումը, նրանց սերտ միասնությունը համոզիչ հաստատում են ազգային հարցի լուծման գործում լենինյան ուսմունքի և կուսակցության քաղաքականության ճշտությունը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարների հաղթանակը»։

Իսկական հեղափոխականները միշտ ղեկավարվում են մարքսիստական-լենինյան ինտերնացիոնալիստական ուսմունքով։ Մեր դրոշը՝ կոմունիստների դրոշը, եղել և մնում է պրոլետարական ինտերնացիոնալիզմը։

Մեր կոմունիստական կուսակցությունը, ընթանալով լենինյան ուղիով, բարձր պարզած պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը, արժանավայել կերպով կատարում է իր ինտերնացիոնալ պարտքը, համաշխարհային կոմունիստական շարժման պիոների, նրա ավանգարդի դերը։



ՄԽԻԹԱՐՅԱՆ Գ. Ե.

# ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅԱՆ ԱՐԴԻ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԸՄԲՌՆՈՒՄԸ

Վերջին շրջանում բուրժուական փիլիսոփայությունը և սոցիոլոգիան հաճախ են արծարծում ազատության ու հեղինակության պրոբլեմը։ Պրագմատիզմի, էքզիստենցիալիզմի տեսաբանները փորձում են այս պրոբլեմը կապել արդի սոցիոլոգիական այնպիսի հարցերի հետ, ինչպիսիք են՝ հասարական-տնտեսական կարգի կառավարումը, անհատի ազատությունը, պետության և գաղափարախոսության հասարակական դերը և այլն։ Բուրժուական մտածողները (Ջ. Դյուին, Ս. Հուկը, Կ. Յասպերսը և ուրիշներ) գտնում են, որ դեմոկրատական ազատությունները ժողովրդի համար դարձել են ծանր բեռ, սպառնում են քաղաքակրթության գոյությանը և կործանումից խուսափելու համար հարկավոր է վերադառնալ հին «հեղինակությանը», զուգակցել այն ազատության հետ։

Դյուիի կարծիքով հեղինակության դեմ ծավալվող շարժման նպատակը ազատությունն է, բուրժուական լիբերալիզմը։ Անհատի ազատության ձգտումը հակադրվում է հեղինակությանը (եկեղեցուն, պետությանը), որից և սկիզբ են առնում սոցիալական «փոփոխությունները» ընդդեմ «կայունության»։ Ըստ նրա, այդ փոփոխություններն այժմ սպառնում են հեղինակության ինստիտուտներին։

Հեղինակությունը ձգտում է հասարակական կազմակերպության մեջ կայունություն մտցնել, իսկ ազատությունը (այստեղ՝ ինդիվիդուալիզմը) անընդհատ փոփոխություններ է առաջացնում։ Ո՞րն է ելքը։ Դյուին գտնում է, որ ճշմարիտ չէ այն փիլիսոփայությունը, որն ազատությունը հակադրում է հեղինակությանը. այդ ճանապարհով իսկական ազատության հասնել հնարավոր չէ, այն կործանում է բերում։ Դյուիի համար գոյություն չունեն ժամանակ ու տարածություն, ինչն այսօր լավ չէ, լավ չի եղել նաև 400 տարի առաջ։ Եթե լիբերալիզմն ու ինդիվիդուալիզմը այսօր խանգարում են իմպերիալիզմին, այն ժամանակ էլ են դրանք խանգարիչ մտածելակերպ եղել։ Դյուին չի նկատում կամ չի ուզում նկատել, որ առանց վերածննդի գաղափարախոսության, XVII—XVIII դարերի մատերիալիզմի ու լուսավորչականության, անհնար է պատկերացնել բուրժուազիայի հաղթանակը ֆեոդալիզմի դեմ. այդ

հին աշխարհից նորին անցնելու պատմական շրջադարձ է, որը գաղափարապես նախապատրաստել էր ժամանակի առաջավոր հասարակական միտքը։ Ջոն Դյուին գրչի մի հարվածով ֆեոդալական հեղինակությունների դեմ պատմության մի ամբողջ հատվածի մտածողների պայքարը սխալ է հայտարարում։ Նա կարծում է, թե ազատության բուրժուական ըմբռնումը՝ ինդիվիդուալիզմն է բուրժուական սիստեմի խարխլման պատճառը։

Իդեալիզմին, նրա տարատեսակներին հարողները չեն հասկանում, որ բուրժուական կարգերի փոփոխության պատճառը ոչ թե լիբերալիզմն է, այլ արտադրության կապիտալիստական եղանակը, նրանում գործող անարխիայի և մրցակցության օրենքը, որն իմպերիալիզմի դարաշրջանում դրսևորվում է ավելի սուր ձևով։

Բուրժուական տեսաբանները փորձում են կապիտալիզմի պայմաններում համատեղել ազատությունը և հեղինակությունը։ Նրանք կարծում են, թե առանց հեղինակության անհատի ազատությունը չունի զարգացման հիմք և ուղղություն։ Անհրաժեշտ է ոչ թե մեկը մյուսին հակադրել, այլ գտնել այնպիսի ատրիբուտներ, որոնք կարգավորեն դրանց հարաբերությունը։ Եթե քեյնսականներն ուզում են գտնել այնպիսի «փոփոխական մեծություններ», որոնք կարգավորեն սոցիալական անարխիան և կապիտալիզմն ազատեն ճգնաժամերից ու աղետային տարբերայնությունից, ապա Դյուին փորձում է փիլիսոփայության բնագավառում գտնել այնպիսի գաղափարական միջոց, որը նրանց ազատի նոր փիլիսոփայության (XVII—XVIII դարերի մատերիալիզմի) ազդեցությունից, որովհետև ազատությունը (տվյալ դեպքում՝ լիբերալիզմը) վերացնում է ակնածանքը պետության և եկեղեցու նկատմամբ։ Նրա կարծիքով հեղինակությունը բարձր սկզբունք է, որն անհրաժեշտ է «անհատի օրգանական ազատության և սոցիալական կայունության համար»։ Նա ելք է առաջարկում. ոչ թե ազատության ու հեղինակության հակադրում, առանձին ոլորտների բաժանում, այլ նրանց «փոխներթափանցման օժանդակում»։ Ինչո՞ւ է անհրաժեշտ այդ միասնությունն ու փոխներթափանցումը։ Այստեղ Դյուին արտահայտում է բուրժուական իդեոլոգիայի հավատամքը։ Բուրժուազիան այժմ կարիք ունի այնպիսի հեղինակության, որն ունակ լինի ուղղություն տալու փոփոխություններին և օգտակար դարձնելու դրանք. նա կարիք ունի անհատական ազատության, որը լիբերալիզմի, ինդիվիդուալ տնտեսական ազատության փոխարեն լինի և՛ ընդհանուր, և՛ մասնավոր, սոցիալապես կազմակերպված՝ որպես բանական վերահսկողության օժանդակություն և ղեկավարություն։

Իսկապես, լավ ախորժակ ունի պարոն Դյուին։

Նրան չեն կարող չհուզել այն հարցերը, որոնք ավելի քան մեկ դար հուզում են բուրժուական մտածողներին, որոնք ձգտում են կարգավորել հասարակական հարաբերությունները, ազատել սիստեմը տարերային անհրաժեշտության տիրապետության աղետալի հետևանքներից, բանականորեն կարգավորել կապիտալիզմը խարխլող հակասությունները։

Դյուին տենչում է պահպանել բուրժուական ինդիվիդուալիզմը, ստեղծել հասարակական ընդհանուր ազատության օրգան, որը ղեկավարի ընդհանուր շարժումը, կապիտալիզմն ազատի տարերայնության տիրապետությունից։ Նա ուզում է, որ ոչխարները կենդանի լինեն և գայլերը՝ կուշտ, տերերը միշտ ազատ լինեն, իսկ աշխատավորները՝ ենթակա, ստորադրյալ, հլու-հնազանդ, անմռունչ տանեն «բախտի» բոլոր քմահաճույքները։



Դյուին հասարակության միասնությունը հնարավոր է համարում ո՛չ թե տնտեսության, այլ հեղինակության, բուրժուական դիկտատուրայի միջոցով։ Նա գտնում է, որ մարդկանց կոլեկտիվ հեղինակություն է անհրաժեշտ անհատներին ուղղություն տալու, նրանց հարաբերությունները կարգավորելու, սոցիալական վերահսկողությունը՝ ընդհուպ մինչև կոլեկտիվ պլանավորվող էկոնոմիկայի ստեղծումն իրականացնելու համար։ Վախենալով սոցիալիզմը բնորոշող տերմիններից, նա տեղն ու տեղը նշում է, որ բառերի որոշ փոփոխություններ են անհրաժեշտ։ Բայց մի՞թե դրանից փոխվում է բանի էությունը։ Պլանային տնտեսությունն ու հեղինակությունը,— գրում է նա,— անհրաժեշտ են այն չարիքներից բուժվելու համար, որից մենք այդքան շատ ենք տառապում։ Դա վերջին շրջանում տերերի հիմնական պահանջն է՝ ստեղծել այնպիսի հեղինակավոր ուժ, որը կարողանա իրականացնել ցանկալի «օրգանական կոորդինացիա», համաձայնեցնել անհատական ազատությունը հասարակականի հետ, այլապես մենք կմնանք, ինչպես Դյուին է գրում, հին սոցիալական հեղինակության և անհատական ազատության պայքարի ոլորտում։

Շահագործողական հասարակարգում պետության հեղինակությունը պահպանվում է ոչ թե բանականությամբ, այլ սվինների ուժով։ Այդպես էր 400 տարի առաջ, երբ բուրժուազիան ֆեոդալական ռեակցիայի դեմ առաջ քաշեց «բանականության» թագավորության գաղափարը։ Այդպես է և այժմ. բուրժուազիան ապրել է իր դարը և ճգնում է սվիններով կամ ատոմային ռումբերով հակադրվել մարդկության պատմական պրոգրեսի բանական պահանջներին։

Իսկական սոցիալական ազատությունն այլ պայմաններում է ապահովում անհատի ազատությունը։ Կապիտալիզմի օրոք անհնար է թե՛ մեկը, թե՛ մյուսը. դրա ակնհայտ ապացույցը ներքին հակասություններն են, որոնց լուծման համար այդքան շատ են մտահոգվում Դյուին ու նրա գաղափարական դաշնակիցները։ XVII—XVIII դարերի առաջադիմական գաղափարախոսության ամենամեծ թերությունը Դյուին համարում է՝ նրա կողմից (որպես բոլոր փոփոխությունների ճշմարիտ և վերջնական աղբյուրի) գիտության ու բանականության մարմնացման նշանակությունը չըմբռնելը։ Դյուիի այս տեսակետի իմաստն այն է, որ հասարակական կարգի վերահսկման և կայունության համար կարևոր են գիտությունը, «բանականությունը»։ Իսկ փոփոխությունների հիմքը ազատությունն է՝ զգացումների, ձգտումների բնագավառը, որը ըստ նրա անբանական է։ Նրա տեսությունը պահանջում է՝ հեղինակության միջոցով միացնել ազատության ձգտումը բանականության հետ և վերջ տալ հեղինակության ու ազատության դարավոր վեճին։ Նրա համախոհները մի դատողություն էլ են ավելացնում՝ բարձրագույն հեղինակության օրգանը ամերիկյան պետությունն է։ Նրանք ջանք չեն խնայում ապացուցելու, որ ԱՄՆ-ը մարդկային ազատության «մեծագույն մարտիկն է»։

Սակայն արդարությունը պահանջում է ասել, որ Դյուին վստահ չէ իր տեսակետի ճշմարտացիության մեջ և նույնիսկ շփոթվում է, երբ ստիպված է լինում խոսել հեռանկարի մասին։ Ազատության պրագմատիստական, ինդետերմինիստական ըմբռնումը զուրկ է որևէ կանխատեսման հնարավորությունից, սա տվյալ փիլիսոփայության թուլության ակնհայտ ցուցանիշներից մեկն է, որը խոստովանում է նրա երբեմնի լիդերը։ Մենք համաձայն ենք, ասում է

նա, որ վստահ չենք, թե ուր ենք գնում, ուր ենք ուզում գնալ և ինչու ենք անում այն, ինչ անում ենք։

Նման անվստահությունը, ապակողմնորոշվածությունը, նպատակի ու հեռանկարի բացակայության խոստովանությունն անժխտելի վկայությունն է այն բանի, որ արդի բուրժուական գաղափարախոսության ներկայացուցիչները, որոնք փորձում են ապացուցել իրենց դասակարգի գոյության արդարացիությունը, հոռետեսությամբ են տառապում, զգում են, որ պատմական անհրաժեշտության կրողը այլևս իրենց դասակարգը չէ։

Հեղինակության և ազատության միացման իր փորձերով Դյուին ապարդյուն ճիգեր է գործադրում ընդհանրություն գտնելու այնտեղ, ուր հակամարտությունն է իշխում։ Նա այդ կապը կամ ընդհանրությունը չի որոնում այնտեղ, ուր այն իսկապես կա։

Ազատության և հեղինակության հարաբերության հարցը հուզում է նաև գերմանական էքզիստենցիալիստներին, հատկապես Կարլ Յասպերսին (տե՛ս Karl Jaspers, Freiheit und Autorität «Universitas», Zeitschrift für Wissenschaft, Kunst und Literatur, Stuttgart, *1962*, Heft *4*)։ Նա ևս, ըստ երևույթին, հետևելով Դյուիին, այն միտքն է հայտնում, թե վերածնության շրջանից, առանձնապես Դեկարտից սկսած, բնագիտության արագ զարգացումը և «կեղծ ռացիոնալիզմը» ստեղծել են, այսպես կոչված՝ «գիտական սնահավատություն», որը բացի գիտության նվաճումներից ուրիշ հեղինակություն չի ընդունում։ Յասպերսի կարծիքով, հեղինակության անտեսումը մարդկությանն այսօր հասցրել է ինքնաոչնչացման եզրին։ Վերջին տարիների մի շարք հոդվածներում ու գործերում, ազատությունը բացարձակորեն հակադրելով գիտությանը, նա գտնում է, որ միայն տնտեսական ու գիտատեխնիկական նվաճումները բավարար չեն։ Ընդհակառակը, որքան մարդիկ ավելի են հավատում գիտությանը և մոռանում հավատը, առասպելները, «այնկողմնայինը», այնքան կորցնում են ազատությունը, ինքնությունը, «էքզիստենցիան», որը միայն այնկողմնայինի (տրանսցենդենտի) շնորհիվ է հնարավոր։

Որպեսզի մարդկությունը չկործանվի, իսկ բնագիտության «միակողմանի» զարգացումը, նրա կարծիքով, անխուսափելիորեն դրան է հանգեցնում, անհրաժեշտ է մարդկանց վերստին դարձնել իրենց «ինքնությանը», փոխել մտածելակերպը։ Այդ բոլորը պետք է ամեն մեկն անի ինքնին («վերադարձը» պետք է տեղի ունենա «միայնակի» միջոցով)։

Գիտության զարգացումը, նրա կարծիքով, չարիք է, լինի բնագիտության, պատմական գիտությունների, թե փիլիսոփայության, որովհետև վերջիններս էլ մարդկանց ստրկացնելու միջոց են. պատմական (հասարակական) գիտությունները փորձում են ամեն ինչ պլանավորել, ընդհանուր պլանավորման միջոցով նույնիսկ ուզում են իշխել պատմության վրա։ Այդ ամենին նա սկզբունքորեն համաձայն չէ, դրանք համարում է մոլորություն, որից մարդիկ պետք է հրաժարվեն։ Եթե մի ժամանակ գիտության զարգացումը դեռևս ծառայում էր կարիքի վերացմանը, այժմ այն կործանման է հանգեցնում։ Նա երբեք չի քննում սոցիալական պատճառները. ովքե՞ր են մեղավոր, ո՞ր սիստեմն է կործանման պատճառ դառնում։ Յասպերսը ավելի շատ մեղադրում է սոցիալիզմը, քան կապիտալիզմը։ Նրա կարծիքով, մարդկությունը կործանումից փրկելու փիլիսոփայությունը պետք է ելնի հետևյալ սկզբունքներից։ Քանի որ արդի գիտությունը չի կարող լրիվ սպառել (ճանաչել) աշխարհի և մարդու անսահման բովանդակությունը, ուրեմն, անվախճանի մեջ նրա առաջըն-



թացին պետք է ուղեկցի «բախտը»։ Իրենց ազատությունը գտած մարդկանց չպետք է ենթարկել գիտական իմացության. նրանց փիլիսոփայական միտքը պետք է ուղղել նրանց ներքին ինքնությանը։ Հարկավոր է ցույց տալ, որ բացի ճանաչելի աշխարհը, կա նաև «էքզիստենցը» և «այնկողմնայինը». հասկացնել, որ գիտությունը թեև մարդկանց ազատել է կախարդանքից ու դևերից, բայց բաց է թողել «այնկողմնային հիմքի առկայությունը»։

Յասպերսի փիլիսոփայությունը դեն նետվածը, մոռացվածը դիտում է որպես պատմականորեն տրված «գաղտնագրերի» տիրապետություն, որի մեջ մարդն ըմբռնում է իր շրջակա իրականությունը սիմվոլների, առասպելների և փիլիսոփայական հայեցողությունների լեզվով։ Նրա շարադրանքի խնդիրն է՝ համոզել մարդկանց, որ նրանք կրկին վերադառնան հավատին, քանի որ ազատությունը առանց հավատի միայն չարիք է, պետք է սահմանափակել գիտությունը, հավատին, որը, նրա կարծիքով, նույնպես ազատության մի մասն է, տեղ տալու համար։ Իզուր չէ նա մեծ հաճույքով հիշում Կանտին, որն Արևմուտքում առաջինը Դեկարտի «կեղծ ռացիոնալիզմին» հակադրեց այնկողմնայինի, աստծու և ազատության սկզբունքները։ Յասպերսի համար գերզգայական իրականությունն այնկողմնային է և նրա հետ է կապված նաև մարդու էքզիստենցիան ու ազատությունը։ Նա նախազգուշացնում է, որ եթե մարդիկ միակողմանի բացարձակացնեն գիտության տվյալները, որոնք անցողիկ են, հարաբերական ու սահմանափակ, այն ժամանակ կչքանան էքզիստենցիան և այնկողմնայինը (կամ ազատությունն ու աստվածը) և ատոմային կատաստրոֆան կդառնա անխուսափելի։ Նրա մոտ այնկողմնայինը և աստված նույնանում են, և ազատությունը կապվում է ոչ թե գիտության, այլ աստծու, անիմանալի հեղինակության հետ։

Հեղինակության և ազատության փոխհարաբերության հարցը Յասպերսը Ջոն Դյուիի նման քննում է նույն դասակարգային դիրքերից, թեև փորձում է այն յուրովի լուծել։ Երբ նսեմացավ հեղինակությունը, ազատությունը վերածվեց կամայականության։ Այսօրվա և ապագայի հիմնական հարցը, Յասպերսի կարծիքով, ազատությունը փրկելու հարցն է (տե՛ս Karl Jaspers, Freiheit und Autorität, ibidem, *1962*, s. *346*)։ Տեռորից ու բռնությունից այն կարելի է փրկել հեղինակության միջոցով։ Իսկ ի՞նչն է նա բռնություն և տեռոր համարում։ Այստեղ, ամենից առաջ, նա ենթադրում է բանվորական շարժումը, կուսակցությունների երևան գալը, պլանավորումը, մի խոսքով՝ պայքարը բուրժուական տիրապետության դեմ և սոցիալիստական շարժումը, որի մասին առանց ատելության չի կարողանում արտահայտվել։

Ի՞նչ է հեղինակությունը, ինչպե՞ս պետք է այն օգնի ազատությունը կործանումից փրկելու գործում։ Դրան Յասպերսն այսպես է պատասխանում. հեղինակությունը իրերի հիմքից, «այնկողմնայինից» եկող խոր, անճանաչելի սկզբունք է, ազատության ուժն էլ է այնտեղից սկիզբ առնում։ Նա հեղինակության մեջ ուղղակի չի հիշատակում պետությունն ու եկեղեցին։ Սակայն դրանից նրա տեսակետի էությունը չի փոխվում։ Նա նույնիսկ վկայակոչում է դիալեկտիկան, փորձում հեղինակությունն ու ազատությունը յուրահատուկ հակադրությունների միասնություն դիտել։ Ազատությունը, նրա կարծիքով, բովանդակալից է միայն հեղինակության միջոցով, որին հաջորդում է։ Իսկ հեղինակությունը՝ գոյություն ունի միայն ազատության զարթոնքի միջոցով։ Դրանցից յուրաքանչյուրը ճշմարիտ է, մաքուր, խոր միայն մյուսի հետ։ Եթե դրանք բացարձակ հակադրություններ դառնան, ազատությունը կվերածվի

կամայականության, իսկ հեղինակությունը՝ բռնության, երկուսն էլ կզրկվեն բովանդակությունից (նույն տեղը, էջ 348)։

Այս դատողություններից երևում է, թե Յասպերսը «հեղինակություն» ասելով ինչ է հասկանում։ Այդ տեսակետից Դյուին ավելի անկեղծ ու անմիջական է։ Նա նույնպես փորձում է ցույց տալ, որ խորշում է պետությունից՝ որպես մերկ ուժի։ Բայց միամտություն կլինի կարծել, թե պետությունն առանց ուժի է ներկայացվում։ Բանն այն է, որ, ըստ Յասպերսի, միայն ուժը բավական չէ. հեղինակությունը ոչ միայն ուժի, այլև հավատի մեջ պետք է դրսևորվի, որպեսզի բռնությունը չվանի մարդկանց։ Այլ կերպ ասած, Յասպերսը նախազգուշացնում է տերերին, որ բռնության վրա հենվող պետական ձևերը նրանց հեղինակազուրկ են անում, կորչում է հավատը նրանց նկատմամբ։ «Հիսուսը խաչի վրա», գրում է նա, Արևմուտքի սիմվոլն է, թուլությունը, տառապանքը, հեզությունը, հրաժարումն ուժից, երբ այն հաճելի չէ և այլն։ Նա, մի կողմից՝ կանխագուշակում է մարդկության վախճանը ատոմային կործանումից, մյուս կողմից՝ հեզություն է քարոզում, որպեսզի տերերն ազատ լինեն աշխատավորներին գոփելու, իսկ աշխատավորները հնազանդորեն տանեն «Հիսուսի խաչը»։

Ազատությունը պահպանելու համար անհրաժեշտ է հեղինակություն (պետություն), իսկ պետության համար՝ այնպիսի հենարան, ինչպես հավատն է, եկեղեցին։ Այս է Յասպերսի առաջարկած հեղինակությունը, որը ցույց է տալիս նրա փիլիսոփայության գաղափարական սնանկությունը։

Ի՞նչ անուն տալ մեր դարի այսպիսի մտածողներին, որոնք սարսափում են գիտության և տեխնիկայի առաջընթացից, դրան հակադրելով կրոնն ու այնկողմնայինը, անբանականն ու խավարամտությունը։ Յասպերսը գտնում է, որ պետք է ազատագրվել բանականության միակողմանիությունից, յուրահատուկ շրջադարձ կատարել դեպի անբանականը, որի միջոցով մարդու էությունը կրկին վերադառնում է իրեն, այսինքն՝ մարդը գտնում է ինքն իրեն, իր ազատությունը (նույն տեղը, էջ 352—353)։ Իսկ ո՞րն է այդ ազատությունը, ի՞նչ է տալիս այն մարդուն։ Ոչի՛նչ։ Յասպերսն ու նրա կողմնակիցները գտնում են, թե մարդիկ որքան քիչ մտածեն, այնքան ավելի լավ. նրանք մշակում են մտքի, բանականության «տնտեսման սկզբունք», որպեսզի մարդիկ միայն ինքնամոռացության մեջ զգայեն իրենց ներքին աշխարհը, «այնկողմնայինը», բայց չմտածեն Լուսնի վրա թռչելու կամ Սահարան պտղաբեր դարձնելու մասին։

Յասպերսը գրում է, որ մոռանալով կրոնը, մարդիկ գիտակցության կորուստ են ունենում, իսկ գիտակցությունը գործում է ոչ միայն գիտության, այլև կրոնի միջոցով։ Երբ գիտությունն առաջ է գնում, մոռացվում է կրոնը, իսկ մարդիկ անկրոն ապրել չեն կարող, դրանից դատարկություն է առաջանում։ Սա էլ հենց դատարկ ազատությունն է, որի ցուցանիշներն են՝ կախվածությունն ու ենթակայությունը։ Շատ մարդիկ ազատությունը չեն հանդուրժում, ասում է նա, նրանք ձգտում են այնտեղ, ուր ազատության անվան տակ ազատությունից ազատագրվում են (նույն տեղը, էջ 354)։ Ոչ թե գիտության զարգացման մեջ պետք է որոնել մարդու ազատությունը, այլ այնպիսի հեղինակության, ինչպիսին կրոնն է, հավատը, եկեղեցին։ Իսկ «ռացիոնալ պլանավորում», «միասնական հասարակական կամք», «բնության ուժերը հասարակության շահերին ենթարկելը» և այլն՝ Յասպերսը դիտում է որպես անազատության, ստրկացման, կախվածության, ենթակայության դրսևորում-



ներ։ Ազատությունը, նրա ըմբռնմամբ, չունի ընդհանուր հասարակական բովանդակություն կամ նշանակություն, այն վերաբերում է միայն «միայնակին»։ Որտեղ կա միասնական հասարակություն, այնտեղ բոլոր մարդիկ միևնույնն են («Massentypus»)։ Առանձին մարդը դառնում է անհատ կամ «միայնակ» («եզակիություն»), երբ ազատություն է ձեռք բերում, այսինքն՝ «էքզիստենցիա» ու «այնկողմնայնություն»։ Յասպերսը և նրա համախոհները մարդկանց ստրկացում, «ազատության ոչնչացում», «բռնապետություն», «տոտալիտարիզմ» են տեսնում այն բանում, երբ մարդիկ մտածում են միասնական նպատակի, կամքի ու ձգտումների միասնության մասին. Նման տեսակետն ունի իր սոցիալ-դասակարգային հիմքը։ Այնտեղ, ուր կա կամ ձևավորվում է աշխատավորության հասարակական միասնությունը, միասնական նպատակի գիտակցությունը և պայքարը հանուն այդ նպատակի իրականացման, կապիտալիզմը կորցնում է իր ոտքերի տակի հողը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սոցիալիստական նոր երկրների առաջացումը կարճ ժամանակահատվածում, գաղութային սիստեմի փլուզումը այնպիսի հարվածներ էին միջազգային իմպերիալիզմին, որ նրա տեսաբանները չեն կարողանում ուշքի գալ, գնահատել իրադրությունն ինչպես հարկն է, հասկանալ պատմական նոր իրավիճակի էությունը։ Դրա փոխարեն նրանք փախչում են բանականությունից, նորի փոխարեն տեսնում միայն կործանման ուրվականը, ազատության և հեղինակության տապալումը։ Այդ կարգի մտածողներից թերևս միայն Յասպերսն է, որը իր փիլիսոփայության մեջ ատոմային ռումբի քաղաքական շանտաժին տեսության ձև է տալիս և հրամցնում որպես նոր իմաստություն։

Ջնայած «ազատություն» տերմինը նրա գրվածքներում ավելի շատ է հոլովվում, քան թերևս որևէ մեկ ուրիշի, բայց մի պայծառ գաղափար, նորություն, ուշադրության արժանի միտք չկա այնտեղ, բացի բազմիցս ծամծմվող արտահայտությունից, թե ազատությունը կարելի է փրկել միայն հեղինակության ու հավատի միջոցով։ Փախուստ գիտությունից, բանականությունից դեպի իռացիոնալիզմն ու հավատը, ահա թե ուր է տանում նրա «ազատության» փիլիսոփայությունը։ Կեղծավորաբար բերելով հեգելյան այն միտքը, թե մարդկանց պատմությունը նրանց ազատության պատմությունն է, նա շտապում է ավելացնել, որ ազատությունն ու կույր ճակատագիրը միևնույն բաներն են (տե՛ս Karl Jaspers, Befreiung und Freiheit des menschen heute, ibidem, 1962, Heft 11, s. 1153), որպեսզի ընթերցողն ազատությունը հեգելյան ռացիոնալ տեսությունից բխող ազատության պես չհասկանա, չէ՞ որ Հեգելը բանականության միջոցով է իր սիստեմը կառուցում։ Այն մտածողներին, որոնք հիմնվելով արդի բնագիտության վրա, չեն ընդունում Յասպերսի «էքզիստենցիան» ու «այնկողմնայինը», նա անվանում է «հարբած փիլիսոփաներ»։ Բայց իսկապես, ո՞վ է հարբածը։ Նա՞, ով գիտականորեն բացատրում է իր շրջապատը, թե՞ նա, ում աչքին աշխարհը երկվանում է և, տարուբերվելով իրականի ու երևակայականի միջև, չի կարողանում ճիշտ կողմնորոշվել։ Արդյոք հուսալքումից չէ՞, որ նա ստիպված է դիմել անբանականին ու անհայտին։ Ըստ Յասպերսի, վախի զգացումն է ստիպում մարդուն խուսափել ինքն իրենից։ Վախը նրա էության մեջ է, որը նրան միշտ կապված է պահում ներքին աշխարհից. երբ մարդը խուսափում է ինքն իրենից, մոռանում մահվան զգացումը, տարվում առօրյայով, գիտությամբ ու տեխնիկայով, անխուսափելիորեն ընթանում է դեպի կործանում։ Ի վերջո, նա այն

կարծիքն է հայտնում, որ մարդիկ հազիվ թե զղջատանան, հրաժարվեն իրենց առօրյա ձգտումներից և անդրադառնան իրենց ազատությանը, «էքզիստենցիային» և «այնկողմնայինին»։ Ուրեմն, մարդկության կործանումը անհավանական չէ և կարծես նույնիսկ անհրաժեշտ է։ Յասպերսը գտնում է, որ թերևս «ավելի լավ է մեռնել, քան լինել կարմիր»։ Գերմանական Դեմոկրատական Հանրապետության փիլիսոփաներն իրավացիորեն Յասպերսի հայացքները բնորոշել են որպես հանցագործության, ատոմային պատերազմի փիլիսոփայություն։

Մարքս-լենինյան փիլիսոփայությունը ո՛չ միայն չի ժխտում ազատության և հեղինակության հարաբերության հարցը, այլև նշում է նրա լուսաբանման չափազանց կարևոր նշանակությունը և՛ տեսական, և՛ գործնական աշխատանքի համար։

Հասարակության, առանձնապես արդի մեքենայացված արտադրության մեջ, տրանսպորտի և կյանքի մյուս բնագավառներում մարդկանց հարաբերությունները այն աստիճան բարձր կազմակերպվածության են հասել, որ առանց հեղինակությանը ենթարկվելու անհնար է որևէ արդյունքի հասնել։ Սոցիալական նման պայմաններում իսկական հեղինակության կրողը գիտությունն է, գիտության մարդը, արտադրության կազմակերպողը— ինժեները, մեքենավարը, արտադրության պրոցեսի ղեկավարը։ Այստեղ հեղինակության կրողը նա է, ով տիրապետում է շարժման պրոցեսին, օբյեկտիվ անհրաժեշտությանը:

Ժամանակակից արտադրության տարբեր ճյուղերն այնպիսի սերտ կապերով են միացած, որ ողջ աշխարհի տնտեսությունը առավել կարիք է զգում միջազգային հեղինակավոր օրգանի, որը կարողանա կոորդինացնել տարբեր երկրների արտադրության ճյուղերն իրար հետ և կարգավորել ու վերահսկել ամբողջ աշխարհի տնտեսության մեխանիզմը։ Այդպիսի հեղինակությունը անպայման պետք է հենվի գիտության նորագույն նվաճումների վրա։ Մարդկանց բոլոր ազատությունների հիմքը, գլխավոր ցուցանիշը բնության հզոր ուժերի սանձահարումն է։ Իսկ այդ նույն մարդկանցից պահանջում է փոխել իրենց հասարակական կազմակերպության ձևերը, ստեղծել նոր ձևեր, որոնք համապատասխան լինեն նոր արտադրաուժերի բնույթին։ Բայց, դրան հակառակ, Յասպերսն ու Դյուին ուզում են հարություն տալ իրենց դարն ապրած հասարակական հարաբերություններին ու եկեղեցուն այն ժամանակ, երբ դրանք ո՛չ միայն չափից ավելի շատ են հեղինակազրկվել, այլև բացահայտորեն խոչընդոտում են հասարակության արտադրաուժերի զարգացումը։

Մարքսիզմն, ի հակադրություն անարխիստների, գիտականորեն հիմնավորում է նաև քաղաքական հեղինակության նշանակությունը։ Այն գտնում է, որ քաղաքական հեղինակությունը ոչ թե պետք է հենվի հնացած կարգի վրա, ծառայի բուրժուական, ինդիվիդուալիստական կարգերի պահպանմանը, այլ հանդիսանա հեղափոխական ուժերի կազմակերպման այն նոր գործոնը, որն անհրաժեշտ է կոմունիստական շինարարության ղեկավարման համար։

Այդ նոր գործոնը կոմունիստական կուսակցությունն է, պրոլետարիատի ու աշխատավորների լենինյան սկզբունքներով կազմակերպված ավանգարդը, որը վարում է նոր հասարակության կառուցման բարդ ընթացքը։ Այն խոշոր հեղինակություն է, որովհետև առաջնորդվում է հասարակական կյանքի միակ գիտական տեսությամբ՝ լենինիզմով։



Սոցիալիստական հեղափոխությամբ, դասակարգային անտագոնիզմի վերացմամբ չքանում են բռնության այն բոլոր հեղինակավոր միջոցները, որոնցով հասարակության փոքր մասը պահպանում է իր տիրապետությունը մեծամասնության վրա։ Մարքսիզմը հեղինակության և ազատության հարաբերության հարցը կոնկրետ է քննում։ Պրոլետարիատի և աշխատավորության համար անցման շրջանում ամենամեծ հեղինակությունը նրանց անփոխարինելի ղեկավար կոմունիստական կուսակցությունն է, սոցիալիստական պետությունը, աշխատավորների պայքարով կյանքի կոչված հասարակական-քաղաքական մասսայական կազմակերպությունները և բոլոր այն հաստատությունները, որոնք տարբեր ձևերով աշխատավորական կոլեկտիվների կամքի արտահայտիչներն են։ Պրոլետարիատի քաղաքական տիրապետության մեջ հեղինակությունը միահյուսվում է ազատության հետ և հեղինակության ուժը չափվում է ազատության միջոցով։ Այն ղեկավարները և պետական գործիչները, ովքեր առանձին դեպքերում չարաշահում են պետության ֆունկցիան և ոտնահարում պատմական անհրաժեշտության պահանջները, մարքս-լենինյան գիտության սկզբունքները, հեղինակազրկվում են, քննադատվում հասարակության կողմից։ Դրա ակնառու փաստը անհատի պաշտամունքի մերկացումն էր, լենինյան նորմերի վերականգնումը։

Պատմական մատերիալիզմը, բացահայտելով արդի կապիտալիզմի ներքին հակասությունները, ցույց է տալիս, որ տարերային անհրաժեշտության տիրապետությունից անցումը դեպի կոմունիզմ՝ մեր դարաշրջանի բովանդակությունն է։

Կոմունիստները կյանքի են կոչված պատմական անհրաժեշտության ուժով և արտահայտում են հասարակական պրոգրեսի, արտադրաուժերի և արտադրահարաբերությունների արագ զարգացման բուռն նկրտումը։ Կոմունիստներն արդի հասարակության ամենակենսունակ և ամենագործունյա ուժն են, որոնք մասսաների ստեղծարար ջանքերի կազմակերպմամբ, կյանքը վարում են դեպի վեհ նպատակը, դեպի գալիք հասարակարգը, որտեղ չի լինի կեղեքում, թշվառություն, տգիտություն և որևէ բռնություն։ Ահա թե որտեղ պետք է փնտրել կոմունիստական կուսակցության հեղինակության աղբյուրը։

Երբ արդի բուրժուական փիլիսոփաները չեն ուզում տեսնել պատմական օբյեկտիվ շարժման օրենքը և փորձում են իրենց «հեղինակության» միջոցով ժխտել այն, դա, մեղմ ասած, գաղափարական կուրություն է, որովհետև ամենամեծ հեղինակությունը պատմության մեջ միլիոնավոր մասսաների շարժումն է, որը ոչ միայն հին հասարակարգը նորով է փոխարինում, այլև հրապարակը մաքրում քարացած մտաձևերից և ճանաչում միայն այն գիտության հեղինակությունը, որն օգնում է նրան մարդկային արժանապատվությանը համապատասխան՝ ազատության, հավասարության, ընդհանուրի երջանիկ ապագան կառուցելու գործում։



ՊԵՏՐՈՍՅԱՆ Ծ. Ն.

# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԸ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը ռուսական կայսրության բոլոր ժողովուրդներին, ինչպես և հայ ժողովրդին անկախություն, ազգային սուվերեն պետականություն ստեղծելու հնարավորություն ընձեռեց։ Սովետական Հայաստանը մեծ Հոկտեմբերի ծնունդն է։*

*Հոկտեմբերի դրոշի ներքո, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Հայաստանի աշխատավորները վերջնականապես թոթափեցին շահագործող դասակարգերի տիրապետությունը, ասպարեզից դեն նետեցին դաշնակ բախտախնդիրներին և իշխանությունը վերցրին իրենց ձեռքը։ Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինը ջերմորեն ողջունեց Հայաստանում սովետական կարգերի հաղթանակը։ Սովետական Ռուսաստանի կառավարությունը առաջինը ճանաչեց Հայաստանի պետական անկախությունը և բազմակողմանի օգնություն ցույց տվեց նրան։*

*Հայաստանը Սովետական Սոցիալիստական Հանրապետություն հռչակելու նախօրյակին ստեղծված հեղափոխական կոմիտեն հանդես եկավ որպես հեղափոխության պրոցեսում ձևավորված սովետական պետական իշխանության բարձրագույն մարմին։ Այն 1920 թ. նոյեմբերի 29-ին հրապարակեց պատմական նշանակություն ունեցող դեկլարացիա, որը դարձավ սովետական պետականության հռչակման իրավական հիմքը։*

*Հեղափոխական կոմիտեի (հեղկոմի) առաջին դեկրետներով վերացվեցին բուրժուա-նացիոնալիստական կառավարության պետական օրգանները՝ պառլամենտը, նախարարների խորհուրդը, նախարարությունները, դատական հին սիստեմը, դիվանագիտական ներկայացուցչությունները, նահանգապետությունները, քաղաքային ինքնավարությունները, գավառային կոմիտեները։ Վերացվեցին նաև Հայաստանում գոյություն ունեցող քաղաքացիների դասային բաժանումները, դասային կազմակերպությունները, բնակչության համար սահմանվեց ընդհանուր կոչում՝ Սովետական Հայաստանի Հանրապետության քաղաքացի։ 1920 թ. դեկտեմբերի 6-ին Հեղկոմի հատուկ դեկրետով ստեղծվեց Արտակարգ հանձնաժողով։*

*1920 թ. դեկտեմբերի 12-ին Հեղափոխական կոմիտեի կազմում ստեղծվում է ժողովրդական կոմիսարների խորհուրդը, որը միավորում էր ժողովրդական տնտեսության մի շարք բնագավառներ։ Հեղափոխական կոմիտեի նախագահ Ս. Կասյանը միաժամանակ նշանակվեց գյուղատնտեսության ժողովրդական կոմիսար։ Հեղափոխական կոմիտեն հաստատեց նոր կառավարության կազմը և նշանակեց կոմիսարներ. արտաքին գործերի և պարենավորման՝ Ա. Բեկզադյան, ռազմական՝ Ա. Նուրիջանյան, արտաքին առևտրի և ներքին գործերի՝ Ի. Դովլաթյան, լուսավորության՝ Ա. Հովհաննիսյան, ֆինանսների՝ Ե. Երզընկյան, աշխատանքի և սոցիալական ապահովության՝ Հ. Կոստանյան, հաղորդակցության և փոստ-հեռագրական՝ Ռ. Ոսկանյան։ Այնուհետև ստեղծվեցին առողջապահության ժողովրդական կոմիսարիատ, Բանվորա-գյուղացիական տեսչություն։*

*1921 թ. հունվարի 25-ին Հայաստանի հեղափոխական կոմիտեն հատուկ հրամանով սահմանում է ժողովրդական կոմիսարների, նրանց տեղակալների իրավունքներն ու պարտականությունները. Ժողկոմխորհը գործում էր հեղկոմի ղեկավարությամբ, նրա անմիջական ցուցումով։ Հեղափոխական կոմիտեն իրավասու էր լուծելու հանրապետությանը վերաբերող բոլոր հարցերը։*

*Սոցիալիստական նորաստեղծ պետության արդյունաբերությունը կազմակերպելու և ղեկավարելու համար հիմնադրվում է ժողովրդական տնտեսության խորհուրդ, որի առաջին նախագահն էր բոլշևիկների կուսակցության հնագույն անդամ, խոշոր տնտեսագետ Ս. Լուկաշինը (Սրապիոնյանը)։ Բռնագրավվում, պետական համաժողովրդական սեփականություն են վերածվում շահագործող դասակարգերի ձեռքում գտնվող արտադրամիջոցները, ազգայնացվում բանկերը։*

*Պետական կառավարման կենտրոնական մարմինների հետ մեկտեղ կազմակերպվում են իշխանության տեղական օրգանները։ 1920 թ. դեկտեմբերին Հայաստանի հեղափոխական կոմիտեն հաստատում է Երևանի, Նոր-Բայազետի գավառային հեղափոխական կոմիտեների կազմը։ Գավառային հեղափոխական կոմիտեներ են ստեղծվում նաև հանրապետության մյուս գավառներում, հեղկոմներ են ստեղծվում նաև գավառակներում ու գյուղերում։*

*Տեղական օրգանների կազմակերպման և նրանց նկատմամբ ղեկավարությունն իրականացնելու գործը կուսակցության Կենտրոնական կոմիտեն և Հեղկոմը ժամանակավորապես հանձնարարում են ներքին գործերի ժողկոմատին, որը կարող էր Հայհեղկոմի համաձայնությամբ տեղական հեղկոմի անդամներ նշանակել ու ազատել։ Այս բանը թելադրում էր ստեղծված իրադրությունը. թշնամական տարրերը դեռևս խռովություններ էին հրահրում, ամեն կերպ փորձում վնասել սովետական իշխանությանը։*

*Կենտրոնական և տեղական օրգաններ ստեղծելու հետ միասին, մեծ ուշադրություն էր հատկացվում երկրի արտաքին հարաբերությունների կարգավորմանը։ Հեղափոխական կոմիտեի արտաքին քաղաքականության գլխավոր ելակետը,— գրում էր արտաքին գործերի ժողովրդական կոմիսար Ասքանազ Մռավյանը,— խաղաղասիրությունն է, նա կյանքի է կոչված գերազանցապես նրա համար, որպեսզի հաշտություն և խաղաղություն տա դաշնակների ձեռքով քանդված ու ավերակ դարձված երկրին (տե՛ս «Խորհրդային Հայաստան», 1921 թ. սեպտեմբեր, № 210)։*

*Նոր պետականության հաստատումից հետո Սովետական Հայաստանի կառավարությունը դիվանագիտական հարաբերություններ հաստատեց Պարս-*

կաստանի, Թուրքիայի, մենշևիկյան Վրաստանի հետ։ Մինչ Անդրֆեդերացիայի կազմավորումը (1922 թ.) Հայաստանն իր ներկայացուցիչներն ուներ Մոսկվայում, Խարկովում, Բաքվում, Բաթումիում, Թիֆլիսում, Հյուսիսային Կովկասում, Միջին Ասիայում (Թուրքեստանում) և այլն[1]։ 1921 թ. նոյեմբերին Սովետական Հայաստանի հյուպատոսություն բացվեց Թավրիզում, լիազոր-ներկայացուցչություն՝ Թեհրանում և այլն։

Սովետական Հայաստանի կառավարության լենինյան խաղաղասիրական քաղաքականությունը բազմաչարչար հայ ժողովրդին հնարավորություն տվեց ձեռնամուխ լինելու ծայրաստիճան քայքայված ժողովրդական տնտեսության վերականգնմանը։

Հեղափոխական կոմիտեի նոյեմբերի 29-ի դեկլարացիան միաժամանակ հռչակեց բոլոր ազգերի իրավահավասարությունը։ Այդ պատմական ակտով ընդմիշտ վերջ տրվեց ազգային խտրականությանը, բոլոր ազգերի աշխատավորները եղբայրաբար ձեռք-ձեռքի տված անցան նոր կյանքի կառուցմանը։ Դասակարգային թշնամիները, բնականաբար, չէին հաշտվում դրա հետ և ամեն կերպ փորձում էին նորաստեղծ սովետական իշխանությանը խանգարել՝ իր առջև դրված խնդիրները լուծելու գործում։ Ժամանակաշրջանը, արտաքին և ներքին պայմանները բարդ էին և հանրապետությունը կարիք էր զգում հեղափոխության բովով անցած գործիչների։ Այստեղ ևս Սովետական Ռուսաստանը օգնեց նորաստեղծ սովետական հանրապետությանը։

Վ. Ի. Լենինի ցուցումով 1921 թ. պետական և կուսակցական օրգաններում աշխատելու համար Հայաստան են գործուղվում մի խումբ ականավոր գործիչներ, որոնց թվում էր Ալեքսանդր Մյասնիկյանը։

1921 թ. մայիսի 21-ին Հայաստանի Հեղափոխական կոմիտեն վերակազմվում է Ժողովրդական կոմիսարների խորհրդի։ Սովետական Հայաստանի Ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահ և ռազմական գործերի ժողովրդական կոմիսար է հաստատվում բոլշևիկյան կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ Ա. Ֆ. Մյասնիկյանը (Ալ. Մարտունի)։

Մեկ տարի շարունակ սովետական իշխանությունը Հայաստանում կազմակերպորեն հենվում էր հեղափոխական կոմիտեների վրա, որոնք, լինելով իշխանության նշանակովի և ժամանակավոր օրգաններ, մի կողմից՝ կատարում էին հեղափոխական դիկտատուրայի մարտական օրգանի ֆունկցիա, մյուս կողմից՝ նախապայմաններ ստեղծում ընտրովի սովետական օրգանների անցնելու համար։

Հայաստանում սովետական կարգերի հաղթանակի համար մղված պայքարի առաջին շրջանում բանվորների, գյուղացիների և կարմիրբանակայինների դեպուտատների սովետների փոխարեն, բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիների դիկտատուրայի ժամանակավոր օրգաններ դարձան հեղափոխական կոմիտեները։

«Պետություն և հեղափոխություն» աշխատությունում անդրադառնալով պրոլետարիատի պետական իշխանության քաղաքական ձևերին, Լենինը նշել է.

«Կապիտալիզմից կոմունիզմին անցնելը, իհարկե, չի կարող չբերել քաղաքական ձևերի ահագին առատություն և բազմազանություն, բայց դրանց բոլորի էությունն անխուսափելիորեն մեկ է լինելու՝ պրոլետարիատի դիկտատուրան» (Երկեր, հ. 25, էջ 533)։ Կապիտալիստական հասարակարգից կոմունիստականին անցնելու շրջանում Լենինը սովետները չէր դիտում որպես իշխանության միակ քաղաքական ձև։ Հարցը քաղաքական ձևի մեջ չէ, այլ նրա դասակարգային բովանդակության։ Հեղափոխական վերելքի պրոցեսում հաղթանակող պրոլետարիատը և աշխատավորները ստեղծում են իշխանության ղեկավարման նոր ձևեր, որոնք հաջողությամբ կատարում են պրոլետարիատի դիկտատուրայի խնդիրները։ Այդ տեղի ունեցավ և երկրորդ համաշխարհային պատերազմից հետո՝ Եվրոպայի և Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում։ Կարևորն այն է, թե պրոլետարիատի գլխավորած աշխատավոր դասակարգերը, որոնց կոփում ու առաջնորդում է կոմունիստների կուսակցությունը, պատրա՞ստ են իշխանությունը գրավելու, իսկ քաղաքական ձևի հարցը կլուծի ինքը՝ հեղափոխությունը։

Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները լավագույն օրինակ տվեցին։ Այնտեղ կազմակերպված ռազմահեղափոխական կոմիտեները փայլուն կերպով լուծեցին իրենց առջև դրված մարտական խնդիրները։

Ռուսաստանի օրինակով Հայաստանում ևս 1917—1918 թթ. տեղ-տեղ ստեղծվել էին սովետներ, որոնք մեծ մասամբ գտնվում էին էսեռա-մենշևիկյան, մանրբուրժուական կուսակցությունների ազդեցության տակ։ Երբ դաշնակներն իշխանության գլուխ անցան՝ դրանք վերացվեցին։ Եթե 1917—1918 թթ. սովետները Հայաստանում էական հետք չթողեցին, ապա հեղափոխական կոմիտեները, որոնք ստեղծվել էին բոլշևիկյան կազմակերպությունների նախաձեռնությամբ, մեծ գործունեություն ծավալեցին։ 1918 թ. հունվարին Սարիղամիշում կազմակերպված Հեղափոխական կոմիտեն ջերմորեն ողջունեց Ռուսաստանի Ժողովրդական կոմիսարների սովետին։ Հեղկոմի գլխավորությամբ, ժողովուրդը և զորքը հայտարարեցին, որ նրանք պատրաստ են բանվորա-գյուղացիական կառավարության առաջին իսկ կոչով դուրս գալ և պաշտպանել ռուսական մեծ հեղափոխության հաղթանակը։ («Кавказский рабочий», Т. 1918 г., № 2).

1920 թ. մայիսին Ալեքսանդրապոլում, Ղարաքիլիսայում, Դիլիջանում, Ղարսում, Սարիղամիշում, Նոր-Բայազետում և մյուս վայրերում հեղափոխական կոմիտեների ղեկավարությամբ տեղի ունեցած ցույցերը վերածվեցին զինված ապստամբության։ Մայիսյան ապստամբության ընթացքում ռազմահեղափոխական կոմիտեներ ստեղծվեցին նաև Զանգեզուրում, Շամշադինում, Իջևանում և այլ շրջաններում։

Հայաստանում սովետական կարգերի հաստատման համար մղված պայքարի փորձը ցույց տվեց, որ հեղկոմներն այն օրգաններն էին, որոնք ստեղծվեցին 1917—1918 թթ. Հոկտեմբերյան հեղափոխությունից անմիջապես հետո, և վերստեղծվեցին 1920 թ. մայիսին. նրանք պայքարում էին Հայաստանում սովետական իշխանության հաղթանակի համար։ Ջնջված մայիսյան ապստամբությունից հետո նրանք ճնշվել էին, բայց նրանց մղած պայքարի փորձը մեծ դաս եղավ հանրապետության աշխատավորների համար։ Այդ փորձի հիման վրա՝ 1920 թվականի վերջերին և 1921 թ. փետրվար—մարտ ամիսներին (դաշնակների ավանտյուրայի դեմ մղվող պայքարում) Հայաստանի կոմկուսակցության կազմակերպությունները և Հայհեղկոմը, հնարավորություն չունենալով զբաղվելու սովետների ընտրությամբ, կազմակերպեցին նշանակովի Հեղափոխական կոմիտեներ։

1921 թ. հուլիսին երկրում ավարտվեցին քաղաքացիական կռիվները,

[1] Տե՛ս Հայկական ՍՍՀ ՊԿԱ, ֆ. 4/114, ց. 1, գործ 184, թ. 53։

հանրապետությունը թևակոխեց նոր, խաղաղ շինարարության շրջան: Քաղաքացիական կռիվների ժամանակ ստեղծված իշխանության արտակարգ ու նշանակովի օրգանները՝ հեղափոխական կոմիտեները, որոնք հաջողությամբ լուծել էին իրենց առջև դրված խնդիրները, նոր ժամանակաշրջանում այլևս ի վիճակի չէին լուծել այն բազմաբովանդակ ու բարդ խնդիրները, որ հրամայաբար պահանջում էր կյանքը. ժամանակն էր ստեղծել ընտրովի սովետական օրգաններ: Ընտրովի սովետներին անցնելու անհրաժեշտության մասին ՀԿ(բ)Կ I համագումարի (1922 թ. հունվար) բանաձևում ասված է. «Մեկ տարվա ընթացքում Հայաստանում խորհրդային իշխանությունը կազմակերպորեն հենվել էր հեղկոմների վրա... քաղաքացիական կռիվները ավարտելով, մենք անցել ենք խաղաղ շինարարության, որը Հայաստանի բանվորներին ու գյուղացիներին հնարավորություն է տալիս ցուցաբերելու իրենց կամքը խորհրդային հանրապետության ղեկավարման գործում... Ընտրովի սովետների առաջ ներկայումս դրվում են հսկայական խնդիրներ՝ իշխանությունը մասսաներին մոտեցնելու միջոցով այդ մասսաներին դարձնել երկրի իսկական շինարարության մասնակիցներ» (ՀԿ(բ)Կ I համագումարի սղագրական հաշվետվությունը, 1922 թ., էջ 41):

Այդ խնդիրները կարող էին մեծ հաջողությամբ լուծել բանվորների, գյուղացիների և կարմիրբանակայինների դեպուտատների սովետները: Ընտրովի սովետական օրգանների ստեղծման ուղղությամբ լուրջ քայլեր են արվում 1921 թ. վերջերից: 1921 թ. նոյեմբերի 17-ին ՀՍՍՀ ժողովրդական կոմիսարների խորհուրդը ընդունում է ժամանակավոր կանոնադրություն՝ պատգամավորների խորհուրդների գործադիր կոմիտեների և համագումարների մասին:

Ժամանակավոր կանոնադրությամբ սահմանվում է գյուղական, քաղաքային խորհուրդների և գավառամասային (շրջանային), գավառային ու համահայաստանյան համագումարների պատգամավորների ընտրության կարգը: Գյուղերում ընտրվելու էին գյուղական խորհուրդներ, Երևանում և Ալեքսանդրապոլում՝ բանվորների և կարմիրբանակայինների դեպուտատների քաղաքային խորհուրդներ: Գավառամասերում խորհրդային ղեկավար օրգանները հանդիսանալու էին գավառամասերի խորհուրդների համագումարները, որոնց պատգամավորներն ընտրվելու էին գյուղական խորհուրդների կողմից:

Այնուհետև կանոնադրությունը սահմանում էր ՀՍՍՀ խորհուրդների համագումարի պատգամավորների ընտրության կարգը, ըստ որի՝ համագումարի պատգամավորներն ընտրվելու էին գավառային համագումարներում՝ 5000 բնակչից մեկ պատգամավորի հաշվով: Խորհրդային Հայաստանի համագումարը համարվելու էր հանրապետության իշխանության բարձրագույն օրգանը: Համագումարների միջև ընկած ժամանակաշրջանում երկիրը կառավարելու համար ընտրվելու էր ՀՍՍՀ կենտրոնական գործադիր կոմիտե:

Խորհուրդներում ընտրելու և ընտրվելու իրավունքից օգտվում էին՝ Հայաստանի Խորհրդային Սոցիալիստական Հանրապետության երկսեռ քաղաքացիները՝ անկախ դավանանքից, ազգությունից և նստակեցությունից, որոնց 18 տարին լրացած կլինի ընտրությունների օրը (ՀՍՍՀ դեկրետների և որոշումների ժողովածու, 1921 թ., № 13): Ընտրական իրավունքից զրկվում էին շահագործողները:

Գյուղական, շրջանային, քաղաքային և գավառային աշխատավորների պատգամավորների խորհուրդների ընտրությունները տեղի ունեցան 1921 թ. դեկտեմբերին և 1922 թ. հունվարին:



Գյուղական խորհուրդների կազմում, հայերից բացի, ընտրվեցին նաև 1647 ադրբեջանցի, 346 ռուս, 178 քուրդ, 41 ասորի և այլն: Շրջանային գործադիր կոմիտեների անդամներ ընտրվեցին՝ 27 ադրբեջանցի, 6 ռուս, 4 եզդի և մեկ ասորի, գավառային գործադիր կոմիտեների անդամներ՝ 10 ադրբեջանցի, 3 ռուս, 1 եզդի:

Սովետական Հայաստանի կառավարությունը և կոմունիստական կուսակցությունը ազգային փոքրամասնություններին ակտիվ մասնակից էին դարձնում երկրի կառավարման, նրա էկոնոմիկայի վերականգնման ու կուլտուրական շինարարության գործին: Սովետական իշխանության օրոք միայն հնարավորություններ ստեղծվեցին բոլոր ազգերի աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության ծավալման և նրանց ազատ զարգացման համար:

Խորհուրդների ընտրությունների արդյունքներն ամփոփվեցին ՀՍՍՀ բանվորների, գյուղացիների և կարմիրբանակայինների պատգամավորների խորհուրդների առաջին սահմանադիր համագումարում, որը տեղի ունեցավ 1922 թ. հունվարի 30-ից փետրվարի 4-ը: Համագումարն օրակարգի հարցերը քննարկելու հետ միասին, ընտրեց 75 անդամից և 17 թեկնածուներից բաղկացած կենտրոնական գործադիր կոմիտե: ԿԳԿ-ի առաջին նախագահ ընտրվեց Սաքո Համբարձումյանը: Կենտրոնական գործադիր կոմիտեի անդրանիկ նիստում կազմվեց նաև Հայաստանի կառավարությունը՝ Ժողկոմխորհը, Ալեքսանդր Մյասնիկյանի նախագահությամբ: Այսպիսով, հանրապետությունում գոյություն ունեցող նշանակովի օրգանները փոխարինվեցին ընտրովի օրգաններով:

Հայաստանի խորհուրդների առաջին համագումարն ընդունեց հանրապետության հիմնական օրենքը՝ սահմանադրությունը: Դա 1922 թ. փետրվարի 3-ին էր: Դարերով պետականությունից զրկված հայ ժողովրդի համար այդ օրը պատմական մեծ նշանակություն ստացավ, որպես սովետական սոցիալիստական պետականության արգասալի գործունեության սկիզբը:

Անդրանիկ սահմանադրությունը Սովետական Հայաստանի աշխատավորների պայքարի և հաղթանակի մարմնացումն էր: Նրանով հռչակվեցին այնպիսի հասարակական, պետական ու քաղաքական կարգեր, որոնք լիովին համապատասխանում են աշխատավորների շահերին: Սովետական Հայաստանի բանվորը, աշխատավոր գյուղացին, նախկինում ճնշվող դասակարգերն իրավունք ստացան ոչ միայն ընտրելու, այլև ընտրվելու պետական իշխանության օրգանում: Պետության կառավարման գլուխ անցան իրենք՝ աշխատավորները:

1922 թ. սահմանադրությամբ հաստատվեց հանրապետության սուվերենության խորհրդանիշը՝ պետական գերբն ու դրոշակը: Հայ մեծանուն բանաստեղծ Հովհաննես Թումանյանը, տեսնելով Սովետական Հայաստանի սուվերենության խորհրդանիշն ու գերբը, ասել է. «Ահա մի իշխանություն, որի գէրբի վրա տեսնում ենք ոչ թե գազաններ ու զէնքեր, այլ մուրճ ու մանգաղ, բանվորի ու գյուղացու աշխատանքի սիմվոլը միատեղ ու միասին, մի իշխանություն, որը գալիս է իր հետ բերելով հաշտ ու խաղաղ կյանք, արդար աշխատանք և ոչ թե կռիվ ու կոտորած:

Աշխատավոր մարդկությունը դարեր շարունակ երազել է այդպիսի իշխանություն և սերնդից սերունդ կտակել է էդ երազը— էդ իշխանությունը փրկության միակ խարիսխն է մեր ժողովրդի խորտակվող նավի համար» («Խորհրդային Հայաստան», 1938 թ., № 88):

*Սովետական պետականության հաստատումը Հայաստանում հանդիսացավ բոլորովին նոր, բարձր տիպի պետականություն, նա խարսխվեց անցյալի պատմության մեջ նախատիպը չունեցող եղբայրական ժողովուրդների, բանվորների և աշխատավոր գյուղացիների դաշինքի վրա, ուր պետության կառավարման գլուխ կանգնեցին իրենք՝ աշխատավորները։ Սովետական պետությունը սկիզբ դրեց հայ ժողովրդի ավելի սերտ միավորման։*

*Սովետական պետությունը բոլոր պայմաններն ստեղծեց ոչ միայն կանխելու հայերի նոր արտագաղթերը, այլև Սովետական Հայաստան վերադարձնելու հազարավոր սփյուռքահայերին։ Սովետական կարգերի հաղթանակի առաջին իսկ օրերից Հայհեղկոմը զբաղվում էր ո՛չ միայն երկրի ներսում եղած գաղթականներին տեղավորելու հարցով, այլև կազմակերպված ընդունում էր ինչպես սովետական հանրապետություններից, այնպես էլ արտասահմանյան պետություններից հայրենիք վերադարձող հայերին։ 1921 թ. միայն Միջագետքից հայրենիք եկան 7000 հայեր, որոնք տեղավորվեցին Վեդու շրջանում։*

*Հայաստանում սովետական ազգային սոցիալիստական սուվերեն պետության հաստատման և ամրապնդման փորձը ցույց տվեց, որ այդ պետությունը միայն իր ուժերով չէր կարող ո՛չ միայն պաշտպանվել իմպերիալիստական պետությունների ոտնձգություններից, այլև վերականգնել կազմալուծված, սովի ու աղքատության հասցված երկիրը։*

*Հայաստանում սովետական երիտասարդ պետությունն ամրապնդվեց շնորհիվ Անդրկովկասյան ֆեդերացիայի և Խորհրդային Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման։ Պետական նոր միավորումների ստեղծմամբ ԽՍՀՄ ժողովուրդների միջև ընդհանուր շահերի վրա հիմնված դաշինք հաստատվեց, որը յուրաքանչյուր հանրապետության սուվերենության և անկախության երաշխիքն է։ Անդրկովկասյան Խորհրդային Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունը մեծ դեր խաղաց ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական կյանքում։*

*1922 թ. առաջին սահմանադրությունն ընդունելուց հետո, մեծ փոփոխություններ կատարվեցին հանրապետության կյանքում։ Տնտեսապես թույլ զարգացած, գրեթե սեփական արդյունաբերություն չունեցող ցարական Ռուսաստանի կիսագաղութ Հայաստանը վերածվեց առաջավոր, սոցիալիստական երկրի։ Էկոնոմիկայի մեջ տեղի ունեցած զգալի տեղաշարժերը լուրջ փոփոխություններ էին առաջացրել նաև դասակարգային կառուցվածքում։ Վերացվեցին շահագործող դասակարգերը, մարդու կողմից՝ մարդու շահագործումը։*

*Կատարված այս առաջընթացը պետք է մարմնավորվեր օրենսդրական ակտում՝ նոր սահմանադրությունում։ Անհրաժեշտ էր ճշգրտել նոր սահմանադրության սոցիալ-տնտեսական հիմքերը, ընտրական սիստեմի դեմոկրատացման սկզբունքները։*

*1937 թ. մարտի 23-ին Հայաստանի Սովետական Սոցիալիստական Հանրապետության սովետների արտակարգ IX համագումարն ընդունեց նոր սահմանադրություն, որն ամփոփեց և օրենսդրական կարգով ամրապնդեց այն նվաճումները, որոնք ձեռք էին բերել հանրապետության աշխատավորները։*

*Սովետական Հայաստանի հիմնական օրենքը սահմանեց հանրապետության պետական կառուցվածքը, պետական իշխանության և կառավարման բարձրագույն, ինչպես նաև տեղական օրգանների իրավունքներն ու պարտականությունները։ Սահմանադրությունում սահմանվեցին սովետական քաղաքացիների ամենադեմոկրատական իրավունքներն ու պարտականությունները։*



*Մեծ բանաստեղծ Ավ. Իսահակյանը, արտահայտելով մեր ժողովրդի իղձերն ու ցանկությունները,* «Մարմնացավ հայ աշխատավոր ժողովրդի հինավուրց երազը» *հոդվածում գրել է. «Խորհրդային Հայաստանի սահմանադրությունը ԽՍՀՄ սահմանադրության մսից և արյունից է. նա խարսխված է պատմության մեծագույն խարտիայի վրա, սոցիալիստական տնտեսաձևի և սոցիալիստական դեմոկրատիայի վրա։ Հայկական ԽՍՀ-ի սահմանադրությունը դարերով անիրավված, շահագործված մեր ժողովրդին հռչակում է տեր և տնօրեն վեհապետական բոլոր իրավունքներով իր հայրենիքի մշակույթի և աշխատանքի» («Խորհրդային Հայաստան», 1937 թ., № 46)։*

*Սովետական Հայաստանը, ելնելով ՍՍՀՄ և ՀՍՍՀ սահմանադրության հիմնական սկզբունքներից, ինքն է որոշում իր իրավասության հարցերը՝ պետական, տնտեսական, կուլտուրական շինարարության, արտաքին հարաբերությունների և օրենսդրության բնագավառներում։*

*Սովետական Հայաստանը, որպես սուվերեն պետություն, ունի իր որոշակի տերիտորիան, որը չի կարող փոփոխվել առանց հանրապետության Գերագույն սովետի համաձայնության։ Հայկական ՍՍՀ-ն ունի իր պետական իշխանության և կառավարման բարձրագույն օրգանները՝ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետը, Գերագույն սովետի նախագահությունը, Սովետական Հայաստանի կառավարությունը. ունի իր սահմանադրությունը, որն ընդունվում և փոփոխության է ենթարկվում բացառապես հանրապետության պետական իշխանության բարձրագույն օրգանի՝ Գերագույն սովետի կողմից։ ՀՍՍՀ-ն կարող է անմիջական հարաբերությունների մեջ մտնել օտարերկրյա պետությունների հետ, փոխանակել դիվանագիտական ներկայացուցիչներ, համաձայնագրեր կնքել, որպես ՍՍՀՄ իրավահավասար անդամներից մեկը մասնակցել ՍՍՀՄ իշխանության և կառավարման օրգանների ստեղծմանը և նրանց գործունեությանը. նա իր ներկայացուցիչներն ունի ՍՍՀՄ Գերագույն սովետի երկու պալատներում՝ Միության և Ազգությունների սովետներում։*

*Նոր սահմանադրությունը օրենսդրական կարգով ձևակերպեց Հայկական ՍՍՀ-ի հռչակումը որպես միութենական ազգային սուվերեն պետություն և մտավ ՍՍՀՄ կազմի մեջ, որպես նրա իրավահավասար անդամներից մեկը։*

*Կոմունիստական կուսակցության ու սովետական իշխանության շնորհիվ ազգային վերածնունդ ապրած Սովետական Հայաստանի աշխատավորները, 1970 թվականին ամփոփելու են իրենց պայքարի ու հաղթանակների կեսդարյա արդյունքները։ ՀՍՍՀ անցած ուղին, շահագործողական կարգերից դեպի շահագործում չիմացող նոր, սոցիալիստական կարգերի անցումն էր, աշխատավոր դասակարգերի իրավազրկությունից դեպի սոցիալիստական դեմոկրատիայի, ազգային անկախության ստեղծումն էր, աշխատավորների ինտերնացիոնալ կապերի ամրապնդումը, տնտեսական հետամնացությունից, կիսաֆեոդալական երկրից զարգացած ինդուստրիայի, մեքենայացված կոլեկտիվ խոշոր տնտեսությունների ստեղծումն էր, ժողովրդական կրթության, գիտության ու կուլտուրայի ծաղկումն ու զարգացումը։*

*ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական մեծ ընտանիքում ավարտելով սոցիալիզմի կառուցումը, Սովետական Հայաստանի աշխատավորները բարձր խանդավառությամբ ու չտեսնված եռանդով առաջ են տանում կոմունիստական հասարակարգի կառուցումը։*



ԱՆՏՈՆՅԱՆ Մ. Հ.

# ԱՆՀԱՏԻ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՕՐՈՔ

*Սոցիալիզմի օրոք անհատի ակտիվության և պատասխանատվության պրոբլեմի բազմակողմանի ուսումնասիրումն ունի գիտական և հասարակական նշանակություն. այն սերտ կապված է նոր հասարակարգի կառուցման պրակտիկայի հետ։ Անհատի սոցիալական ֆունկցիայի կարևոր հատկանիշներից է հասարակության կենսական շահերի պաշտպանությունը։ Հասարակության մեջ իրենց կոնկրետ արտահայտությունն են գտնում մարդու պրակտիկ գործունեության բոլոր կողմերը։ «Ինչպես հասարակությունը,— ասել է Մարքսը,— արտադրում է մարդուն, ուրպես մարդու, այնպես էլ ինքն է արտադրվում նրա կողմից» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Երկեր, հ. 3, էջ 623)։*

*Ակտիվության զարգացումը հասարակության անդամների դրական կամ բացասական վերաբերմունքն է հասարակական երևույթների նկատմամբ։ Այն ծագում ու զարգանում է տվյալ սոցիալ-տնտեսական կարգի էությունն ըմբռնելու և սեփական դերն այդ հասարակարգում հասկանալու դեպքում։ Հասարակարգի էության ըմբռնումը չափազանց մեծ նշանակություն ունի մարդկանց ակտիվության դրսևորման ու զարգացման համար։ Առաջադրված նպատակն իրագործելու, արգելքները հաղթահարելու վճռականությունը անձի ակտիվության դրսևորումն է, որը տարբեր սոցիալ-քաղաքական պայմաններում ունի տարբեր բովանդակություն ու սոցիալական նշանակություն։ Կապիտալիստական հասարակարգում բուրժուազիայի ակտիվությունը ծառայում է իր տիրապետության հավերժացմանը, իսկ բանվոր դասակարգի, մյուս աշխատավորական դասակարգերի ակտիվությունն ուղղված է դրա դեմ և հետապնդում է կապիտալիստական շահագործումը վերացնելու, սոցիալիստական արտադրահարաբերություններ հաստատելու նպատակ։*

*Պատմական պրոցեսում գործում է մարդկանց ակտիվության հարաճուն զարգացման օրենքը, որը սոցիալ-տնտեսական տարբեր պայմաններում յուրովի է հանդես գալիս։ Մարդկանց սոցիալական ակտիվությունը պատմական կատեգորիա է, կրում է դարաշրջանի կնիքը։ Այն վերհասարակական երևույթ չէ, պայմանավորվում է հասարակական-տնտեսական ֆորմացիաներում գործող օրինաչափություններով և հանդես է գալիս յուրահատուկ ձևովներգործության տարբեր աստիճանով։ Այն դեպքում, երբ անտագոնիստական հասարակարգերում մարդկանց ակտիվությունը հակասական է, այդ լիովին վերանում է սոցիալիստական հասարակարգում, որը բացառում է անտագոնիստական դասակարգերի առկայությունը, արտացոլում լայն մասսաների շահերը։ Սոցիալիզմի և կոմունիզմի կառուցումը դառնում է մասսաների նպատակը։ Ահա թե ինչու սոցիալիզմի պայմաններում մարդկանց հասարակական ակտիվության ավելի է մեծանում, ստանում նոր իմաստ, նոր բովանդակություն։*

*Սոցիալիզմը մասսաների կենդանի ստեղծագործությունն է։ Նոր կյանքի կառուցման ասպարեզում ժողովրդական մասսաների ակտիվության աճը սոցիալիզմի դարաշրջանի օրենքն է,— ասված է ՍՄԿԿ ծրագրում։ Սոցիալիստական հասարակության անդամների ակտիվության գլխավոր աղբյուրը, օբյեկտիվ հիմքը սոցիալիստական սեփականությունն է։ Սոցիալիզմը աշխատավորներին ազատագրելով ճնշման ու ստրկացման բոլոր ձևերից, նրանց հասարակական կյանքի բոլոր ոլորտներում մղել է գիտակցական ակտիվ ստեղծագործության։ Ժողովուրդը՝ պատմության կերտողը, դարձել է իր սեփական կյանքի տերը, ձեռք բերել «իսկական մարդկային պայմաններ» (Էնգելս)։*

*Ժողովրդական մասսաների ակտիվության աճի օրենքի գործողության օբյեկտիվ հիմքերից է մասսաների քաղաքական գիտակցության, կուլտուրական մակարդակի բարձրացումը։ Սոցիալիստական հասարակության անդամները որքան խոր են ճանաչում հասարակության զարգացման օրինաչափությունները, որքան լավ են գիտակցում կոմունիզմի կառուցման պատմական անհրաժեշտությունը, նրա կառուցման ուղիներն ու առանձնահատկությունները, այնքան ավելի ակտիվ են պայքարում նրա հաղթանակի համար։ Կուսակցության ծրագրում շեշտված է, որ բնակչության կուլտուրական աճից է մեծ չափով կախված արտադրաուժերի վերելքը, տեխնիկայի առաջադիմությունը, արտադրության ռացիոնալ կազմակերպումը, աշխատավորների հասարակական ակտիվության բարձրացումը։*

*Ժողովրդական մասսաների ակտիվության բարձրացման վճռական գործոններից է կոմունիստական կուսակցության ղեկավար դերը։ Կոմունիստական կուսակցությունը աշխատավորությանը դաստիարակում է մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ գաղափարների ոգով և մեր հասարակարգի զարգացման յուրաքանչյուր էտապում մշակում ու իրագործում է այնպիսի քաղաքականություն, որն արտացոլում է ժողովրդական մասսաների կենսական շահերը, կատարելագործում հասարակական կյանքի ղեկավարման ձևերը, ժողովրդական ամենալայն զանգվածների համար պայմաններ ստեղծում՝ ակտիվ մասնակցելու կոմունիստական շինարարությանը։*

*Կուսակցությունը ընտրում ու օգտագործում է մասսաների ակտիվության այնպիսի ձևեր, որոնք արտացոլում են հասարակության զարգացման տվյալ էտապի տենդենցները, գիտականորեն ընդհանրացնում կուտակված փորձը։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ժամանակ կուսակցությունը, տնտեսական պայքարի ձևերը օրգանապես միացնելով քաղաքականի հետ, ապահովեց սոցիալիստական հեղափոխության հաղթանակը։ Այդ շրջանում հեղափոխական ուժերի ակտիվությունը դրսևորվում էր կապիտալիստական կարգերի դեմ մղված դասակարգային պայքարում։ Սոցիալիզմի պայմաններում արմատապես փոխվում են մասսաների սոցիալական ակտիվու-*

թյան դրսևորման ձևերն ու եղանակները՝ հասարակական կյանքում սուբյեկտիվ գործոնի դերը։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը լայն ճանապարհ են հարթում առաջադիմական ամեն մի երևույթի համար, ուսումնասիրում, ընդհանրացնում և կիրառում մասսաների ակտիվության առավել առաջավոր ձևերը, միլիոնավոր մարդկանց ընդգրկում քաղաքական ու արտադրական ակտիվ գործունեության մեջ։ Սովետական մարդկանց արտադրական ակտիվության գլխավոր ձևը սոցիալիստական մրցությունն է, որի բարձրագույն արտահայտությունը կոմունիստական աշխատանքի շարժումն է։ Սոցիալիզմի համար մղած պայքարում աշխատավորների հասարակական ակտիվությունը, մրցության մասսայական բնույթն առաջադիմության գրավականներից էր։ Իսկ այժմ, երբ լուծվում են ավելի բարդ ու բազմակողմանի խնդիրները, սոցիալիստական մրցությունը նոր որակ է ստանում։ Նպաստելով նոր ռեզերվների հայտնաբերմանն ու օգտագործմանը, նյութական արտադրության արագ զարգացմանը և աշխատանքի արտադրողականության անշեղ աճին, այն խոշոր դեր է խաղում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։

Մրցությունը, միաժամանակ, գործնականում քննադատության ձև է, հակասությունների հաղթահարման եղանակ։ Ժողովրդական տնտեսության պլանավորման ու նյութական խթանման նոր սիստեմն առավել օբյեկտիվ պայմաններ է ստեղծում սոցիալիստական մրցության զարգացման ու կատարելագործման համար։ Նոր պայմանները կյանքի են կոչում կոմունիզմի կառուցման սուբյեկտիվ գործոնի նոր հատկություններ՝ պետական պլանների նկատմամբ աշխատողների հոգեբանության մեջ կատարվող փոփոխությունը՝ արտադրության ավելի լարված պլաններ ընդունելու, ռեզերվներ հայտնաբերելու, արդյունավետ օգտագործելու և աշխատանքի արտադրողականության բարձրացման ձգտումը և այլն։

Մասսայական բնույթ կրող ռացիոնալիզատորական և գյուտարարական շարժումը արտադրության ասպարեզում՝ մարդկանց աճող ակտիվության ցայտուն դրսևորումներից է։ Այժմ ռացիոնալիզատորների և գյուտարարների համամիութենական ընկերությունը, գիտատեխնիկական ընկերությունների հետ մեկտեղ, ընդգրկում է 6 միլիոնից ավելի մարդ։ Գյուտարարներն ու ռացիոնալիզատորները մեծ ավանդ են ներդնում աշխատանքի արտադրողականության բարձրացման, տեխնիկական առաջադիմության արագացման գործում։ Յոթնամյակի տարիներին նրանց առաջարկությունների ներդրումից տնտեսվել է 11 միլիարդ ռուբլի։ Գիտատեխնիկական ընկերությունների անդամները գիտական ու տեխնիկական հազարավոր պրոբլեմներ են մշակել, որոնք ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունեն։

Ժողովրդական մասսաների տեխնիկական ստեղծագործության հետագա զարգացման համար մեծ դեր ունեն հասարակական հիմունքներով գործող լաբորատորիաները, հետազոտական խմբերն ու ինստիտուտները, ինքնագործ կոնստրուկտորական բյուրոները, տնտեսական վերլուծության խմբերը և այլն։ Մեր երկրում գոյություն ունեն ավելի քան 18 հազար հասարակական կոնստրուկտորական բյուրո։ Մասսաների նախաձեռնությամբ ստեղծված ինքնագործ կազմակերպությունները, լինելով նրանց սոցիալական ակտիվության արգասիք, զգալի օգնություն են ցույց տալիս հիմնարկ-ձեռնարկություններին՝ բարձրացնելու աշխատողների մասնագիտական որակը, արտադրության մեջ



ներդնելու առաջավոր փորձը, արագացնելու արտադրաուժերի զարգացման տեմպերը։

Կոմունիստական հասարակարգի կառուցման պրակտիկան հերքեց բուրժուական սոցիոլոգների հերյուրանքները, որ իբր տեխնիկական ստեղծագործությունը միայն «ընտրյալների», ականավոր անհատների գործն է, որ հասարակ մարդիկ անընդունակ են ստեղծագործական գործունեության, չեն կարող երկիր կառավարել։ Բուրժուական գաղափարախոսներն ի վիճակի չեն և չեն ուզում հասկանալ, որ սոցիալիստական դեմոկրատիան ապահովում է անհատի, աշխատավորների լայն խավերի ակտիվ մասնակցությունը հասարակական կյանքի բոլոր բնագավառների ղեկավարմանը։ Սովետները մեծ դեր են խաղում սոցիալիստական դեմոկրատիան զարգացնելու, աշխատավորությանը պետության ու հասարակության գործերի կառավարմանը ներգրավելու և նրանց ակտիվությունը բարձրացնելու ասպարեզում։ Մեր հանրապետությունում գործում են աշխատավորների դեպուտատների 534 սովետ, որտեղ ընդգրկված են 25.650 դեպուտատ, իսկ 3332 մշտական հանձնաժողովներում՝ 18.847 դեպուտատ։ Հանձնաժողովների աշխատանքում ներգրավված դեպուտատները կատարում են տարբեր հանձնարարություններ.

Բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցությունը պետության կառավարմանը, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարմանը, պետական ապարատի աշխատանքի բարելավումն ու նրա գործունեության նկատմամբ ժողովրդական վերահսկողության ուժեղացումը սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալման ու կատարելագործման արտահայտությունն են։

Սոցիալիստական դեմոկրատիայի ծավալման միջոցով միլիոնավոր մարդիկ սովորում են հասարակության գործերի կառավարման մեթոդներն ու եղանակները։ «...Երբ բոլորը կսովորեն կառավարել և իսկապես կսկսեն ինքնուրույնաբար կառավարել հասարակական արտադրությունը...,— գրել է Վ. Ի. Լենինը,— այն ժամանակ լայնորեն կբացվի դուռը կոմունիստական հասարակության առաջին փուլից նրա բարձրագույն փուլին անցնելու համար» (Երկեր, հ. 25, էջ 618—619)։

Սոցիալիստական դեմոկրատիայի, անհատի սոցիալական ակտիվության դրսևորումներից են քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Վերջինիս ծավալումը ապահովում է անհատի, մասսաների ակտիվ մասնակցությունը հասարակական կյանքում տեղ գտած թերությունների, սխալների դեմ մղվող պայքարին։ Մեծ նշանակություն ունի ներքևից, մասսաներից եկող քննադատությունը, որովհետև այնտեղ արտահայտվում են միլիոնավոր մարդկանց ստեղծագործական ակտիվությունն ու ինքնագործունեությունը, նրանց հոգատարությունը՝ հասարակության կատարելագործման ու զարգացման համար։

Անհատի սոցիալական ակտիվությունը (որն այսուհետև մենք կկոչենք սոցիալիստական ակտիվություն), մեր հասարակարգում կրում է ոչ թե էպիզոդիկ, անցողակի բնույթ, այլ կայուն է, մնայուն։

Մեր նվաճումները հաստատեցին Լենինի այն կանխագուշակությունը, որ միայն սոցիալիզմի ժամանակ է սկսվում արագ, իսկապես մասսայական ակտիվ ստեղծագործական շարժումը կյանքի բոլոր բնագավառներում, որին մասնակցում է բնակչության մեծամասնությունը, իսկ հետագայում կմասնակցի ամբողջ ազգաբնակչությունը։ Նոր կյանքի կառուցման բոլոր ոլորտ-

ներում մեր պատմական հաջողությունների գրավականներից է՝ սովետական մարդկանց հասարակական-քաղաքական ակտիվությունը, որը սոցիալիստական հասարակարգի բարոյա-քաղաքական միասնության արտահայտությունն է։

Անտագոնիստական հասարակարգում սոցիալական ակտիվությունը միակողմանի է, սահմանափակ, իսկ սոցիալիստականում՝ ապրելակերպի նորմ է՝ հասարակական կյանքի բոլոր ասպարեզներում։ Կոմունիստական գաղափարների արմատավորումը հասարակական և անձնական կյանքում սոցիալիստական հասարակարգի բնորոշ հատկանիշներից է։ Վ. Ի. Լենինը ուսուցանում էր, որ կոմունիզմը սկսվում է այնտեղ, որտեղ շարքային աշխատողը պահանջ է զգում արտադրա-աշխատանքի պրոցեսում խնայել ածուխը, մետաղը, հումքը և այլ նյութեր, որը օգուտ է բերում ոչ թե անմիջապես իրեն, իր բարեկամներին, այլ «հեռավորներին», ամբողջ հասարակությանը։ Սոցիալիստական շինարարության փորձը ցույց տվեց, որ նոր կյանքի կառուցումը բազմամիլիոն մարդկանց միահամուռ, ակտիվ աշխատանքի արդյունք է։ Ընդգծելով նոր ֆորմացիայի այդ առանձնահատկությունը, Լենինը գրել է. «Ինչպես, որ հարյուրավորներ եղել են այդպիսի ստեղծողներ ճորտատիրական իրավունքի դարաշրջանում, ինչպես որ հազարավորներ ու տասնյակ հազարավորներ պետություն են կառուցել կապիտալիզմի դարաշրջանում, այնպես էլ այժմ, սոցիալիստական հեղաշրջումը կարելի է կատարել միայն այն դեպքում, երբ պետություն կառավարելու գործին ակտիվորեն անմիջական մասնակցություն ցույց տան տասնյակ միլիոններ» (Երկեր, հ. 28, էջ 554)։

Սոցիալիստական ակտիվության տվյալ առանձնահատկությունը մեր ժողովրդի նպատակի, գաղափարախոսության, բարոյական նորմերի ընդհանրության արտահայտությունն է։ Հասարակության յուրաքանչյուր անդամի անձնական ու հասարակական շահերի օրգանական միասնությունը սոցիալիստական հասարակության բոլոր անդամների ակտիվության բարձրագույն ըսկզբունքն է, որի նշանաբանն է՝ «Ամեն ինչ հասարակության համար, ամեն ինչ անհատի համար» հումանիստական գաղափարը։ Հասարակության և անհատի այդպիսի դիալեկտիկական փոխադարձ կապը սոցիալիստական հասարակության բնորոշ գիծն է։ Անշուշտ, սա չի նշանակում, թե սոցիալիզմի պայմաններում հասարակական և անձնական շահերի միջև հակասություններ չկան։ Հայտնի է, որ բնակչության որոշ տարրերի մոտ դեռևս պահպանվում են խնամառուական, պայքարի գնով նվաճած բարիքների յուրացման տրամադրություններ, կյանքի հանդեպ սպառողական վերաբերմունքի քաղքենիական հակումներ։ Հասարակության զարգացման հետ միասին աստիճանաբար հաղթահարվում են նման և այլ տիպի հակասությունները։ Սոցիալիստական ակտիվության առանձնահատկություններից են հասարակության անդամների բարձր քաղաքական գիտակցությունը, գաղափարական համոզվածությունը, հայրենասիրությունը։ Սովետական մարդկանց բնութագրող բարոյական այդ հատկանիշները երևան են գալիս կյանքի բոլոր ասպարեզներում։ Արժեքավորելով քաղաքական գիտակցության նշանակությունը նոր կյանքի կառուցման գործում, կուսակցության ծրագիրը ընդգծել է. «Որքան ավելի բարձր է հասարակության անդամների գիտակցությունը, այնքան ավելի լրիվ ու լայն է ծավալվում նրանց ստեղծագործական ակտիվությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, աշխատանքի կոմունիստական ձևերի և մարդկանց միջև նոր հարաբերությունների զարգացման մեջ և, հետևապես



այնքան ավելի արագ ու հաջողությամբ են լուծվում կոմունիզմի կառուցման խնդիրները» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, 1962, էջ 539)։ Այդ պրոցեսը տեղի է ունենում գիտակցաբար, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ։

Սոցիալիստական ակտիվությունը հասարակական առաջընթացի հետ մեկտեղ զարգանում է ու փոփոխվում։ Անընդհատ ծագում են մասսաների ակտիվության նոր, առավել պրոգրեսիվ ձևեր, փոխվում է նրա դրսևորման կերպը, ուժեղանում ներգործությունը հասարակության զարգացման ընթացքի վրա։ Սոցիալիստական ակտիվությունն իր էությամբ հումանիստական է, ծառայում է մարդկանց, արտահայտում նրանց շահերը։ Բուրժուազիայի սոցիալական ակտիվությունը, խտրություն չդնելով միջոցների ընտրության մեջ, ուղղված է կատարելագործելու աշխատավորության շահագործման եղանակները, բարձրացնելու շահույթի չափը։ Բավական է ասել, որ ընթացիկ դարի առաջին կեսում իմպերիալիստական պատերազմներն ու միլիտարիզացիան հասարակությունից կլանել են 4.000 միլիարդ դոլար։ Սոցիալիստական ակտիվությունն իր առջև երբեք չի կարող նման հակահումանիստական խնդիրներ դնել։ Սովետական մարդիկ բոլոր ազգերի ու երկրների աշխատավորների նկատմամբ ցուցաբերում են հումանիստական վերաբերմունք։ Նոր հասարակարգի կեսդարյա փորձը սոցիալիստական հումանիզմի դրսևորումն է, ազգերի եղբայրական համագործակցության հաստատումը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումը, գաղութային երկրների ժողովուրդների ազգային ազատագրական պայքարի վերելքը, խաղաղության համաշխարհային շարժումը խոշորագույն հումանիստական ակտ են, ժողովրդական մասսաների բազմակողմանի ակտիվության արդյունք։

Սոցիալիստական ակտիվությունը ենթադրում է հանձնարարված գործի հանդեպ անհատի պատասխանատվության զգացում, հասարակական առաջադրանքները անթերի կատարելու, ինքնահսկելու քաղաքացիական գիտակցություն։ Անհատի պատասխանատվության աստիճանը կախված է նրա գաղափարական մակարդակից, երևույթները ճիշտ ըմբռնելու և կողմնորոշվելու ունակությունից։ Հարկավոր է, սովորեցնում էր Լենինը, որ «...գիտակից բանվորն իրեն զգա ոչ միայն որպես տեր իր գործարանում, այլ որպես երկրի ներկայացուցիչ, որ նա իր վրա զգա պատասխանատվություն» (Երկեր հ. 27, էջ 500)։ Հանձնարարված գործի հանդեպ անհատի բարձր պատասխանատվությունը բեղմնավոր է դարձնում նրա գործունեությունը հասարակության զարգացման վրա։ Նման պայմաններում անհատը խորապես բավարարված է զգում, որը բխում է հասարակությանը պիտանի լինելու գիտակցումից, մնայուն արժեքներ ստեղծելու պահանջից։ Չեն մոռացվում Նիկոլայ Օստրովսկու խոսքերը. Մարդու մոտ ամենաթանկագինը կյանքն է, այն տրվում է նրան մեկ անգամ և հարկավոր է ապրել այնպես, որ տանջանքի պես ցավալի չլինեն աննպատակ ապրած տարիները... որ մեռնելիս կարողանաս ասել. ամբողջ կյանքս ու ուժերս նվիրել եմ աշխարհում ամենագեղեցիկին՝ մարդկության ազատագրման համար մղվող պայքարին։

Բարձր գիտակցությունը, հասարակության զարգացման օրենքները ճանաչելն ու նրանց ճիշտ օգտագործելն անհատի ազատության գործակիցն են։ Նրա ազատությունը կախված է հասարակության հանդեպ ունեցած պատասխանատվության չափից, շահերի ընդհանրությունից։ Սրանով է արտահայտվում ազատության և պատասխանատվության, պատասխանատվության և ակտի-

վության դիալեկտիկան։ Չկա ազատություն առանց պատասխանատվության, ինչպես և պատասխանատվություն՝ առանց ազատության։ Հասարակության նկատմամբ անհատի բարձր պատասխանատվության և ակտիվության դրսևորման համար բավական չէ նրա բարձր գիտակցականությունը, դժվարություններն ու խոչընդոտները հաղթահարելու ցանկությունն ու պատրաստակամությունը։ Անհրաժեշտ են նաև մասնագիտական կուռ գիտելիքներ, նյութական շահագրգռվածության ազդակներ։ Այդ կարևոր գործոնները հատուկ նշանակություն են ստացել այժմ՝ տնտեսական նոր ռեֆորմի պայմաններում, երբ պահանջվում են միջոցների ռացիոնալ օգտագործմամբ բարձր արդյունքներ ստեղծել։

Ժողովրդական տնտեսության կառավարման գործում տնտեսական խթանների դերի ուժեղացումը բարելավել է պլանավորումը, ընդլայնել ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների տնտեսական ինքնուրույնությունն ու նախաձեռնությունը, բարձրացրել արտադրական կոլեկտիվների պատասխանատվությունն ու ակտիվությունը, նրանց նյութական շահագրգռվածությունը՝ իրենց գործունեության արդյունավետության համար։ Տնտեսական նոր ռեֆորմի արդյունավետությունն ավելի բարձր կլինի, եթե առաջադրված պլանների կատարման գործում անհրաժեշտ մակարդակի վրա գտնվի յուրաքանչյուր կոլեկտիվի պատասխանատվությունը։

Կուսակցության քաղաքականությունը կենսագործելու համար առաջնակարգ նշանակություն ունեն կուսկազմակերպությունների մարտունակությունը, յուրաքանչյուր կոմունիստի գործարարությունը, ակտիվության և պատասխանատվության ռատ ամենայնի բարձրացումը։ ՍՄԿԿ XXIII համագումարն ընդգծեց. խնդիրն այն է, որ բարձրացնենք յուրաքանչյուր կոմունիստի պատասխանատվության զգացումը իր կազմակերպության ու ամբողջ կուսակցության գործերի վիճակի համար։

Կուսակցության գիծը իրականացնելու բնագավառում մարդկանց ակտիվության ու պատասխանատվության մեծացման համար մեծ դեր են խաղում հասարակական կազմակերպությունները։ Այդ կազմակերպությունները (արհմիությունները, կոմերիտմիությունը և այլն) իրենց անդամներին դաստիարակում են ժողովրդի և պետության նկատմամբ բարձր պատասխանատվության ու գիտակցականության ոգով։

Սոցիալիզմի օրոք մարդկանց ակտիվության ու պատասխանատվության բարձրացումը տեղի է ունենում օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների ազդեցության ներքո։ Սակայն ո՛չ օբյեկտիվ պայմանները, ո՛չ սուբյեկտիվ գործոնը (առանձին վերցրած) չեն կարող ցանկալի արդյունքներ տալ, եթե դաստիարակվողը դաստիարակության լիարժեք սուբյեկտ չէ, այսինքն՝ չի ձգտում իր մեջ մշակել կոմունիստական հայացքներ, մնում է սոսկ դաստիարակման պասիվ օբյեկտ։ Առանձին մարդկանց մեջ նկատվող պասիվությունը, անպատասխանատվությունը, պետական և աշխատանքային ցածր կարգապահությունը վնասում են ընդհանուր գործին։ Գործի հաջողությունը մեծապես կախված է մարդկանց ակտիվությունից, նրանց նախաձեռնությունից, գործարարությունից և պատասխանատվությունից։

Անշեղ բարձրացնելով սովետական մարդկանց քաղաքական աշխատանքային ակտիվությունն ու պատասխանատվությունը, հետևողական պայքարելով եսասիրության, պասիվության դրսևորումների դեմ, կոմունիստական կուսակցությունը մոբիլիզացնում է հասարակության ուժերը՝ մեր երկրում կոմունիզմ կառուցելու համար։




# ԿՈԼԵԳԻԱԼ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՇՐՋԿՈՄԻ ԱՆԴԱՄԸ

ՄՈՎՍԻՍՅԱՆ Կ. Մ.

ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար

ՍՄԿԿ բազմամյա գործունեությունն ակնբախորեն ցույց է տալիս, որ գիտականորեն հիմնավորված քաղաքականություն մշակելու, երկրի տնտեսության, կուլտուրայի և հասարակական կյանքի զարգացումը ճիշտ կազմակերպելու և ղեկավարելու համար միշտ անհրաժեշտ է հաշվի առնել ավելի ու ավելի մեծ թվով մարդկանց կարծիքը, օգտագործել մասսաների փորձը։ Դա կոլեկտիվ ղեկավարության տարրական պահանջն է։ Իսկ կուսակցական կոլեկտիվ ղեկավարությունը, ինչպես ընդգծված է ՍՄԿԿ Կանոնադրության մեջ, կուսակցական կազմակերպությունների նորմալ գործունեության, կադրերի ճիշտ դաստիարակության, կոմունիստների ակտիվության ու ինքնագործունեության զարգացման անվերապահ պայմանն է։

Կոլեկտիվ ղեկավարության սկզբունքը պայմանավորված է կոմունիստական կուսակցության բնույթով, նրա պատմական դերով ու էությամբ։ Կոմունիստական կուսակցության հիմնադիր և առաջնորդ Վ. Ի. Լենինի գործունեությունը կոլեկտիվ ղեկավարության սկզբունքի հետևողական կենսագործման փայլուն օրինակ է։ Պատմական նոր պայմաններում ստեղծագործորեն զարգացնելով Մարքսի ու Էնգելսի հեղափոխական ուսմունքը, Լենինը կոնկրետացբեց ու կյանքում կիրառեց նրանց գաղափարները կուսակցության կոլեկտիվ ղեկավարության մասին։ Հենվելով ռուսական և միջազգային բանվորական շարժման փորձի վրա, Վ. Ի. Լենինը գտնում էր, որ կուսակցական որոշումներն ու փաստաթղթերը պետք է լինեն կոլեկտիվ ստեղծագործության արդյունք։

Կուսակցական կազմակերպությունների և ամբողջ կուսակցության նորմալ գործունեությունը, սովորեցնում է Վլադիմիր Իլյիչը, հնարավոր է միայն ղեկավարության կոլեկտիվության սկզբունքները խստորեն պահպանելու պայմաններում, մի բան, որը կուսակցությանը զերծ է պահում պատահականությունից և միակողմանիությունից։

Բոլոր կարևոր հարցերի շուրջը Լենինը միշտ անձամբ խորհրդակցում էր Կենտկոմի անդամների, ժողկոմների, շարքային բանվորների հետ, ձգտում էր,

որպեսզի կուսակցական և կառավարական որոշումները մշակվեն հմուտ աշխատողների և մասնագետների մասնակցությամբ, կոլեկտիվ կերպով, որպեսզի դրանք լինեն ավելի ճիշտ, լրիվ արտացոլեն կյանքի պահանջները։

Հարցերի քննարկման, որոշումների ընդունման կոլեկտիվությունը անխզելիորեն կապված է հանձնարարված գործի համար անձնական պատասխանատվության հետ։ «Համենայն դեպս և առանց բացառության բոլոր հանգամանքներում,— գրել է Վ. Ի. Լենինը,— կոլեկտիվությունը պետք է զուգակցված լինի յուրաքանչյուր անձի անձնական պատասխանատվության ամենաճշգրիտ սահմանումը՝ ճշտիվ որոշված գործի համար» (հ. 29, էջ 537), ահա թե ինչու «Իրավասու օրգանների որոշումից հետո,— ասել է նա մի այլ առիթով,— մենք բոլորս, կուսակցության անդամներս, գործում ենք որպես մեկ մարդ» (հ. 11, էջ 289)։

Վ. Ի. Լենինը նախազգուշացնում էր, որ կոլեկտիվության ամեն մի չափազանցում ու խեղաթյուրում հանգում է քաշքշուկի, անպատասխանատվության։ Իսկ կոլեգիալության վկայակոչումով քողարկված անպատասխանատվությունը նա համարում է ամենավտանգավոր չարիքը, որը սովորաբար հանգեցնում է ոչ միայն լուրջ սխալների, այլև արգելակում է կադրերի աճը։

Ներկուսակցական դեմոկրատիայի պահանջների պահպանումը կոլեկտիվ ղեկավարության սկզբունքի անշեղ կենսագործման կարևոր պայմանն է։ Ղեկավարության կոլեկտիվությունը և ներկուսակցական դեմոկրատիան անբաժան են միմյանցից։ Դեմոկրատիզմը տեղական կուսակցական օրգաններից ու նրանց ղեկավարներից պահանջում է, որպեսզի նրանք իրենց ամբողջ գործունեության ընթացքում մշտապես հենվեն լայն ակտիվի վրա, որը իրավամբ մեծ դեր է կատարում կուսակցության կյանքում։

Կուսակցական ղեկավարության կոլեկտիվության ապահովման գրավականն է նաև այն, որ վերջին տարիներին կանոնավոր հրավիրվում են կուսակցության համագումարներ, Կենտրոնական կոմիտեի պլենումներ, զգալիորեն աճել է կուսակցության մասսաների ակտիվությունն ու ինքնագործունեությունը։ Կուսակցությունն իր գործունեության, կուսակցության և երկրի կյանքում կատարվող կարևոր իրադարձությունների մասին սիստեմատիկ ինֆորմացիա է տալիս կոմունիստներին ու բոլոր աշխատավորներին, խորհրդակցում նրանց հետ։

Այդ ձևով են աշխատում այժմ ոչ միայն ՍՄԿԿ Կենտկոմը, այլև տեղական կուսակցական օրգանները, քաղկոմ-շրջկոմները։ Օրինակ, ՍՄԿԿ XXIII համագումարից հետո ՀԿԿ Ախուրյանի շրջկոմը նույնպես զգալիորեն վերակառուցել է իր գործունեությունը, դարձել շրջանի տնտեսական և քաղաքական կյանքի կոլեկտիվ ղեկավարության օրգան։ Վճռականապես հրաժարվելով անցյալի արատավոր ոճից, վերացնելով կազմակերպական աշխատանքում թույլ տրված սխալներն ու թերությունները, շրջկոմը հետհամագումարյան շրջանում ավելի լուրջ ուշադրություն է նվիրում կուսակցական-կազմակերպական աշխատանքի հարցերին, հետևողականորեն առաջնորդվում կոլեկտիվ ղեկավարության սկզբունքով, տնտեսական և քաղաքական բազմապիսի հարցերը լուծելիս ավելի հաճախակի է խորհրդակցում կուսակցական ակտիվի, շարքային կոմունիստների և անկուսակցական մասսաների հետ։

Այժմ մենք լուրջ ուշադրություն ենք դարձնում ոչ միայն շրջկոմի պլենումները և բյուրոյի նիստերը ժամանակին հրավիրելու վրա, այլ այն բանին, թե ինչպիսի՞ հարցեր պետք է ներկայացնել կուսակցական կոլեկտիվ օրգանի



քննարկմանը, ինչպե՞ս կազմակերպել դրանց ուսումնասիրումներն ու նախապատրաստումը, բարձր մակարդակով քննարկումը և, որը նույնպես շատ կարևոր է, ապահովել շրջկոմի անդամների ակտիվ մասնակցությունը այդ հարցերի նախապատրաստմանն ու քննարկմանը, ընդունված որոշումների կատարմանը։

Այն մեծ վստահությունը, որ կուսկոնֆերանսի պատգամավորները ցուցաբերում են այս կամ այն կոմունիստի նկատմամբ՝ ընտրելով նրան շրջանի կուսակցական ղեկավար օրգանի կազմում, նրան պարտավորեցնում է միշտ բարձր պահել շրջկոմի անդամի պատիվն ու արժանապատվությունը, ամենուրեք հստակորեն և ազնվաբար կատարել իր անմիջական պարտականությունները, շրջկոմի հանձնարարությունները, հաճախակի շփվել աշխատավորական լայն զանգվածների հետ, անդուլ պրոպագանդել կուսակցության քաղաքականությունը, պայքարել կուսակցության և նրա տեղական օրգանների որոշումների անշեղ կատարման համար։

Հաշվի առնելով այս ամենը, մենք ջանում ենք, որպեսզի շրջկոմի յուրաքանչյուր անդամ միշտ գտնվի իր կոչման բարձրության վրա, իրեն միշտ պատասխանատու զգա շրջանի գործերի համար, վայելի անհրաժեշտ հեղինակություն կուսակցական մասսաների մեջ։ Մենք շրջկոմի անդամներին սիստեմատիկաբար մասնակից ենք դարձնում հասարակական-քաղաքական միջոցառումների անցկացմանը, հաշվի ենք առնում նրանց սեփական նախաձեռնությունները, օգնում յուրաքանչյուր ընկերոջ քաղաքական ու գործնական հատկությունների զարգացմանը։

Ուրախալի է նշել, որ վերջին տարիներին շրջանային կոնֆերանսներում պատգամավորները և կուսակցական մասսաներն ընդհանրապես լուրջ պահանջներ են ներկայացնում ոչ միայն շրջկոմի բյուրոյի, քարտուղարների, այլև յուրաքանչյուր անդամի աշխատանքի նկատմամբ։ Կուսակցական կոնֆերանսներում, որպես կանոն, շրջկոմի կազմը թարմացվում է ավելի կրթված և հասունացած կոմունիստներով։ Այդ մասին են վկայում փաստերն ու թվական տվյալները։ Ախուրյանի շրջանային կուսկազմակերպության վերջին՝ XXV կոնֆերանսում ընտրված շրջկոմի անդամների, թեկնածուների և վերստուգիչ հանձնաժողովի 99 անդամից 50-ն ունեն 20—40, 35-ը՝ 8—20, իսկ 14-ը՝ մինչև 8 տարվա կուսակցական ստաժ։ Շրջկոմի անդամներից 61-ը ունեն բարձրագույն և թերի բարձրագույն, 22-ը՝ միջնակարգ և միայն 16-ը՝ թերի միջնակարգ կրթություն։ Նրանցից շատերը սովորում են հեռակա միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատություններում, իսկ ոմանք էլ ասպիրանտուրաներում։

Դրա հետ միասին, շրջկոմի անդամների ճնշող մեծամասնությունը կազմում են հարուստ կենսափորձ և քաղաքական լայն մտահորիզոն ունեցող մարդիկ, որոնք օժտված են կազմակերպական ունակություններով, անսահմանորեն նվիրված են կուսակցության գործին, հեղինակավոր կոմունիստներ են։ Շրջկոմի անդամների թվում կան կոլտնտեսությունների 38, կուսակցական և սովետական կազմակերպությունների 27 ղեկավարներ, 25 բանվոր ու կոլտնտեսական։

Ախուրյանը գյուղական շրջան է, նրա էկոնոմիկան հիմնականում կազմում է գյուղատնտեսությունը։ Այդ երևույթը համապատասխան արտացոլում է գտել նաև շրջկոմի անդամների կազմում. շրջկոմի անդամներից 54-ը գյուղատնտեսության աշխատողներ են, այդ թվում 30-ը գյուղատնտեսության մաս-

նագետներ։ Շրջկոմի 29 անդամներ ունեն կուսակցական աշխատանքի երկարամյա փորձ, սիրում են կուսակցական աշխատանքը, տիրապետում այդ դժվարին արվեստին։ Բավական է ասել, որ նրանցից 24-ը սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարներ են։

Ունենալով այդպիսի կազմ, շրջկոմը կարողանում է ժամանակին իմանալ աշխատավորությանը հուզող հարցերը, ճիշտ որոշել կուսկազմակերպությունների հերթական անելիքները, պատշաճ ղեկավարություն և ուղղություն ցույց տալ շրջանի տնտեսություններին, հիմնարկություններին, կուսակցական և արհմիութենական կազմակերպություններին։

Պետք է ասել, որ շրջկոմի գրեթե բոլոր անդամները լավ են արդարացնում մասսաների վստահությունը։ Հանձին նրանց, շրջանի կոմունիստները, բոլոր աշխատավորները տեսնում են ազնիվ, գործիմաց, կյանքում և աշխատանքում օրինակելի մարդկանց, որոնք համեստ են և մարդամոտ, պահանջկոտ իրենց և շրջապատի նկատմամբ։

Հնարավոր չէ և հարկ էլ չկա, որպեսզի մենք այս հոդվածում մեկ առ մեկ նկարագրենք շրջկոմի բոլոր անդամների գործունեությունը։ Սակայն շատ անհրաժեշտ է, փորձի փոխանակման կարգով, համառոտակի պատմել նրանցից մի քանիսի պրակտիկ աշխատանքի մասին։

...ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի ակտիվ ու գործունյա անդամներից է սոցիալիստական աշխատանքի հերոս Ք. Ա. Քերոբյանը։ Նա ապրում է հայրենի Հայկավան գյուղում, հմուտ մեխանիզատոր է, շուրջ 26 տարի է, ինչ աշխատում է սիրած մասնագիտությամբ։ 1967 թվականին Քերոբյանը ՍԿ—4 մարկայի կոմբայնով 13 աշխատանքային օրում հավաքել է 270 հեկտարի բերք և կոլտնտեսության պահեստն ուղարկել 6.500 ցենտներ հացահատիկ։

Միայն այս տարի Ք. Քերոբյանը անձամբ մասնակցել է շրջկոմի բյուրոյում քննարկված 4 հարցի նախապատրաստմանը և այդ հանձնարարությունները կատարելիս իրեն դրսևորել որպես գործունյա, սկզբունքային, օբյեկտիվ և թերությունները չհանդուրժող կոմունիստ։

Հայկավանի մեխանիզատորների ջոկատը ընթացիկ տարում Ք. Քերոբյանի անմիջական ղեկավարությամբ կուտակել է 2,5 տարվա կեր։

Կոմունիստ Ք. Քերոբյանը կոլտնտեսության երիտասարդ մեխանիզատորների զգայուն ընկերն ու հոգատար ուսուցիչն է։ Նա որպես հմուտ մասնագետ և լավ մարդ, մեծ հեղինակություն է վայելում ոչ միայն հայրենի գյուղի, այլև ամբողջ շրջանի մեխանիզատորների շրջանում։ Նրան լավ ճանաչում, բազմապիսի խորհուրդներով դիմում են շրջանի շատ մեխանիզատորներ, և նա ամենքին էլ հնարավոր օգնություն է ցույց տալիս։

Կուսշրջկոմի ակտիվ ու գործունյա անդամներից է Մարմաշեն գյուղի կոլտնտեսության նախագահ, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ և նախագահության անդամ Մ. Ա. Համբարյանը։ Մարմաշենի կոլտնտեսությունը ընկ. Համբարյանի ղեկավարությամբ վերջին տարիներին կազմակերպչորեն և տնտեսապես զգալիորեն ամրապնդվել է. լավ է կազմակերպված աշխատանքը, կոլտնտեսությունը տարեցտարի հաջողությամբ կատարում ու գերակատարում է արտադրական պլաններն ու պետական առաջադրանքները, լուրջ հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, դաշտերի բերքատվության և հանրային անասունների մթերատվության բարձրացման գործում։ Օրինակ, հոբելյանական տարում Մարմաշենի կոլտնտեսությունը հեկտարից ստացավ 26 ց հացահատիկ, 348 ց շաքարի



ճակնդեղ և 60 ց բազմամյա խոտ, մեկ ֆուրաժային կովից կթեց 2400 կգ կաթ, պետությանը գյուղատնտեսական մթերքների վաճառքի առաջադրանքները կատարեց 150—200 տոկոսով։

Մարմաշենի կոլտնտեսությունն անցած 4—5 տարում վիթխարի շինարարական աշխատանք է կատարել. հիմնովին վերափոխվել է գյուղի տեսքը, կոլտնտեսականների ապրելակերպը։ Այժմ Մարմաշենն ունի տուֆակերտ հոյակապ ակումբ, մանկապարտեզ, որոնք կառուցվել են կոլտնտեսության միջոցներով։ Մարմաշենցիները հպարտ են, որ այս մեծ հաջողությունների համար 1967 թ. իրենց կոլտնտեսությունը պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԽ-ի հոբելյանական հուշադրոշով։

Մ. Ա. Համբարյանը պատասխանատվության բարձր զգացումով է վերաբերվում շրջկոմի անդամի իր պարտականությունների կատարմանը։ Նա ակտիվ մասնակցում է շրջանային կուսկազմակերպության կյանքին, հետաքրքրական ելույթներով հանդես է գալիս շրջկոմի բյուրոյի նիստերում և պլենումներում, շրջանային կուսակտիվի և իրենց կոլտնտեսության կուսկազմակերպության ժողովներում, օգնում քննարկվող հարցերի վերաբերյալ առավել ճիշտ և նպատակասլաց որոշումների ընդունմանը։

Որպես հմուտ տնտեսավար, Մ. Ա. Համբարյանը շրջկոմի հանձնարարությամբ պարբերաբար լինում է նաև շրջանի առանձին կոլտնտեսություններում, պրակտիկ օգնություն ցույց տալիս նրանց տնտեսական և կուսակցական ղեկավարներին։ Շրջկոմի անդամի հեղինակավոր խորհուրդներով և նրա ղեկավարած կոլտնտեսության առաջավոր փորձի օրինակով Վահրամաբերդի, Հովոնիի, Մայիսյանի և Ախուրյանի տնտեսություններն այժմ գարու և կորնգանի բերքահավաքից հետո նույն հողամասերում ցանում են եգիպտացորեն և լրացուցիչ կեր ստանում հանրային անասունների համար։

Կուսշրջկոմի անդամի իր պարտականությունները բարձր պատասխանատվությամբ է կատարում նաև շրջսովետի գործկոմի ժողովրդական կրթության բաժնի վարիչ, հանրապետության վաստակավոր ուսուցիչ Ն. Ռ. Կարապետյանը, որը նույնպես ունի կազմակերպական ունակություններ և սկզբունքային, գործիմաց, իր մասնագիտությամբ ապրող մտավորական է։ Բավական է հիշատակել, որ շրջժողկրթբաժնի գործադրած ջանքերի շնորհիվ վերջին 3—4 տարում դպրոցական շենքերի նորոգումը հիմնականում կատարվել է աշակերտների և ուսուցիչների ուժերով, իսկ տնտեսված ավելի քան 250 հազար ռուբլով կառուցվել է մոտ 170 լրացուցիչ դասասենյակ, 20 դպրոցում անցկացվել է կենտրոնական ջեռուցում։ Շնորհիվ այս ամենի, շրջանի 33 դպրոցից 25-ում արդեն պարապմունքներն ընթանում են մեկ հերթով, շրջանում հիմնականում հաջողությամբ է կենսագործվում պարտադիր ուսուցման օրենքը, լավ հիմքերի վրա է դրված երեխաների գեղագիտական դաստիարակությունը. 3500 աշակերտ ընդգրկված են գեղարվեստական ինքնագործունեության զանազան խմբակներում։ Նիկոլայ Ռուբենին արժանավոր հեղինակություն է վայելում ոչ միայն ուսուցիչների, այլև ամբողջ ինտելիգենցիայի շրջանում, նա սերտորեն կապված է դպրոցական կուսակցական կազմակերպությունների հետ, բազմաթիվ ձևերով օգնում է ուսուցչական կոլեկտիվներին՝ ճիշտ լուծելու մատաղ սերնդի ուսուցման ու դաստիարակության դժվարագույն պրոբլեմները։

Ն. Ռ. Կարապետյանը ակտիվորեն մասնակցում է շրջկոմի բյուրոյում, պլենումներում քննարկվող հարցերի նախապատրաստմանը, դիմում-բողոքների քննարկմանը։ Միայն ընթացիկ տարում նա մասնակցել է բյուրոյի 5 և պլե-

նումների 2 հարցերի նախապատրաստմանն ու քննարկմանը, շրջկոմի քարտուղարների հանձնարարությամբ անձամբ տեղերում բարեխղճորեն ուսումնասիրել և ստուգել է 15 դիմում-բողոք, 8 կազմակերպությունում մասնակցել է ժողովներին և այս ամենի մասին ինֆորմացիա տվել շրջկոմի ղեկավարությանը։

Հանդիսանալով ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներից մեկը, Ն. Կարապետյանը շրջկոմի ղեկավարությանը օգնություն է ցույց տալիս հատկապես գաղափարական-դաստիարակչական աշխատանքի բնագավառում. մանկավարժության ժողովրդական համալսարանի ռեկտորն է, շրջկոմի դասախոսական խմբի անդամ, «Գիտելիք» ընկերության շրջանային վարչության նախագահի տեղակալը։

Կատարելով շրջանային կուսկոնֆերանսի պատգամավորների ցանկությունների ու առաջարկությունները, մենք գործն այնպես ենք կազմակերպում, որպեսզի շրջկոմի բոլոր անդամները մասնակցեն կուսակցական-հասարակական աշխատանքներին։ Հաշվի առնելով յուրաքանչյուրի կարողությունները, նրանց պարբերաբար տալիս ենք միանվագ հանձնարարություններ, մասնակից անում շրջկոմի բյուրոյի նիստերում, պլենումներում քննարկվող հարցերի նախապատրաստմանը, որոշումների կատարման ստուգումներին, շրջկոմի գործունեության վերաբերյալ հաշվետվություններին և այլն։ Շրջկոմի այն անդամները, որոնք իրենց կուսակցական աշխատանքի փորձով և կրթությամբ ինքնուրույն ստուգումներ չեն կարող կատարել, նրանք հանձնարարությունները կատարում են ապարատի աշխատողների կամ կուսշրջկոմի առավել պատրաստված անդամների հետ համատեղ։ Շրջկոմի պլենումում այս տարի քննարկված երկու հարցի՝ հասկավոր կուլտուրաների բերքահավաքի անցկացումն ու կուսկազմակերպությունների խնդիրները և շրջանային կոմիտեի որոշումների կատարման ընթացքի մասին հարցերի նախապատրաստմանը մասնակցել են շրջկոմի 37 անդամ։

Կուսակցական-կազմակերպական աշխատանքի աշխուժացման գործում մեծ դեր են կատարում շրջկոմի այն անդամները, որոնք ընդգրկված են մշտական գործող կուսակցական հանձնաժողովներում և շրջկոմի արտահաստիքային բաժիններում։ Այսպես, կուսշարքերի ընդունելության և կոմունիստների անձնական գործերն ուսումնասիրող հանձնաժողովն ամենայն բարեխղճությամբ գլխավորում է հին կոմունիստ Գ. Ա. Մակարյանը։ Այդ հանձնաժողովը կուսշարքերի ընդունելության և կոմունիստների անձնական գործերը խնամքով է պատրաստում և ներկայացնում շրջկոմի բյուրոյի քննարկմանը։ Հանձնաժողովի անդամների ուժերով Առափիի, Շիրակի, Բայանդուրի, Ախուրյանի, Մայիսյանի, Ախուրիկի և ուրիշ գյուղերի սկզբնական կուսակցական կազմակերպություններում ուսումնասիրվել են կուսշարքերի աճի, արտադրության մեջ կոմունիստների ուժերի տեղաբաշխման, կոմունիստների կողմից ՍՄԿԿ Կանոնադրության պահանջների կատարման վիճակը և կոնկրետ առաջարկություններ ներկայացրել շրջկոմին՝ թերությունները վերացնելու համար։

Շրջկոմի գաղափարական հանձնաժողովը հաջողությամբ գլխավորում է շրջկոմի անդամ Ա. Ռ. Կաթունյանը (շրջկենտրոնի միջնակարգ դպրոցի դիրեկտոր)։ Շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հանձնարարությամբ գաղափարական հանձնաժողովն այս տարի հանգամանորեն ուսումնասիրել է հասարակագիտության ու պատմության դասավանդման, ուսուցիչների ինքնակրթության և քաղաքական ուսուցման դրվածքը մի քանի դպրոցներում։ Ստուգման պրոցեսում հանձնաժողովի անդամները զգալի օգնություն են ցույց



տվել դպրոցական կուսկազմակերպություններին՝ ուժեղացնելու դաստիարակչական աշխատանքն ուսուցիչների և աշակերտների շրջանում։

Շրջկոմի արդյունաբերության և տրանսպորտի արտահաստիքային բաժինը ղեկավարում է շնորհալի ինժեներ, շրջկոմի անդամ Ա. Մ. Վարդանյանը։

Բացի այս ամենից, շրջկոմի շատ անդամներ մասնակցում են նաև աշխատավորության շրջանում տարվող գաղափարական-քաղաքական աշխատանքներին, պրոպագանդում կուսակցության և կառավարության որոշումները, մասնակցում են ընթացիկ քաղաքական հարցերի լուսաբանմանը։ Բավական է հիշատակել, որ կուսշրջկոմի անդամներից 50-ը «Գիտելիք» ընկերության անդամ են, 22-ը՝ շրջկոմի դասախոսական խմբի անդամ, 19-ը՝ քաղաքական ուսուցման սիստեմի պրոպագանդիստ և այլն։

Փորձը ցույց է տալիս, որ շրջկոմի անդամների ակտիվությունը կախված է նրանից, թե շրջկոմի բյուրոն և քարտուղարները որքանով են նրանց իրազեկ պահում շրջանային կոմիտեի գործերին, ներգրավում կուսակցական աշխատանքի մեջ։ Դա վերաբերում է առաջին հերթին այն ընկերներին, որոնք շրջկենտրոնում չեն ապրում։ Շրջկոմի քարտուղարը կամ բյուրոյի անդամը ներկայանալով կոլտնտեսություն, սովխոզ, կամ գյուղական դպրոց, տեղում անպայման հանդիպում և զրուցում է շրջկոմի անդամի հետ, գործում նրա մասնակցությամբ, հաշվի է առնում նրա կարծիքը։ Դա ինքնին բարձրացնում է շրջկոմի անդամի հեղինակությունը և պատասխանատվությունը։ Բացի այդ, շրջկոմի անդամների հետ գործնական կապ են պահպանում շրջկոմի բաժինները, որոնք նրանց օգնությամբ պարզում են իրենց հետաքրքրող հարցերը։

Մենք շրջկոմի անդամներին համարում ենք պատրաստի կադրերի ռեզերվ։ Չէ՞ որ աշխատանքի պրոցեսում մենք ավելի ենք ծանոթանում դրանցից յուրաքանչյուրի քաղաքական ու գործնական հատկանիշներին։ Կուսակցական շինարարության հարցերին ծանոթացնելու նպատակով նրանց համար անցկացնում ենք սեմինար պարապմունքներ, հրահանգավորումներ և այլն։

ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումները մեծապես նպաստեցին ներկուսակցական դեմոկրատիայի հետագա զարգացմանն ու ծավալմանը, կոլեգիալ ղեկավարության սկզբունքի է՛լ ավելի արմատավորմանը։ Առաջնորդվելով համագումարի հստակ ցուցումներով, Ախուրյանի շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները զգալիորեն բարձրացրին կուսակցական-քաղաքական, ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքի մակարդակը, բարելավեցին տնտեսության ղեկավարման գործը։

Սակայն մենք չենք սահմանափակվել ձեռք բերածով։ ՍՄԿԿ Կենտկոմի վերջերս կայացած հոկտեմբերյան պլենումը նոր, ավելի պատասխանատու խնդիրներ դրեց գյուղական կուսկազմակերպությունների առջև։

Մեծ նշանակություն տալով գյուղատնտեսության աշխատողների շրջանում կուսակցական և մասսայական-քաղաքական աշխատանքի մակարդակի հետագա բարձրացմանը, պլենումի որոշման մեջ ասված է. «Անհրաժեշտ համարել ըստ ամենայնի կատարելագործել սոցիալիստական մրցության ձևերն ու մեթոդները, պայքար ծավալել աշխատանքի արտադրողականության բարձրացման, խնայողության ռեժիմի համար, բոլոր ռեզերվները լրիվ օգտագործելու, պետական ու կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականությունն ամրապնդելու, աշխատանքի սոցիալիստական բարձր կարգապահության համար»։

# ԿԻՐԱՌԵՆՔ ԲԵԼՈՌՈՒՍԻԱՅԻ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՓՈՐՁԸ

ՄԵՀՐԱԲՅԱՆ Գ. Ս.

ՀԿԿ Կենտկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի վարիչի տեղակալ

*Եղբայրական Բելոռուսիայի կուսակցական կազմակերպությունները բավականին արժեքավոր փորձ են կուտակել արդյունաբերության հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործումը բարելավելու համար բանվորներին, ինժեներա-տեխնիկական անձնակազմին ու մյուս աշխատողներին մոբիլիզացնելու և նրանց ստեղծագործական նախաձեռնությունը զարգացնելու ուղղությամբ։ Այդ փորձն ուսումնասիրելու և մեր հանրապետությունում լայնորեն տարածելու նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի արդյունաբերության և տրանսպորտի բաժնի աշխատողներից վերջերս մեկնեցին Մինսկ։ Լինելով ԲՍՍՀ արդյունաբերական մի շարք ձեռնարկություններում, ծանոթանալով կուսակցական կազմակերպությունների, շրջկոմների, քաղկոմների, մարզկոմների և Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի աշխատանքներին, մենք պարզ պատկերացում կազմեցինք, թե ինչպես տարիներ շարունակ նրանք սիստեմատիկաբար ու լրջորեն զբաղվում են հիմնական արտադրաֆոնդերի և կապիտալ ներդրումների օգտագործման բարելավմամբ, որը հրաշալի արդյունք է տալիս։*

*Համառոտակի պատմենք մեր տպավորությունների մասին։*

*Բելոռուսական ՍՍՀ-ն Սովետական Միության ծաղկուն հանրապետություններից մեկն է, որն ունի լավ զարգացած արդյունաբերություն, հարուստ է հումքային ռեսուրսներով։ Այնտեղ արդյունաբերական և բնակարանային լայն շինարարություն է ծավալված, նրա ձեռնարկություններում և կառույցներում աշխատում են մոտ մեկ միլիոն մարդ։*

*Հանրապետության կուսակցական կազմակերպությունները, մշտապես կատարելագործելով արդյունաբերության և շինարարության ղեկավարման ձևերն ու մեթոդները, խորամուխ լինելով արտադրության, արդյունաբերության և շինարարության էկոնոմիկայի մեջ, սկսել են, ինչպես հարկն է, զբաղվել հիմնական արտադրաֆոնդերի և կապիտալ ներդրումների օգտագործման բարելավմամբ։*

*Այստեղ մեծ ուշադրություն է նվիրվում մարդկանց շրջանում տարվող աշխատանքին, նրանց ստեղծագործական ակտիվության բարձրացմանը, նորարարների և առաջավոր կոլեկտիվների արժեքավոր նախաձեռնությունների*



*տարածմանը։ Լայն ճանաչում են գտել Մինսկի ավտոմոբիլային գործարանի, Նուրբ մահուդի, շինանյութերի, Սոլիգորսկու կալիումի կոմբինատների կոլեկտիվների արժեքավոր նախաձեռնությունները։ Մշակելով և իրականացնելով մի շարք միջոցառումներ, նրանք պարտավորվել են բարձրացնել արտադրության արդյունավետությունը և ընդլայնել ֆոնդահատույցը։ Մի քանի խոսք նրանց պարտավորությունների մասին։*

*Մինսկի ավտոգործարանի բանվորները, ինժեներա-տեխնիկական աշխատողներն ու ծառայողները պարտավորվել են թողարկվող մոդիֆիկացված ավտոմեքենաների նախագծային կարողությունների ավելացման գործում ձեռք բերված նվաճումների հիման վրա բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, մեքենայացնել արտադրության աշխատատար պրոցեսները, լավ օգտագործել սարքավորումները, լայնորեն ներդնել առաջավոր տեխնոլոգիան և աշխատանքի գիտական կազմակերպումը, բարձրացնել բանվորների որակավորումը և դրանց միջոցով հնգամյակի ընթացքում մեկ ռուբլու արտադրաֆոնդերի դիմաց արտադրվող արտադրանքի թողարկումն ավելացնել 28 տոկոսով. 1970 թ. յուրաքանչյուր մեկ ռուբլու հիմնական ֆոնդերի դիմաց ստանալ 3,2 ռուբլի, 1965 թ. 2,5 ռուբլու փոխարեն։*

*Սոլիգորսկու կոմբինատի քիմիագործները որոշել են հանքավայրերի մշակման առավել առաջավոր սիստեմների ներդրման, ռեագենտների (հակազդակների) ծախսերի կրճատման, լեռնահանքերի սարքավորումների ավելի արդյունավետ օգտագործման հաշվին 1966—70 թթ. ֆոնդահատույցն ավելացնել 10 տոկոսով։*

*Մինսկի Նուրբ մահուդի կոմբինատի կոլեկտիվը պարտավորվել է մանող և գործող արտադրություններում սարքավորումների օգտագործման արդյունավետության գործակցի բարձրացմամբ, հարահոս գծերի ներդրմամբ, աշխատատար պրոցեսների մեքենայացմամբ, կոմբինատի հետագա մասնագիտացմամբ, ներֆաբրիկային տնտհաշվարկի կատարելագործմամբ հնգամյակի ընթացքում ֆոնդահատույցն ավելացնել 12,5 տոկոսով։*

*Շինարարքների կոմբինատի աշխատողները պարտավորվել են սարքավորումների մոդեռնացման, շինվածքները թրծող վառարանների վերակառուցման, թունելային վառարաններում յուրաքանչյուր խորանարդ մետրից ստացվող աղյուսի ավելացման, աշխատանքի արտադրողականության աճի հաշվին 1970 թ. յուրաքանչյուր մեկ ռուբլու արտադրաֆոնդի դիմաց արտադրանքի թողարկումն ավելացնել 11 տոկոսով։*

*Այդ ձեռնարկությունների կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները կոլեկտիվների ջանքերն ուղղում են վերցված պարտավորությունների անշեղ կատարմանը։ Ձեռնարկությունները ակտիվացրել են կոնստրուկտորական և տնտեսական վերլուծման հասարակական բյուրոների գործունեությունը։ Սիստեմատիկաբար անց են կացվում արտադրական խորհրդակցություններ, տեխնիկական կոնֆերանսներ, արտադրական ռեզերվների ստուգատեսներ, ամփոփում բրիգադաների, տեղամասերի, արտադրամասերի սոցիալիստական մրցության արդյունքները և ապահովում նրա հրապարակայնությունը։*

*Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմը հավանություն է տվել հիշյալ ձեռնարկությունների նախաձեռնությանը։ Մինիստրություններին և գերատեսչություններին, կուսակցության մարզկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին*

հանձնարարվել է ամեն կերպ պաշտպանել ու տարածել այդ ձեռնարկությունների նախաձեռնությունը— յուրաքանչյուր ռուբլու հիմնական ֆոնդերի դիմաց արտադրվող արտադրանքի թողարկման ավելացման նպատակով կազմակերպված մրցությունը։ Այս շարժումը նախաձեռնողների աշխատանքի մասին կարելի է գաղափար կազմել հետևյալ աղյուսակից.

### Մեկ ռուբլու հիմնական արտադրաֆոնդի դիմաց համախառն արտադրանքի թողարկումը 1965—67 թթ.

| Ձեռնարկությունը | Ֆոնդահատույցը (ռուբլիներով) | |
|---|---|---|
| | 1965 թ. | 1967 թ. |
| Մինսկի ավտոգործարան | 2,51 | 3,11 |
| Սոլիգորսկու կալիումի կոմբինատ | 0,20 | 0,24 |
| Մինսկի նուրբ մահուդի կոմբինատ | 9,82 | 10,25 |
| Շինանյութերի կոմբինատ | 0,83 | 0,91 |

ԲՍՍՀ պետպլանը, մինիստրությունները, գերատեսչությունները, ուսումնասիրելով հանրապետության յուրաքանչյուր ձեռնարկության հիմնական ֆոնդերի օգտագործման վիճակը, միջոցներ մշակեցին արտադրական կարողություններն ու սարքավորումները լրիվ օգտագործելու և հինը նոր, առավել արտադրականով փոխարինելու համար։ Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները հումքի և նյութերի լրիվին օգտագործման հաշվին այս տարի լրացուցիչ կարտադրեն ավելի քան 100 մլն ռուբլու ժողովրդական սպառման տարբեր ապրանքներ։ Գործող կարողությունների ռացիոնալ օգտագործման միջոցով արտադրանքի թողարկումը 1968 թ. կավելանա 15 տոկոսով։ Դրանով իսկ կապահովվի ֆոնդահատույցի աճը։

Նկատի առնելով պլանավորման նոր սիստեմի և նյութական խթանման շնորհիվ ստեղծված նպաստավոր պայմանները և աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման համար գոյություն ունեցող ռեզերվները, հանրապետությունում միջոցառումներ են մշակվել 1966—70 թթ. հանրապետության Մինիստրների սովետին ենթակա արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը, հնգամյա պլանով նախատեսված 33 տոկոսի դիմաց, բարձրացնել 43 տոկոսով։ Այս միջոցառումները ևս քննարկվել ու հավանության են արժանացել Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի և Մինիստրների սովետի կողմից։ Ներկայումս կուսակցական և տնտեսական օրգանները կազմակերպական մեծ աշխատանքներ են ծավալել դրանց կատարման համար։

Կուսակցական կոմիտեները ուժեղացնելով վերահսկողությունը նախագծային, կոնստրուկտորական ու գիտահետազոտական կազմակերպությունների գործունեության վրա, բարձրացնում են նրանց պատասխանատվությունը տեխնիկական հանձնարարականների, արտադրության մեջ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի ներդրման համար, որոնք ֆոնդագինվածության աճն ապահովելու հետ մեկտեղ նպաստում են աշխատանքի արտադրողականության գերազանց աճին և ֆոնդահատույցի ավելացմանը։

Հիշատակության արժանի է Բելոռուսիայի մայրաքաղաքի կուսակցական և տնտեսական ակտիվի ուսուցման կազմակերպման փորձը։

Այստեղ ծանոթացանք կադրերի տնտեսագիտական կրթության վերա-



բերյալ Մինսկի կուսակցական կազմակերպության մշակած, լավ մտածված ու արդյունավետ ծրագրին։ Տվյալ ծրագրով անցկացված ուսուցումը դրական դեր է խաղացել ձեռնարկությունների աշխատանքի որակական ցուցանիշների բարելավման գործում։ Մի քանի խոսք այդ մասին։

Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի պլենումներից մեկում քննարկվել է ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի որոշումների կատարման արդյունքները և ընդունվել համապատասխան որոշում։

Ամենքը, անտարակույս, գիտեն, որ յուրաքանչյուր ձեռնարկության աշխատանքի հիմնական ցուցանիշները պայմանավորված են նաև կոլեկտիվի տնտեսագիտական կարողություններով։ Որքան կայուն, մեծ են դրանք, այնքան գործերը լավ են ընթանում, և ահա տնտեսական գիտելիքների բարձրացման նպատակով Մինսկի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունների բազայի վրա կուսակցական ու տնտեսական ակտիվի համար կազմակերպվել են հասարակական հիմունքներով գործող տնտեսագիտական դասընթացներ։ Դասընթացների աշխատանքները վերահսկելու և մեթոդական ցուցումներ տալու նպատակով ստեղծվել են բարձրագույն տնտեսագիտական դասընթացների խորհուրդ և ֆակուլտետների խորհուրդներ։

Բելոռուսիայի կոմկուսի Մինսկի մարզկոմը հավանություն է տվել քաղաքի բազային ուսումնական հաստատությունների նախաձեռնությանը (ԲՍՍՀ մինիստրությունների և գերատեսչությունների հետ մեկտեղ)՝ դասընթացները մանկավարժական կադրերով, դիտողական պիտույքներով և ուսումնական անհրաժեշտ փաստաթղթերով ապահովելու գործում նրանց ցույց տված օգնության համար։ Կան հետևյալ ֆակուլտետները. մեքենաշինության, ռադիոէլեկտրոնիկայի, անտառտնտեսության, մանածագործական, սննդի, տեղական արդյունաբերության, շինարարության, կապի, էներգետիկայի, արդյունաբերական շինանյութերի ու կենցաղի։ Յուրաքանչյուր ֆակուլտետ ունի իր ուսումնական ծրագիրը։ Օրինակ, մեքենաշինության ֆակուլտետի թեմատիկ պլանում թեմաները այսպես են բաժանված. պլանավորման կազմակերպմանը և ձեռնարկության էկոնոմիկային հատկացված է 50 ժամ, ձեռնարկության կառավարման կազմակերպմանը՝ 28, ձեռնարկության ֆինանսներին՝ 24, ձեռնարկության գործունեության հաշվառքին ու վերլուծությանը՝ 18 ժամ։ Ծրագրի 120 ժամից 76-ը հատկացված է սեմինար պարապմունքներին։ Պարապմունքները տեղի են ունենում ամիսը մեկ անգամ՝ վեցական ժամ։ Բացի այդ, անց են կացվում ամփոփող պարապմունքներ և քննություններ։ Դասընթացները վարում են ժողովրդական տնտեսության ինստիտուտի դասախոսները, Մինսկի տնտեսագիտական բուհերի ամբիոնների պրոֆեսորա-դասախոսական կազմը՝ ԲՍՍՀ գիտությունների ակադեմիայի ինստիտուտների և գիտահետազոտական այլ ինստիտուտների գիտաշխատողներ, մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների մասնագետներ։

Բելոռուսիայի կոմկուսի քաղաքային, շրջանային կոմիտեները, ձեռնարկությունների ղեկավարներն ու կուսակցական կազմակերպությունների քարտուղարներն արտադրամասերի և բաժինների պետերի, նրանց տեղակալների, տնտեսագետների, պլանավիկների, կոնստրուկտորների, տեխնոլոգների և այլ աշխատողների համար տեղերում կազմակերպում են տնտեսագիտական դիֆերենցված ուսուցում, որտեղ մեծ ուշադրություն է նվիրվում տնտեսական գիտելիքների յուրացմանը, որոնք անհրաժեշտ են նոր պայմաններում աշ-

խատելու համար։ Այսպես. Օրջոնիկիձեի անվան մեխանիկական գործարանի թեմատիկ պլանով նախատեսված է պարապմունքներն անցկացնել 70 ժամ, որից 38-ը հատկացված է սեմինարներին։ Պլանում նշված են հետևյալ թեմաները. ղեկավարման տնտեսագիտական մեթոդները, տնտեսական հաշվարկի հիման վրա ձեռնարկության տնտեսական ինքնագործունեության ընդլայնումը, աշխատանքի գիտական կազմակերպումը ձեռնարկությունում, գործարանի տնտեսական և պլանային աշխատանքներում հաշվարկային գործի առավել մեքենայացման ուղիները, խրախուսման ֆոնդերը և այլն։

Բանվորների տնտեսական գիտելիքների բարձրացման համար տեխնիկական մինիմումի ծրագրում ավելացվել է տնտեսագիտական թեմատիկան։ Բանվորների տնտեսագիտական ուսուցմանը հատկացված է 16 ժամ, պարապմունքների համար նախատեսված են հետևյալ թեմաները. նոր սիստեմը և պլանավորման տնտեսական խթանումը, նոր սիստեմը և ձեռնարկությունների իրավունքները, արտադրության կազմակերպման տարրերը, բանվորական տեղի նախապատրաստումը և այլն։

Ուսումնասիրելով կոնկրետ էկոնոմիկան, շատ բանվորներ հմտանում են խնայողության գործում, ձեռնհասություն հանդես բերում աշխատանքի կազմակերպման հարցերում։

Տնտեսագիտական ուսուցումը օգնում է յուրաքանչյուրին խորամուխ լինելու կուսակցության առաջադրած խնդիրների մեջ, առավել լավ պայքարելու արտադրության կատարելագործման, տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարձրացման համար։ Եվ իրոք, առանց էկոնոմիկայի հիմունքներին տիրապետելու անհնար է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, էժանացնել արտադրանքը, գտնել և գործադրել ներարտադրական ռեզերվները։ Մեր օրերում միայն նա կարող է մեծ հաջողության հասնել, ով կսովորի հմտորեն հաշվել րոպեները, խնայել մետաղի յուրաքանչյուր գրամը, պետական միջոցների ամեն կոպեկը։ Տնտեսագիտական ուսուցումը իրավացիորեն համարվում է աշխատանքի մարդու գաղափարական դաստիարակության կարևորագույն միջոցը։ Մարդկանց աշխատանքն ու դաստիարակությունը անբաժանելի են։ Նրանց գաղափարական համոզվածությունը՝ աշխատանքային և քաղաքական ակտիվության աղբյուրն է։

Մինսկի ձեռնարկությունների կուսակցական և արհմիութենական կազմակերպությունները հաճախակի են զրույցներ ու դասախոսություններ կազմակերպում տնտեսագիտական թեմաների շուրջ։ Կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեները արտադրության փորձի փոխանակման և մեթոդական օգնություն ցույց տալու համար դասախոսների ու սեմինարների ղեկավարների սեմինարներ են անցկացնում տնտեսագիտական հարցերի վերաբերյալ։

Ինչպես տեսնում ենք, կադրերի ուսուցումը տարվում է կոմպլեքսային ձևով և ոչ ոք դուրս չի մնում դրանից։ Տնտեսագիտական նպատակային ուսուցումը, ձեռք բերած գիտելիքների գործնական օգտագործումը, տնտեսագիտական մշտական վերլուծությունը դրական ազդեցություն են ունեցել հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական գործունեության վրա։

Արտադրական հիմնական ֆոնդերը մեր երկրի ազգային հարստությունն են։ Կոմունիստների, արտադրության բոլոր աշխատողների պարտքն է՝ անխոնջ պայքարել այդ հարստության բազմապատկման համար, այն խնամքով օգտագործել, առավել արդյունավետ ծառայեցնել ժողովրդի շահերին։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՍՈՎԽՈԶՆԵՐՈՒՄ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԱՐՁԱՏՐՈՒԹՅԱՆ ԱՌԹԻՎ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հոկտեմբերյան պլենումը մշակեց երկրի գյուղատնտեսության զարգացման նոր ծրագիր։ Պլենումն ընդգծեց, որ կուսակցական կազմակերպությունների, սովետական ու տնտեսական օրգանների կարևորագույն խնդիրն է՝ այսուհետև ևս անշեղորեն իրականացնել գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ կուսակցության քաղաքականությունը և XXIII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան ու մայիսյան պլենումների մշակած գործնական միջոցառումները։ Պլենումը առանձնահատուկ տեղ հատկացրեց տնտեսագիտական աշխատանքի հետագա բարելավմանը, աշխատանքի կազմակերպման ու վարձատրության սիստեմատիկ կատարելագործմանը, արտադրության մեջ աշխատանքի գիտական կազմակերպման արմատավորմանը, գյուղատնտեսական կադրերի որակի բարձրացմանը։ Պլենումի որոշումներն ամբողջությամբ վերցրած վերաբերում են նաև մեր հանրապետությանը։

Գյուղատնտեսական արտադրության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի անմիջական արտադրողների նյութական շահագրգռվածության բարձրացումը, աշխատանքի վարձատրության սիստեմատիկ կատարելագործումը։

Վերջին տարիներին հանրապետությունում զգալի աշխատանք է կատարվել սովխոզների բանվորների աշխատանքի վարձատրության բարելավման ուղղությամբ, բարձրացել է նրանց միջին աշխատավարձը։ Որպես լրացուցիչ վարձատրություն և պարգևատրություն Հայաստանի սովխոզների և գյուղատնտեսական պետական մյուս ձեռնարկությունների բանվորները 1967 թ. արդյունքների համար ստացան 3066 հազար ռուբլի, այն դեպքում, երբ այդ նպատակով 1966 թ. վճարվել էր 1525, իսկ 1964-ին՝ ընդամենը 280 հազար ռուբլի։

Վերջին երկու տարիներին սովխոզներում կիրառվում են լրացուցիչ վարձատրության և պարգևատրման նոր պայմաններ՝ տրակտորիստ-մեքենավարների, թունաքիմիկատների հետ առնչվող բանվորների, ավտովարորդների և այլ աշխատողների համար։ Աշխատավարձի մինիմումը 60 ռ. հասցնելու կապակցությամբ 1968 թ. սովխոզների և գյուղատնտեսական պետական մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների բանվորներին ու ծառայողներին լրացուցիչ վճարվեց մոտ 9 միլիոն ռուբլի։

Սակայն անհրաժեշտ է նշել, որ սովխոզներում աշխատանքի վարձատրության գործող սիստեմն ունի լուրջ թերություններ և սխալներ, որոնց վրա հարկ ենք համարում կանգ առնել։

Աշխատանքի վարձատրության գործող կարգի համաձայն, որպես լրա-

ցուցիչ վարձատրություն, բուսաբուծության մեջ զբաղված բանվորներին վճարվում է տարիֆային ֆոնդի 25, իսկ անասնաբուծության մեջ՝ 15 տոկոսը։ Արտադրանքի համար այդ կարգի լրացուցիչ վարձատրությունը վճարվում է նախօրոք սահմանված վարձաչափերի հիման վրա։ Լրացուցիչ վարձատրության պլանավորումը, հաշվարկումն ու վճարումը կատարվում է հետևյալ կերպ. տնտեսությունները տարվա սկզբին հաշվարկում են բանվորների լրացուցիչ վարձատրության վարձաչափերն ըստ բրիգադների, օղակների, իսկ անասնապահությունում՝ ըստ արտադրվող մթերքների. դրանք կիրառվում են վերադաս կազմակերպությունների կողմից հաստատվելուց հետո։ Վարձաչափերի հաշվարկման համար հիմք են հանդիսանում բրիգադին (օղակին) ամրացվող տարածությունը, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, գնման գները, պլանավորվող աշխատավարձի տարիֆային ֆոնդը։ Միայն աշխատավարձի տարիֆային ֆոնդի հաշվարկման ճշտությունը պայմանավորված է արտադրական նորմաների գիտականորեն հիմնավորվածությամբ, աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակով, ագրոտեխնիկական պրոցեսների քանակով, դրանց հաճախականությամբ, տարիֆային դրույքների ճիշտ կիրառմամբ և օժանդակ այլ աշխատանքներով։ Այսպիսով, արտադրանքի համար լրացուցիչ վարձատրության վարձաչափերի հաշվարկման հիմքում ընկած են վերոհիշյալ գործոնները, ինչպես և տնտեսությունների մասնագետների ունակությունները։

Պարզ է, որ այդպիսի չափազանց բարդ հաշվարկների կիրառման հետևանքով վարձաչափերը երբեմն լինում են չհիմնավորված և սխալ։ Բազմաթիվ են դեպքերը, երբ նույն բնակլիմայական պայմաններում գործող տնտեսություններում և նույնանման բերքատվության կուլտուրաներ ունեցող բրիգադներում միավոր արտադրանքի համար սահմանվում են միանգամայն տարբեր վարձաչափեր։ Այսպես, Կրասնոսելսկի շրջանի Բաշքենդի սովխոզում ծխախոտի 100 ռուբլի արտադրանքի վարձաչափը սահմանվել է 32, իսկ նույն շրջանի Ճամբարակի սովխոզում՝ 74 ռուբլի։ Այդ նշանակում է, որ նույն քանակությամբ ու որակի արտադրանք տալու դեպքում Ճամբարակի սովխոզի բանվորներն ավելի քան երկու անգամ շատ լրացուցիչ վարձատրություն կստանան, քան Բաշքենդինը։

Նույնանման երևույթներ կան Մարտունու շրջանի սովխոզների ծխախոտագործության, Գորիսի շրջանի դաշտավարության, Կալինինոյի շրջանի կարտոֆիլագործության, Աշտարակի և Հոկտեմբերյանի շրջանների խաղողագործության, Նոյեմբերյանի շրջանի պտղաբուծության մեջ և այլն։ Իսկ Իջևանի շրջանի մի շարք սովխոզներում վարձաչափերի մեջ մտցվել են նաև արձակուրդային գումարները։ Այդպիսի փաստեր են արձանագրվել նաև անասնաբուծության գրեթե բոլոր ճյուղերում։ Սահմանված կարգի համաձայն, նույն աշխատավարձն է վճարվում (1017 ռ.) Լոռվա տոհմաբուծարանի կթվորներին, որոնցից յուրաքանչյուրը տարվա ընթացքում կթում է ավելի քան 500 ցենտներ կաթ և Ղափանի շրջանի սովխոզների կթվորներին, որոնք կթում են 260 ցենտներ։ Պարզ է, որ վարձաչափերի սահմանման և աշխատանքի վարձատրության նման դրվածքը չի բխում միևնույն աշխատանքի համար նույն վարձատրության սոցիալիստական սկզբունքից և չի նպաստում բանվորների անձնական շահագրգռության բարձրացմանը, որն արտադրության բարձրացման գլխավոր նախապայմաններից է։

Աշխատանքի լրացուցիչ վարձատրության գործող կարգի թերությունները միայն թվարկվածով չեն սահմանափակվում։ Ինչպես հայտնի է, բուսաբուծության բնագավառում լրացուցիչ վարձատրությունը վճարվում է տարեվերջին, արտադրանքն ստանալուց հետո։ Այս դեպքում անհրաժեշտ է նախօրոք սահմանված վարձաչափերը բազմապատկել ստացված արտադրանքի արժեքով և ստանալ լրացուցիչ վարձատրություն։ Դրանից հանվում է տարվա ընթացքում բանվորներին տրված աշխատավարձը և տարբերությունը վճարվում է։ Այս դեպքում անհրաժեշտ է նկատի ունենալ նաև չնախատեսված, բայց կատարված աշխատանքների վրա ծախսված աշխատավարձը և այն, որ նախատեսվել է, բայց չի կատարվել։ Եթե նկատի ունենանք, որ միևնույն բրիգա-



դայում մշակվում են մի քանի տեսակ կուլտուրաներ և դրանցից յուրաքանչյուրի մշակման համար կատարվում է 30—50 աշխատանքային պրոցես, ապա նման վերջնահաշվարկը կապված է մեծ դժվարությունների հետ։

Լրացուցիչ վարձատրության սահմանման ու վճարման կարգը չափազանց բարդ է, որի հետևանքով տեղերում թույլ են տալիս բազմաթիվ սխալներ։ Այստեղ ամենագլխավորն այն է, որ լրացուցիչ վարձատրության այդ կարգը բանվորների համար հասկանալի չէ, նրանք չգիտեն, թե արտադրվող մթերքների համար որքան են ստանալու։

Այդ կարգի բարդություններից և դրա հետ կապված սխալներից խուսափելու նպատակով, բուսաբուծության մեջ աշխատող բանվորների համար մեր կողմից առաջարկվեց լրացուցիչ վարձատրության և պարգևատրման նոր կարգ։ Ըստ դրա, որպես լրացուցիչ վարձատրություն, առաջարկվում է բանվորներին վճարել պլանների կատարման 81 տոկոսից սկսած, յուրաքանչյուր տոկոսի համար տարվա ընթացքում փաստացի ստացած աշխատավարձի 1,25 տոկոսը։ Իսկ դա նշանակում է, որ բրիգադան (օղակը) մթերքների արտադրության պլանները 100 տոկոսով կատարելու դեպքում, բանվորները, որպես լրացուցիչ վարձատրություն, կստանան իրենց տարեկան փաստացի վաստակի 25 տոկոսը։ Պլանները գերակատարելիս համամասնաբար ավելանում է նաև լրացուցիչ վարձատրությունը։

Առաջարկված մեթոդի առավելությունը (գործողի նկատմամբ) այն է, որ այս դեպքում անհրաժեշտ չէ վարձաչափեր սահմանել, որովհետև լրացուցիչ վարձատրության վերջնահաշվարկը պարզ է ու հստակ։ Այնուհետև հնարավոր է ազատվել աշխատանքային ու աշխատավարձի ծախսումների հաշվառման բազմաթիվ գրանցումներից (ըստ առանձին բանվորական պրոցեսների)։ Բանվորները խրախուսվում են փաստացի արտադրանքի և արտադրանք տալու աշխատանքների համար։ Այստեղ անհրաժեշտ է նշել, որ հանրապետության բնաարտադրական պայմանները շատ հաճախ ստիպում են կատարել չնախատեսված բազմաթիվ աշխատանքներ։ Երբ լրացուցիչ վարձատրությունը վճարվում է բանվորների փաստացի վաստակից, ապա վերանում է նաև այդ բացը։

Անասնապահության մեջ տեղ գտած թերությունները վերացնելու նպատակով սովխոզներին և գյուղատնտեսական պետական մյուս ձեռնարկություններին հանձնարարված է կաթնատու տավարաբուծության մեջ վարձաչափերը սահմանել ավելի տևական ժամանակաշրջանի համար և ոչ թե ամեն տարի, ինչպես արվում էր մինչև այժմ։ Այդ կարգն անհրաժեշտ է տարածել նաև անասնապահության մյուս ճյուղերում, որի համար պետք է լրացուցիչ ուսումնասիրություններ կատարել և մշակել վարձատրության առավել շահագրգռիչ պայմաններ։ Մեր հանրապետության պայմաններում նպատակահարմար է տարիֆային դրույքի մի մասը վճարել անասունների խնամքի, մյուս մասը՝ արտադրվող մթերքների համար։

ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստրության միջնորդությամբ ՍՍՀՄ Մինիստրների սովետի աշխատանքի և աշխատավարձի պետական կոմիտեն որոշեց՝ ընթացիկ տարվանից լրացուցիչ վարձատրության առաջարկված կարգը փորձարկել մեր հանրապետության երեք սովխոզներում (Աշտարակի շրջանի Արայի, Էջմիածնի շրջանի Թաիրովի և Ալավերդու շրջանի Թումանյանի անվան)։ Նույն որոշումով նշված սովխոզներում փորձարկվում են նաև պարգևատրման վճարման և առանձին պրոցեսներ որակով ու ժամանակին կատարելու համար բանվորների խրախուսման նոր կարգ։

Տիպային կանոնադրության համաձայն, պարգևատրություն է վճարվում արտապլանային արտադրանքի արժեքի մինչև 20 տոկոսի չափով։ Տարբեր տնտեսություններ տարբեր չափով են նախատեսում ու վճարում պարգևատրությունը։ Այդ է պատճառը, որ պլանը հաճախ 5 և 50 տոկոսով գերակատարած բանվորներին պարգևատրությունը վճարվում է նույն չափով։ Պարգևատրման վճարման գործում համաչափություն և պարզություն ստեղծելու նպատակով առաջարկվում է մթերքների արտադրության գերակատարած յուրաքանչյուր տոկոսի համար վճարել տարվա ընթացքում բանվորների ստացած աշխատավարձի 0,75 տոկոսի չափով։

Արտադրության կազմակերպման գործում չափազանց կարևոր նշանակություն ունի առանձին պրոցեսների կատարման համար բանվորների լրացուցիչ վարձատրումը։ Այդպիսի անհրաժեշտությունը բխում է նաև մեր հանրապետության բնա-արտադրական բարդ պայմաններից, որոնց հետևանքով հարկ է լինում այս կամ այն պրոցեսը կատարել ժամանակից շուտ։

Գործող կարգի համաձայն, այդ պրոցեսների կատարման համար պետք է խրախուսել միայն բուսաբուծության մեջ զբաղվող բանվորներին 1, 1,5 ամսվա աշխատավարձի չափով։ Նման դեպքերում տնտեսության ղեկավարն իրավունք չունի խրախուսելու անասնապահության աշխատողներին։ Բացի դրանից, նա նախօրոք չգիտե, թե որքան գումարի սահմաններում կարող է խրախուսել առանձին պրոցեսների համար, քանի որ գումարի չափը չի նախատեսված արտֆին պլանում։

Փորձարկվող սովխոզներում դիրեկտորների տրամադրության տակ է դրվում տնտեսության տարեկան աշխատավարձի ֆոնդի 2 տոկոսը, որը տարվա ընթացքում պլանավորվում և մուծվում է արտադրական-ֆինանսական պլանի մեջ։ Արայի սովխոզում այգեթաղի աշխատանքները ետ էին մնում. մշակվեցին խրախուսման պայմաններ. նշված 2 տոկոսի հաշվին 25—30 տոկոսով բարձրացան առաջադրանքները որակով կատարող բանվորների օրվա վաստակը։

Աշխատանքի վարձատրության կատարելագործման փորձարկումները հաջողությամբ են ընթանում վերոհիշյալ սովխոզներում։ Կարևորն այն է, որ բանվորները, մասնագետներն ու ղեկավար աշխատողները գոհ են դրանից։ Կարծում ենք, որ առաջիկայում նույն ձևով կաշխատեն հանրապետության մի շարք սովխոզներ ևս։

Ինչպես ցույց են տվել ուսումնասիրությունները, Հայաստանում պտղատու այգիների նոսրությունը հասնում է 15—20, իսկ խաղողինը՝ 26,3 տոկոսի։ Դեռ ավելին, պտղաբուծության ինտենսիվ զարգացման գոտում խաղողի և պտղատու այգիների նոսրությունն ավելի բարձր է։ Այսպես, Հոկտեմբերյանի շրջանում հնդավոր այգիների նոսրությունը 20,3 տոկոս է, Արտաշատում՝ 33, Շահումյանում՝ 44,4, էջմիածնում՝ 18,1 տոկոս. կորիզավոր պտղատու այգիներինը Աբովյանում՝ 18,7, Արտաշատում՝ 29,5, Աշտարակում՝ 21,6, Հոկտեմբերյանում՝ 30,9 տոկոս։ Առավել վատթար է խաղողի այգիների վիճակը, որոնց նոսրությունը սովխոզներում կազմում է 27,2, կոլտնտեսություններում՝ 24,1 տոկոս։ Հաշվումները ցույց են տվել, որ հանրապետության տնտեսություններն այգիների նոսրության հետևանքով պակաս են ստանում 352 հազար ցենտներ խաղող, 84 հազար ցենտներ պտուղ, կամ ավելի քան 12 միլիոն ռուբլու եկամուտ։

Այգիների նոսրության տոկոսի բարձրացման հետ միասին ավելանում են աշխատանքային և նյութական անարտադրողական ծախսերը։ Այսպիսով, այգիների նոսրության վերացումը տնտեսական խոշոր նշանակություն ունի, որի համար բանվորների նյութական խրախուսման կոնկրետ պայմաններ մինչև վերջերս չէին մշակվել։ Այդ նպատակով մինիստրության պտղաբուծության ու խաղողագործության գլխավոր վարչության պետ Մ. Գ. Շահնազարյանի հետ միասին մշակեցինք բանվորների պարգևատրման հետևյալ պայմանները.

**Խաղողի այգիների լրացում**

| Լրացման տեսակը | Կպչողականության տոկոսը | Պարգևատրման տոկոսը բանվորի փաստացի վաստակի նկատմամբ |
|---|---|---|
| ա) անդալիսով | 80—90 | 25 |
| | 91-ից բարձր | 35 |
| բ) արմատակալով | 76—85 | 35 |
| | 86—90 | 40 |
| | 91-ից բարձր | 50 |



Պարգևատրում է վճարվում բանվորների այն աշխատավարձից, որը վաստակել են այգիների նոսրությունը վերացնելու և դրանց հետագա խնամքի համար։ Խրախուսման պայմաններում նախատեսվում է բրիգադավարներին պարգևատրել մեկ բանվորին ընկնող գումարի 150 տոկոսի չափով։ Բացի այդ, պարգևատրման կարգ է մշակված խաղողի և պտղատու այգիների հիմնման և դրանց հետագա խնամքի համար։

Խաղողի և պտղատու այգիների հիմնման և առաջին տարվա խնամքի համար նախատեսվում է՝

90 տոկոս կպչողականության դեպքում 2 ամսվա վաստակ<br>
91—94 » » » 2 » »<br>
95—100 » » » 3 » »

Հետագա տարիների խնամքի համար, մինչև բերքատու դառնալը 92 տոկոս կպչողականության դեպքում 1 ամսվա վաստակ.<br>
93—96 » » » » 2 » »<br>
97—100 » » » » 3 » »

Նախատեսվում է նշված պարգևատրումները վճարել տարեվերջին, մասնագիտական ակտեր կազմելուց և հաստատելուց հետո։ Բրիգադավարների պարգևատրման կարգը նույնն է։

Պարգևատրման այս կարգը հաստատվեց մինիստրության կոլեգիայի կողմից և տնտեսություններին առաջարկվեց այն կիրառել ընթացիկ տարվանից։ Անհրաժեշտ է նշել, որ սովխոզները մեծ գոհունակությամբ ընդունեցին այդ պայմանները։ Մնում է, որ մանրամասն հաշվառում տարվի յուրաքանչյուր բրիգադայում, օղակում, պարզվի նոսրության տոկոսը, կատարվող լրացումների տեսակն ու ծավալը, կազմվեն մասնագիտական ակտեր և բանվորների շրջանում լայն բացատրական աշխատանք ծավալեն։ Նպատակահարմար է խրախուսման նշված պայմանները կիրառել նաև կոլտնտեսություններում։ Անհրաժեշտ է նաև ճիշտ և առանց ձգձգումների, տարեվերջին բանվորներին վճարել պարգևատրման գումարները։ Սակայն վերջերս կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել, որ կոլեգիայի այդ որոշմանը (որը կայացել է ընթացիկ տարվա մարտ ամսին) Իջևանի, Աշտարակի, Հոկտեմբերյանի և մյուս շրջանների շատ տնտեսություններ դեռևս տեղյակ չեն։

Հանրապետության անասնաբուծության զարգացման համար կարևոր նշանակություն ունի անասունների տոհմային գործի արմատական բարելավումը, որում մեծ տեղ պետք է հատկացնել արհեստական սերմնավորման հարցերով զբաղվող մասնագետների և բանվորների նյութական խրախուսմանը։ Սակայն մինչև վերջերս այդ բանվորների վարձատրությունը կատարվում էր անկախ սպասարկվող անասունների գլխաքանակից, որի հետևանքով նրանց աշխատավարձը 60—72 ռ. էր (առանց խրախուսման որևէ պայմանի)։ Այդ բացը լրացնելու նպատակով մշակվեցին արհեստական սերմնավորման գործով զբաղվող բանվորների հիմնական ու լրացուցիչ վարձատրության և պարգևատրման պայմաններ, միաժամանակ սահմանելով սպասարկման նորմաներ։ Այդ պայմանների համաձայն 200—300 գլուխ պայմանական կովի առկայության դեպքում ամեն ամիս, որպես երաշխավորված վարձատրություն արհեստական սերմնավորման գործով զբաղվող բանվորներին վճարվում է 60, 300—400 գլխի դեպքում՝ 65, 400—600-ի՝ 70 ռուբլի, իսկ 600-ից ավելի պայմանական կովի դեպքում, յուրաքանչյուր 700 գլխի համար՝ մեկ հաստիք՝ ամսական 75 ռուբլի աշխատավարձով։ Այսպիսով, հիմնական վարձատրությունը պայմանավորված է անասուններին սպասարկվող գլխաքանակով։ Բացի դրանից, կովերից 85 և ոչխարներից 90 տոկոսով ծին ապահովելու դեպքում սերմնավորումն անցկացրած բանվորներին, որպես լրացուցիչ վարձատրություն, տարեվերջին յուրաքանչյուր կովի համար վճարվում է 45, իսկ մաքու համար՝ 9 կոպեկ։ Կովերից և ոչխարներից վերոհիշյալ չափերից ավելի ծին ապահովելիս բանվորներին, որպես պարգևատրում, վճարվում է նրանց տարեկան վաստակի 1—1,5 տոկոսը՝ ծնի պլանի գերակատարման յուրաքանչյուր տոկոսի համար։ Երբ տնտեսությունում արհեստական սերմնավորման գործով զբաղվող բանվորի հաստիք չի նախատեսվում և այդ գոր-

ծը հանձնարարվում է այլ մասնագետների, ապա յուրաքանչյուր կովի արհեստական սերմնավորման համար վճարվում է 2 ռ. 80 կ., իսկ մաքու համար՝ 56 կոպեկ։ Վերջիններիս վրա կարող է տարածվել նաև պարգևատրման սահմանված կարգը, որը կկիրառվի 1969 թ. հունվարից։

Ինչպես տեսնում ենք, հանրապետությունում որոշակի քայլեր են արվում սովխոզների աշխատողների վարձատրության կատարելագործման ուղղությամբ։ Սակայն դեռևս կան բազմաթիվ հարցեր, որոնց շուտափույթ լուծումն արտադրության բարձրացման մեծ խթան կարող է հանդիսանալ։ Ահա դրանցից մի քանիսը։

Նախ, անհրաժեշտ է վերանայել գյուղատնտեսական առանձին աշխատանքների տարիֆային կարգերը, ելնելով հանրապետության բնա-արտադրական կոնկրետ պայմաններից։ Սահմանված կարգի համաձայն այգեփորը, այգեբացը, այգեթաղը, պտղատու այգիների բաժակափորը և հողային այլ աշխատանքներ դասվում են տարիֆային III կարգին, կամ դրանք հավասարեցվում են խոտի և սիլոսային մասսայի կույտավորմանը, արմատապտուղների ընտրությանը և նման այլ աշխատանքների։ Հողային պայմանները մեր տնտեսություններում ծանր են և աշխատանքային մեծ ծախսումներ են պահանջում։ Աշխատանքի տարիֆավորման բալային սիստեմով կատարված հետազոտությունները ցույց են տվել, որ հողային աշխատանքները պետք է դասել V կարգին, քանի որ տարիֆավորման ներկայիս պայմաններում լինում են արդյունավետ ու ոչ արդյունավետ աշխատանքներ, և բանվորները դժվարությամբ են կատարում հողային աշխատանքները։

Վարձատրության գործող կարգի համաձայն հեռագնաց արոտավայրերում աշխատելու ժամանակաշրջանում անասնապահների տարիֆային դրույքները բարձրացվում են 40 տոկոսով։ Այդպիսի դրվածքը կապված է մեծ դժվարությունների հետ և հանգեցնում է սխալների։ Այսպես, կթվորների և անասնապահների հիմնական վարձատրությունը կատարվում է տարեսկզբին սահմանված վարձաչափերով, որոնք կազմված են տարիֆային դրույքներից և 15 տոկոս լրացուցիչ վարձատրության գումարից։ Բացի այդ, տարիֆային դրույքները դիֆերենցվում են կաթի և հորթի, իսկ ոչխարաբուծությունում՝ կաթի, գառի և բրդի համար։ Այդ խմբի աշխատողների վարձատրությունը կատարվում է փաստացի ստացված արտադրանքի համար նախօրոք սահմանված վարձաչափերով։ Հեռագնաց արոտներում եղած ժամանակաշրջանում վարձաչափերը չեն վերանայվում, հետևապես տնտեսությունների մասնագետներն ստիպված են առանձնացնելու բանվորների աշխատավարձի տարիֆային բաժինը, որպեսզի այն ավելացնեն 40 տոկոսով։ Բացի այդ, շատ տեղերում հեռագնացության համար նախատեսված 40 տոկոսը չեն վճարում օժանդակ աշխատողներին։ Այդպիսի անճշտություններից խուսափելու նպատակով անհրաժեշտ է 40 տոկոսով բարձրացնել հեռագնաց արոտներում անասնապահության սպասարկող հիմնական և օժանդակ բանվորների փաստացի վճարվող աշխատավարձը։

Սերմնաբուծական և տոհմային տնտեսություններում լավորակ սերմեր արտադրելու, տոհմային անասունների կերակրումը, խնամքն ու աճը բարելավելու նպատակով անհրաժեշտ է 10—15 տոկոսով բարձրացնել այդ աշխատանքներով զբաղվող բանվորների պարգևատրման չափը։

Հանրապետության սովխոզների տերիտորիայում կան հիմնարկ-ձեռնարկություններ, որոնց բանվոր-ծառայողները դաշտային աշխատանքների եռուն շրջանում հաճախ հրավիրվում են սովխոզների բրիգադաներին ու բաժանմունքներին օգնելու։

Սակայն աշխատանքի վարձատրության գործող կարգի համաձայն վերոհիշյալ աշխատողներին լրացուցիչ չեն վարձատրում և չեն պարգևատրում արտապլանային արտադրանքի համար։ Դրա հետևանքով այս աշխատողների միջին վաստակն ավելի ցածր է լինում, քան սովխոզների հիմնական բանվորներինը, որի հետևանքով նրանք խուսափում են սեզոնային լարված աշխատանքներին մասնակցելուց։

Կարծում ենք, որ բանուժի պակասը և արտադրության շահերը հրամայա-



բար պահանջում են՝ հիմնական բանվորներին համահավասար լրացուցիչ վարձատրել և պարգևատրել գյուղատնտեսական աշխատանքներին մասնակցող սովխոզների և գյուղատնտեսական պետական ձեռնարկությունների ավանների բնակիչներին։ Իսկ դրսից ընդգրկվածների նկատմամբ պետք է կիրառվի ժամանակավոր բանվորների համար սահմանված պարգևատրման կարգը։

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց գյուղատնտեսության մասնագետների պատրաստման, ղեկավար կադրերին և, առաջին հերթին, բրիգադավարների, ֆերմաների վարիչների, բաժանմունքների կառավարիչների որակավորման բարձրացմանը, ինչպես նաև գյուղում մասնագետների ամրացմանը։ Դա վերաբերում է նաև մեր հանրապետությանը։ Դեռևս արտադրության մեջ աշխատում են ցածր որակավորում ունեցող, իրենց մասնագիտությանը չտիրապետող մարդիկ։ Բազմաթիվ են դեպքերը, երբ սովխոզներում և կոլտնտեսություններում տնտեսագիտական աշխատանքի են նշանակում միանգամայն պատահական մարդկանց։ Թերևս այդ է պատճառը, որ արտադրության վարման այդ կարևոր ասպարեզը շատ տնտեսություններում ինքնահոսի է մատնված և տվյալ բնագավառում ոչինչ չի արվում։

Վերջին մի քանի տարում լուրջ աշխատանք է տարվել սովխոզներում աշխատանքի և աշխատավարձի հարցերով տնտեսագետների պատրաստման ուղղությամբ՝ հաճախակի կազմակերպված սեմինարների միջոցով։ Այդ մասնագետների աշխատանքի նշանակումն ու ազատումը կատարվում է մինիստրության միջոցով։ Չնայած դրան, Հրազդանի շրջանի Հանքավանի սովխոզում առանց որևէ պատճառի աշխատավարձի գծով տնտեսագետին փոխադրում են այլ աշխատանքի, նրանց փոխարեն նշանակում ոչ ձեռնհաս մարդկանց, որոնցից ամեն մեկն աշխատում է մի քանի ամիս միայն։ Եվ դա այն դեպքում, երբ աշխատանքի վարձատրության, կազմակերպման և պլանավորման հարցերն այս սովխոզում պատշաճ բարձրության վրա չեն և կարիք ունեն կարգավորման։ Տնտեսագիտական կադրերի նկատմամբ նման վերաբերմունք են ցույց տվել նաև Կրասնոսելսկի շրջանի Թոխլուջայի, Իջևանի շրջանի Իջևանի և այլ սովխոզներում։

Անհրաժեշտ է գիտենալ, որ արտադրության կազմակերպման հաջողությունը պայմանավորված է մասնագետների ճիշտ ընտրությամբ և նրանց որակի բարձրացմամբ։

Սովխոզային արտադրության կազմակերպման գործում կարևոր նշանակություն ունի նաև բրիգադավարների որակական կազմը։ Սակայն ներկայումս սովխոզներում աշխատող 1987 բրիգադավարների միայն 4,3 տոկոսն ունի բարձրագույն, իսկ 33-ը՝ միջնակարգ կրթություն։ Պարզ է, որ նման կազմը չի բավարարում ներկայիս պահանջները։ Այդ նպատակով ժամանակն է սահմանել խրախուսման պայմաններ նաև կրթության՝ ըստ մասնագիտության աշխատող բրիգադավարների համար։ Այսպես, բարձրագույն մասնագիտական կրթություն ունեցողներին առաջին տարին որպես հավելում անհրաժեշտ է վճարել 5 տոկոս, 2-րդ տարին՝ 15, 3-րդ և հետագա տարիներին՝ 25 տոկոս, իսկ միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողներին, համապատասխանաբար՝ 5, 10 և 15 տոկոս։

Մեր հանրապետությունում վերջին տարիներս սկսվել և շարունակվում է նոր իրացվող հողերում պտղաբուծական ու խաղողագործական սովխոզների ստեղծումը, որտեղ մասնագետներն աշխատում են բացառիկ դժվարին պայմաններում։ Բայց որքան էլ տարօրինակ թվա, այդ սովխոզների (երբ 3—5 տարի արտադրանք չի ստացվում) ղեկավար աշխատողների և մասնագետների համար պարգևատրում չի սահմանված։

Նկատի ունենալով հանրապետության սովխոզների առանձնահատկությունները, անհրաժեշտ է սահմանել ղեկավար աշխատողների և մասնագետների պարգևատրման հետևյալ կարգը.

ա) պտղատու և խաղողի այգիների տնկման ու առաջին տարվա խնամքի համար՝

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 85 | տոկոս կատարողականության դեպքում | | 2 | ամսվա | աշխատավարձ |
| 86—90 | » | » | 3 | » | » |
| 91—95 | » | » | 5 | » | » |

բ) երկրորդ և հետագա տարիների խնամքի համար մինչև բերքատու դառնալը՝

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 90 | տոկոս կատարողականության դեպքում | | 2 | ամսվա | աշխատավարձ |
| 91—95 | » | » | 3 | » | » |
| 96—98 | » | » | 5 | » | » |

Երբ տնտեսությունում կլինեն առաջին և երկրորդ տարվա տնկարքներ, պարգևատրումը կվճարվի ըստ «բ» կետում նշված պայմանների։ Պարգևատրումը վճարվում է այգիների տնկման համար նախատեսված կապիտալ ներդրումների պլանը կատարելու պայմանով։

Սովխոզների ղեկավար աշխատողների և մասնագետների աշխատանքի վարձատրության կանոնադրությամբ նախատեսված է այդ կարգի աշխատողներին պարգևատրել գյուղատնտեսական մթերքների իրացման պլանների գերակատարման համար։ Միաժամանակ նշվում է, որ բոլոր սովխոզների համար պարգևատրման պարտադիր պայմանը մսի և հացահատիկի բնամթերային արտադրության պլանների կատարումն է։ Կարելի է վստահորեն ասել, որ այդ պայմանները չեն բխում մեր հանրապետության առանձնահատկություններից։ Այդ են ապացուցում այն, որ պտղաբուծական և խաղողագործական սովխոզների համախառն արտադրության ծավալում միսը և հացահատիկը կազմում են ընդամենը 1—5 տոկոս։ Ուստի, նշված սովխոզների ղեկավար աշխատողների և մասնագետների պարգևատրման ժամանակ չպետք է պարտադիր պայման ընդունել մսի և հացահատիկի պլանների կատարումը։

ՍՍՀՄ Մինիստրների սովետի աշխատանքի և աշխատավարձի հարցերով պետական կոմիտեի և ՀԱՄԽ-ի նախագահության (1961 թ. հունիսի 30-ի) որոշմամբ 2—3 տարով պահպանվում է սովխոզների այն աշխատողների աշխատավարձը, որոնք փոխադրվում են ավելի փոքր ծավալ ունեցող տնտեսությունները։ Սակայն տարօրինակ է, որ այդ կարգը չի տարածվում այլ հիմնարկ-ձեռնարկություններից փոխադրվածների վրա։ Հայտնի է, որ ետ մնացող, փոքրածավալ տնտեսությունները ղեկավարելու և բարձրացնելու նպատակով հաճախ կուսակցական և սովետական օրգանների որոշմամբ ուղարկվում են շատ մասնագետներ, որոնց աշխատավարձը զգալի չափով բարձր է նախկին աշխատանքի վայրում։ Նման երևույթներ մեր հանրապետությունում շատ կան։ Կարծում ենք, որ ժամանակն է վերոհիշյալ որոշումը տարածել նաև արտադրական վարչություններից, տրեստներից, գյուղատնտեսական մինիստրություններից և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերից սովխոզները փոխադրված ղեկավար աշխատողների և մասնագետների վրա։ Այդ հանգամանքը հնարավորություն կտա լեռնային շրջանները գործուղել գործիմաց և փորձված մասնագետներ։

Անհրաժեշտ է նշել, որ սովխոզային աշխատավորության նյութական շահագրգռվածության հարցերը սերտորեն կապված են նաև աշխատանքի նորմավորման, կազմակերպման ու պլանավորման հետ, որոնց պետք է առանձնահատուկ ուշադրություն նվիրել։

ԴԱՐԲԻՆՅԱՆ Գ. Ս.
Տնտեսական գիտությունների թեկնածու,
ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության
աշխատանքի նորմավորման, վարձատրության ու
պլանավորման վարչության պետ



# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՈՒՄԸ

Վ. Ի. Լենինը զարգացնելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ուսմունքը, առաջինը խորապես բացահայտեց էլեկտրիֆիկացման դերն ու նշանակությունը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։ Այդպիսի բազայի ստեղծման հիմքը կարող է հանդիսանալ միայն երկրի, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի էլեկտրիֆիկացումը։ Լենինի պատմական խոսքերը՝ «Սովետական իշխանություն պլյուս ողջ երկրի էլեկտրիֆիկացիա հավասար է կոմունիզմի», այժմ իրագործվում է։

Առանց էլեկտրիֆիկացիայի անհնար է արագ թափով զարգացնել ժողովրդական տնտեսությունը։ Ահա թե ինչու, դեռևս 1920 թվականին, քաղաքացիական պատերազմի, տնտեսական ամենածանր պայմաններում, երբ ամեն կողմից սպիտակգվարդիականներն ու ինտերվենտները շրջապատել էին երիտասարդ սովետական հանրապետությունը, Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ կազմվեց ԳՈԷԼՌՈ-ի պլանը։ Այդ պլանը, որ 1920 թ. դեկտեմբերին ընդունվեց Սովետների համառուսաստանյան VIII համագումարում, Լենինն անվանեց կուսակցության երկրորդ ծրագիրը։ Ըստ այդ պլանի, նախատեսված էր 10—15 տարում վերակառուցել եղած էլեկտրակայանները և կառուցել 30 նոր էլեկտրակայան՝ 1 միլիոն 750 հազար կվտ ընդհանուր կարողությամբ։

Կոմունիստական կուսակցության և սովետական պետության հետագա տարիների ամենօրյա կազմակերպական գործունեության շնորհիվ ԳՈԷԼՌՈ-ի պլանը կատարվեց հաջողությամբ։ Կարճ ժամանակամիջոցում վերականգնվեցին հին էլեկտրակայանները, սկսվեց նոր կայանների շինարարությունը։ 1922 թ. Կաշիրայի էլեկտրակայանը հոսանք տվեց Մոսկվային։ 1925 թ. շահագործման հանձնվեցին Նիժեգորոդի, Շատուրայի և գործարկվեցին Շտերովի ու Սվերդլովի շրջանային էլեկտրակայանները։ ԳՈԷԼՌՈ-ի պլանը 1931 թվականին, ըստ հիմնական ցուցանիշների, գերակատարվեց երեք անգամ։ Նախատեսված ժամկետից շուտ կառուցվեցին և գործարկվեցին այնպիսի խոշոր էլեկտրակայաններ, ինչպիսիք են Դնեպրոգէսը, Վոլխովգէսը, Սվիրգէսը և այլն։

Ժողովրդական տնտեսության առաջին հնգամյա պլանը (1928—1932 թթ.) գերազանցեց ԳՈԷԼՌՈ-ի 10—15 տարվա ծրագիրը։ Հնգամյակում կառուցվեց 44 շրջանային էլեկտրակայան (նախատեսված 30-ի դիմաց), ավելի քան 1500 խոշոր արդյունաբերական ձեռնարկություն։ Երկրում բոլոր էլեկտրակայանների կարողությունն առաջին հնգամյակի տարիներին, 1913 թ. համեմատությամբ, աճեց գրեթե 2,5, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 2,7 անգամ։

ՍՍՀՄ-ում էլեկտրաէներգիայի արտադրությունը 1950 թ., 1940 թ. համեմատությամբ, աճեց 87 տոկոսով՝ այդ տարվա համար հնգամյա պլանով նախատեսված 70 տոկոսի դիմաց։ 1959 թ. ԳՈԷԼՌՈ-ի պլանը գերակատարվեց 15 անգամ։ ՍՍՀՄ-ը 1950 թ. էլեկտրաէներգիայի արտադրության գծով 15-րդ տեղից բարձրացավ երկրորդ տեղը աշխարհում և առաջինը՝ Եվրոպայում։ Եթե 1913 թ. ցարական Ռուսաստանում էլեկտրակայանների կարողությունները կազմում էին մեկ մլն կվտ և արտադրվում էր 2 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա, ապա 1967 թ. Սովետական Միությունում էլեկտրակայանների կարողությունը 135 մլն կվտ էր, որոնք արտադրեցին 598 մլրդ կվտ-ժամ։ Էլեկտրաէներգիայի արտադրությունը Սովետական Միությունում, 1967 թ., 1913 թ. համեմատությամբ, ավելացել է մոտ 300 անգամ։

Աշխարհի ոչ մի երկրում չեն կառուցված այնպիսի խոշոր էլեկտրակայաններ, ինչպիսիք են՝ Բրատսկի (4 մլն կվտ կարողությամբ), Վոլժսկի (2,53 մլն-կվտ) գէսերը և այլն։

1970 թ. էլեկտրակայանների ընդհանուր կարողությունները կգերազանցեն 180 մլն կվտ-ից և էլեկտրաէներգիայի արտադրությունը կկազմի 830—850 մլրդ կվտ-ժամ, կամ 1965 թ. համեմատությամբ, կավելանա 1,7 անգամ։ Էլեկտրաէներգիայի սպառումը 1970 թ. մեկ շնչի հաշվով Սովետական Միու-

թյունում, միջին հաշվով, կհասնի 3400 կվտ-ժամի, կամ 1965 թ.համեմատությամբ, կավելանա 1,5 անգամ։

Կառուցվում են այնպիսի խոշոր էլեկտրակայաններ, ինչպիսիք են՝ Կրասնոյարսկի հիդրոէլեկտրակայանը՝ 6, Սայանո-Շուշինսկոյինը՝ 6,3 մլն կվտ կարողությամբ և այլն։

Սովետական Միության էներգետիկայի հզոր զարգացումն ապահովեց երկրի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վերելք և հնարավորություն ընձեռեց անցնելու կապիտալիստական առավել զարգացած երկրներից։ Այժմ Սովետական Միության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում լայնորեն օգտագործվում է էլեկտրաէներգիան. այն մուտք է գործել բնակչության կենցաղում։ Էլեկտրիֆիկացիայի պլանին համապատասխան ստեղծվել է հայրենական խոշոր էներգետիկ արդյունաբերական բազա, կառուցվել են հազարավոր կիլոմետր բարձր լարման էլեկտրական գծեր և տրանսֆորմատորային ենթակայաններ։

Էլեկտրաէներգիայի զարգացման գործում խոշոր աշխատանքներ ծավալվեցին նաև Սովետական Հայաստանում։ Նախասովետական Հայաստանի էներգետիկան զարգացած չէր։ 1913 թ. գործում էին 13 էլեկտրակայան՝ 3165 կվտ ընդհանուր կարողությամբ, որոնք միասին տարեկան արտադրում էին 5,1 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա։

Ժառանգելով ծայրահեղ հետամնաց էներգետիկ տնտեսություն, Հայաստանում սովետական իշխանության հաստատումից անմիջապես հետո, կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը ձեռնամուխ եղան էլեկտրակայանների կառուցման գործին։ 1923 թ. Հրազդան գետի վրա սկսվեց Երևանի հիդրոէլեկտրակայանի (առաջին Երգէսի) շինարարությունը՝ 4500 կվտ կարողությամբ։ Այն գործարկվեց 1926 թ. և հնարավորություն ընձեռեց արագ զարգացնելու արդյունաբերության ճյուղերն ու բարելավելու Երևանի կոմունալ տնտեսության պահանջները։ 1928 թ. շարք մտավ Լենինականի հիդրոէլեկտրակայանը՝ 5,3 հազար կվտ կարողությամբ։

Էլեկտրաէներգիայի պահանջն արագորեն ապահովելու համար 1932 թ. շահագործման հանձնվեցին երկրորդ Երգէսը՝ 2,4 հազար կվտ կարողությամբ և Ձորագէսի հիդրոէլեկտրակայանը՝ 25 հազար կվտ կարողությամբ։ Վերջինիս շահագործման հանձնելուց հետո լայն թափով զարգացան Կիրովականի քիմիական և Ալավերդու պղնձի արդյունաբերությունը։ Դրա հետ միասին էլեկտրիֆիկացվեցին մոտակա շրջանների կոլտնտեսությունները, սովխոզները և այլ ձեռնարկություններ։

Հանրապետության արդյունաբերության, գյուղատնտեսության, տրանսպորտի և տնտեսության այլ ճյուղերի զարգացումը պահանջում էին ավելի բարձրացնել էլեկտրաէներգիայի արտադրությունը։ Այդ նպատակով առաջարկվեց կառուցել Հրազդանի կասկադի հիդրոէլեկտրակայանները։ Սևան—Հրազդանի պրոբլեմի կենսագործումն սկսվեց Քանաքեռգէսի հիդրոէլեկտրակայանի շինարարությամբ, որը շահագործման հանձնվեց 1936 թ. (102 հազար կվտ կարողությամբ)։ 1949 թ. կառուցվեց Սևանի հիդրոէլեկտրակայանը. շարք մտան Գյումուշգէսի (224 հազար կվտ կարողությամբ), 1956 թ.՝ Արզնիի, 1959-ին՝ Աթարբեկյանի, իսկ 1962-ին՝ Երևանի հիդրոէլեկտրակայանները։ Վեց աստիճան կասկադի հիդրոէլեկտրակայանների ընդհանուր կարողությունը կազմեց 555 հազար կվտ։

Սևան—Հրազդան կասկադը հսկայական դեր խաղաց մեր հանրապետության ժողովրդական տնտեսության արագ զարգացման գործում։ Դա հնարավորություն ընձեռեց կառուցելու մեծ թվով արդյունաբերական ձեռնարկություններ և ոռոգելու 100 հազար հեկտարից ավելի ամայի հողատարածություններ։

Սակայն, եղած ջրային ռեսուրսները և դրանց բազայի վրա գործող ու կառուցվող հիդրոէլեկտրակայաններն ի վիճակի չէին ապահովելու հանրապետության էլեկտրաէներգիայի աճող պահանջները։ Այդ իսկ պատճառով հիդրոէլեկտրակայանների շինարարության հետ միասին հարկ եղավ եղբայրական հանրապետություններից ստացվող բնական գազի բազայի վրա կա-



ռուցել ջերմաէլեկտրակայաններ։ Երևանի ջերմաէլեկտրակենտրոնը 1967 թ. տվել է հանրապետությունում արտադրվող ամբողջ էլեկտրաէներգիայի 63 տոկոսը և 2 մլն գիգակալորիա ջերմություն։ Վերջինս մատակարարվել է Երևանի Կիրովի անվան քիմիական կոմբինատին, «Պոլիվինիլացետատ» և ավտոդողերի գործարաններին։ Կիրովականի ջերմաէլեկտրակենտրոնի էլեկտրաէներգիայի արտադրությունն անցյալ տարի կազմել է 203 մլն կվտ-ժամ, իսկ նրա տված 451 հազար գիգակալորիա ջերմությունը օգտագործվել է արտադրության և կոմունալ-կենցաղային կարիքների համար։ Հրազդանում հանքաքիմիական արդյունաբերության և այլ ճյուղերի զարգացման նպատակով 1966 թ. շահագործման հանձնվեց Հրազդանի ջերմաէլեկտրակենտրոնի առաջին ագրեգատը՝ 50 հազար կվտ կարողությամբ, իսկ 1967-ին՝ երկրորդ ագրեգատը (նույն կարողությամբ)։

Այսպիսով, 1968 թ. հունվարի 1-ի տվյալներով, հանրապետության էներգասիստեմում գործում էր 33 էլեկտրակայան, 1286 հազար կվտ ընդհանուր կարողությամբ, այդ թվում՝ Սևան—Հրազդան կասկադը՝ 555 հազար կվտ, ջերմաէլեկտրակենտրոնները՝ 669 հազար կվտ և փոքր գէսերը՝ մոտ 62 հազար կվտ։ Եթե 1960 թ. Հայաստանում էլեկտրաէներգիայի արտադրությունը կազմում էր 2746,8 հազար կվտ-ժամ, 1965-ին՝ 2855,2, ապա 1967-ին այն հասավ 4657,5 հազար կվտ-ժամի, կամ 1966 թ. համեմատությամբ, ավելացավ 129 տոկոսով։ Տարեցտարի ավելանում է ջերմաէլեկտրակայանների արտադրած էլեկտրաէներգիայի տեսակարար կշիռը։ Այսպես, եթե 1965 թ. ջերմաէլեկտրակայանները տվեցին արտադրած ամբողջ էներգիայի 43,5 տոկոսը, ապա 1967-ին այն կազմեց 74,5 տոկոս։

Էլեկտրաէներգիայի արտադրության նման բարձր տեմպերի շնորհիվ ավելացավ նաև բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի չափը։ Եթե 1940 թ. հանրապետության բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիան կազմում էր 295 կվտ-ժամ, 1950-ին՝ 701, 1965-ին՝ 1370, ապա 1967-ին այն կազմեց 2000 կվտ-ժամ։

1968—1970 թթ. վիթխարի աշխատանքներ կկատարվեն հանրապետության էներգետիկ բազայի զարգացման գործում։ Այդ ժամանակաշրջանում կգործարկվեն Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի առաջին ագրեգատը (200 հազար կվտ), Տաթևի հիդրոէլեկտրակայանը (157 հազար կվտ), Հրազդանի ջերմաէլեկտրակենտրոնը (լրացուցիչ՝ 150 հազար կվտ), Շամբի հիդրոէլեկտրակայանը՝ 114 հազար կվտ կարողությամբ։

Սևանի լճի ջրերի բնական մակարդակը պահպանելու նպատակով 1963 թ. սկսվեց Արփա—Սևան թունելի կառուցումը, որի աշխատանքները նախատեսված է ավարտել 1970 թվականին։ Դրա շնորհիվ ամեն տարի Սևանա լիճը կթափվի մոտ 250 մլն խորանարդ մետր ջուր և հնարավոր կլինի Սևանա լճի մակերեսը պահպանել ո՛չ միայն բարձր մակարդակի վրա, այլև բավարարելու Սևան—Հրազդանի շուրջը գտնվող հողերի ոռոգացիոն կարիքները, ինչպես նաև Սևանա լճի ջուրը որոշ չափով օգտագործելու էներգետիկ նպատակների համար։

Հաշվարկները ցույց են տալիս, որ մեր հանրապետության էլեկտրաէներգիայի պահանջը 1970 թ. կկազմի մոտ 7,1 մլրդ կվտ-ժամ, իսկ սեփական բոլոր էլեկտրակայանները կարող են արտադրել 6,64 մլրդ կվտ-ժամ։ Պակաս էլեկտրաէներգիան կստացվի Անդրկովկասի միացյալ էներգասիստեմից։ Հետագա տարիներին Հայաստանի էլեկտրակայանները լրիվ կապահովեն ժողովրդական տնտեսության կարիքները։

Խոշոր ջերմաէլեկտրակայանների կառուցումը ո՛չ միայն կապահովի ժողովրդական տնտեսության էլեկտրաէներգիայի պահանջները, այլև Երևան, Կիրովական, Հրազդան քաղաքներին կմատակարարի ջերմային էներգիա։ Դրա շնորհիվ այդ քաղաքների ջերմային էներգիայի մոտ 40 տոկոսը կմատակարարվի ջերմաէլեկտրակենտրոններից և միայն 60 տոկոսը կստացվի շրջանային և կոմունալ կաթսայատեղակայումներից։

Էլեկտրակայանների շինարարության զարգացման հետ միասին նախատեսված է մինչև հնգամյակի վերջը կառուցել մոտ 2200 կմ էլեկտրահաղորդ-

ման գծեր, այդ թվում՝ 1400 կմ գյուղատնտեսության էլեկտրիֆիկացիայի համար։ Միայն 1968 թ. հանրապետությունում շահագործման կհանձնվեն մոտ 700 կմ բարձր լարման օդային գծեր։ 1968—1970 թթ. շարք կմտնեն բազմաթիվ տրանսֆորմատորային ենթակայաններ՝ 200 հազար կվտ ընդհանուր կարողությամբ։ Հնգամյակի վերջին Հայաստանի բոլոր շրջանները կծածկվեն բարձրավոլտ էլեկտրահաղորդման և տրանսֆորմատորային ենթակայանների խիտ ցանցով։

«Մենք գիտենք,— 1920 թ. ասում էր Լենինը, դիմելով երիտասարդությանը,— որ կոմունիստական հասարակություն չի կարելի կառուցել, եթե չվերածնենք արդյունաբերությունն ու հողագործությունը, ընդ որում դրանք պետք է վերածնենք ոչ թե հին ձևով։ Դրանք պետք է վերածնել ժամանակակից, գիտության վերջին խոսքի համաձայն կառուցված հիմքի վրա։ Դուք գիտեք, որ այդ հիմքն էլեկտրականությունն է, որ միայն այն ժամանակ, երբ ամբողջ երկիրը, արդյունաբերության ու հողագործության բոլոր ճյուղերը կենթարկվեն էլեկտրիֆիկացման, երբ դուք այդ խնդիրը կյուրացնեք, այն ժամանակ միայն դուք կարող եք կառուցել ձեզ համար այն կոմունիստական հասարակությունը, որը հին սերունդը չի կարողանա կառուցել» (Երկեր, հ. 31, էջ 351)։

Էներգետիկայի զարգացման հետ միասին աճել է նաև արդյունաբերության էլեկտրասպառումը։ Այսպես, եթե 1950 թ. արդյունաբերության մեջ ծախսվել է 767 մլն կվտ-ժամ, ապա 1965-ին՝ 3097 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 1967-ին, 1965 թ. համեմատությամբ, ավելացել է մոտ 1,5 անգամ։

Միաժամանակ պետք է նշել, որ չնայած հանրապետության արդյունաբերության մեջ էլեկտրաէներգիայի սպառման սիստեմատիկ աճին, դրա տեսակարար կշիռն ընդհանուր էլեկտրաէներգիայի սպառման մեջ նվազում է։ Այսպես, եթե 1950 թ. այն 82 տոկոս էր, ապա 1967-ին կազմեց 70 տոկոս։ Դա բացատրվում է նրանով, որ էլեկտրաէներգիայի սպառումն էլեկտրատար ճյուղերում (քիմիական և գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում) սահմանափակվել է. ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում, վերջին տարիներին, կատարվել է էլեկտրասպառման ստրուկտուրայի զգալի փոփոխություն և հիմնական ուշադրությունը կենտրոնացվել ոչ էլեկտրատար ճյուղերի արագ զարգացման վրա։

Արդյունաբերության մեջ էլեկտրաէներգիան, որպես շարժիչ ուժ, լայնորեն կիրառվում է և տեխնոլոգիական պրոցեսներում (էլեկտրոլիզ, էլեկտրազոդում, էլեկտրաթերմիա, բարձր հաճախականության հոսանքների օգտագործում և այլն)։ Արտադրապրոցեսների էլեկտրիֆիկացման կարևոր հարցերից մեկը էլեկտրահաղորդակի օգտագործումն է։ 1965 թ. փաստացի տվյալները ցույց են տալիս, որ արդյունաբերության մեջ օգտագործվում էր ավելի քան մեկ միլիոն կիլովատ կարողությամբ էլեկտրաշարժիչ, որն ամբողջ շարժիչների (մեխանիկական և էլեկտրական) 92,7 տոկոսն էր։ 1965 թ. արդյունաբերության մեջ օգտագործվող էլեկտրաշարժիչների կարողությունների զգալի մասը պատկանել է քիմիական, 21,4-ը՝ մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերությանը, որոշ մասը գունավոր մետալուրգիային, 8,5-ը՝ շինանյութերի և 6,5-ը՝ սննդի արդյունաբերությանը։

Հետաքրքրական է էլեկտրաէներգիայի սպառման ստրուկտուրան՝ ըստ արդյունաբերության ճյուղերի։ Արդյունաբերության էլեկտրաէներգիայի սպառման մեջ հիմնականը էլեկտրատար ճյուղերն են (քիմիական արդյունաբերություն և գունավոր մետալուրգիա)։ Դրա հետ միասին պետք է նշել, որ 1967 թ., 1966 թ. համեմատությամբ, էլեկտրատար ճյուղերի տեսակարար կշիռը նվազում է։ Այսպես, նույն ժամանակաշրջանում գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում էլեկտրաէներգիայի ծախսն արդյունաբերական սպառման մեջ նվազել է 1,9 տոկոսով, իսկ քիմիական արդյունաբերությունում՝ 5,0 տոկոսով։

Արդյունաբերության արտադրության էլեկտրիֆիկացման կարևոր ցուցանիշներից մեկն աշխատանքի էլեկտրազինվածությունն է։ Արդյունաբերության արագ զարգացման հետ միասին աճել է նաև աշխատանքի էլեկտրազինվա-



ծությունը։ Եթե 1940 թ., 1913 թ. համեմատությամբ, էլեկտրաէներգիայի սպառումը մեկ բանվորի հաշվով աճել է 17,2 անգամ, ապա 1965 թ. ավելացել է 56 անգամ։ 1967 թ., 1962 թ. համեմատությամբ, մետաղաշինության և մետաղամշակման արդյունաբերության ձեռնարկություններում այն ավելացել է 710, շինանյութերի արդյունաբերությունում՝ 1825 և թեթև արդյունաբերության ձեռնարկություններում՝ 310 կվտ-ժամով։

1965—1970 թթ. էլեկտրաէներգիայի սպառումը գունավոր մետալուրգիայի ձեռնարկություններում կավելանա մոտ 1,4 անգամ, մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության մեջ՝ 2, քիմիական՝ 1,3, շինանյութերի՝ 1,4, սննդի՝ 1,3 և թեթև արդյունաբերության մեջ՝ 1,5 անգամ։ Արդյունաբերության տարբեր ճյուղերում էլեկտրաէներգիայի լայն օգտագործումը հնարավորություն կընձեռի զգալի չափով բարձրացնելու արտադրողականությունը և ավտոմատացնելու արտադրապրոցեսները։

Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս գյուղատնտեսության էլեկտրիֆիկացմանը, էլեկտրակայանների շինարարությանը գյուղական վայրերում։ «Այդ մանր կայաններով գյուղում ստեղծվեցին ժամանակակից նոր, խոշոր արդյունաբերության կենտրոններ։ Նրանք թեև չնչին են, սակայն, այնուամենայնիվ, ցույց են տալիս գյուղացիներին, որ Ռուսաստանը կանգ չի առնի ձեռքի աշխատանքի վրա, չի մնա իր պրիմիտիվ փայտե արորով, այլ առաջ կգնա դեպի այլ ժամանակներ։ Եվ գյուղացիների մասսաների մեջ աստիճանաբար թափանցում է այն միտքը, որ մենք Ռուսաստանը պետք է դնենք ու կարող ենք դնել ուրիշ հիմքի վրա» (Երկեր, հ. 33, էջ 192)։

Սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվել է գյուղատնտեսության էլեկտրաէներգետիկ հզորությունը։ Սովխոզների և կոլտնտեսությունների էլեկտրիֆիկացումը գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր գործոնն է։ Գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման ասպարեզում մեր հանրապետությունում բավական հաջողություններ են ձեռք բերվել։ Մեր կոլտնտեսություններն ու սովխոզները լրիվ էլեկտրիֆիկացված են։ Գյուղական վայրերում էլեկտրաէներգիան լայնորեն օգտագործվում է ո՛չ միայն բնակչության կենցաղային կարիքները բավարարելու, այլև արտադրության աշխատատար պրոցեսներն էլեկտրիֆիկացնելու նպատակով։

Եթե 1932 թ. գյուղատնտեսության արտադրության մեջ օգտագործվում էր մոտ 200 էլեկտրաշարժիչ (1500 կվտ ընդհանուր կարողությամբ), ապա 1967 թ. վերջին, համապատասխանաբար՝ մոտ 8 հազար շարժիչ (85 հազար կվտ կարողությամբ)։ Եթե 1940 թ. գյուղատնտեսության մեջ օգտագործվում էր 10,7 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա, ապա 1965-ին այն կազմեց 287,8 մլն կվտ-ժամ, կամ ավելացավ 26,9 անգամ։ Գյուղատնտեսության էլեկտրասպառման տեսակարար կշիռը ժողովրդական տնտեսության էլեկտրաէներգիայի ծախսի մեջ 1940 թ. կազմել է 2,7, իսկ 1967-ին՝ 7,5 տոկոս։ Էլեկտրաէներգիայի սպառումը, 1967 թ., 1950 թ. համեմատությամբ, սովխոզներում ավելացել է 18, իսկ կոլտնտեսություններում՝ 13 անգամ։

Վերջին տարիներին մեծ թվով կոլտնտեսություններ ու սովխոզներ էլեկտրաէներգիան լայնորեն ներդրեցին գյուղատնտեսության արտադրության մեջ։ Առաջավոր խոշոր կոլտնտեսություններն առանձին արտադրապրոցեսների էլեկտրամեքենայացումից անցնում են կոմպլեքսային օգտագործման (Սպիտակի սովխոզը, Արտաշատի շրջանի Բաղրամյանի անվան, Էջմիածնի շրջանի Սպանդարյանի անվան կոլտնտեսությունները և շատ այլ տնտեսություններ)։ 1967 թ. էլեկտրաէներգիայի ծախսը գյուղատնտեսության մեջ կազմեց 310 մլն կվտ-ժամ, այդ թվում, արտադրության նպատակների համար՝ 152 մլն կվտ-ժամ (կամ 49 տոկոս)։

Գյուղատնտեսության արտադրության էլեկտրիֆիկացման մակարդակը պետք է որոշվի ո՛չ միայն էլեկտրաշարժիչների օգտագործման թվով, այլև էլեկտրազինվածությամբ։ 1967 թ. յուրաքանչյուր աշխատող կոլտնտեսականին ընկնում էր 418 կվտ-ժամ էլեկտրաէներգիա, սովխոզներում՝ 421, միջինը ՍՍՀՄ-ում համապատասխանաբար՝ 254 և 684 կվտ-ժամ։ Վերոհիշյալ

տվյալներից երևում է, որ աշխատանքի էլեկտրազինվածությունը մեկ աշխատողի նկատմամբ ՍՍՀՄ-ի սովխոզներում ավելի բարձր է, քան մեր հանրապետությունում, իսկ կոլտնտեսություններում՝ ընդհակառակը։

Փաստացի տվյալները ցույց են տալիս, որ 1967 թ. մեկ կոլտնտեսության միջին էլեկտրաէներգիայի ծախսը կազմել է 197 հազար կվտ-ժամ, սովխոզինը՝ 318, արտադրության նպատակների համար, համապատասխանաբար՝ 89 և 154 հազար կվտ-ժամ։ Այն ժամանակ, երբ ՍՍՀՄ մասշտաբով այդ ցուցանիշները բավական բարձր են, քան մեր հանրապետությունում։

Գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման աշխատանքները բարելավելու նպատակով նախատեսվում է մինչև 1970 թվականը կառուցել մոտ 1400 կմ էլեկտրահաղորդման գծեր, տեղադրել մեծ քանակությամբ էլեկտրաշարժիչներ։ 1970 թ., 1965 թ. համեմատությամբ, էլեկտրաէներգիայի սպառումը գյուղատնտեսության մեջ կաճի մոտ երկու անգամ։

Հայաստանում մեծ աշխատանքներ են կատարված նաև երկաթուղային տրանսպորտի էլեկտրիֆիկացման բնագավառում։ 1955 թ. էլեկտրիֆիկացված էր ընդհանուր երկաթուղու 25, իսկ 1965-ին՝ 41 տոկոսը։ Երկաթուղային տրանսպորտի էլեկտրիֆիկացումն արագացրեց գնացքների երթևեկությունը և խնայվեց մեծ քանակությամբ վառելանյութ։ 1955 թ. էլեկտրիֆիկացվեց Սանահին—Լենինական, 1963-ին՝ Երևան—Սևան հատվածը, որի երկարությունը 84 կմ է, իսկ հետագայում՝ Լենինական—Երևան և ուրիշ հատվածներ։ 1970 թ. էլեկտրիֆիկացված երկաթուղագծի երկարությունը կկազմի 436 կմ (կամ ընդհանուրի 70 տոկոսը)։ Երկաթուղային տրանսպորտի լրիվ էլեկտրիֆիկացումը հնարավորություն կընձեռի զգալի չափով իջեցնելու տոննա-կիլոմետրի ինքնարժեքը։

Մեծ է էլեկտրիֆիկացման դերը նաև կոմունալ տնտեսության և կենցաղսպասարկման ասպարեզում։ Եթե 1940 թ. Երևան քաղաքի տրամվայի գծերի ընդհանուր երկարությունը մոտ 40 կմ էր, ապա 1968-ին այն աճել է 2,5 անգամ։ Զգալիորեն մեծացել է նաև տրոլեյբուսի գծերի երկարությունը (1950—1967 թթ. ավելացել է մոտ 4 անգամ)։

Տրամվայ-տրոլեյբուսի գծերի աճի հետ միասին մեծացել է նաև կոմունալ տնտեսության և կենցաղսպասարկման համար էլեկտրասպառումը։ Այսպես, եթե 1940 թ. այդ կարիքների համար ծախսվել է մոտ 40 մլն կվտ-ժամ, 1965-ին՝ 228, ապա 1970-ին այն կկազմի մոտ 780 մլն կվտ-ժամ։

Հանրապետության էներգետիկայի և էլեկտրիֆիկացման հետագա զարգացումը հնարավորություն կընձեռի լուծելու ժողովրդական տնտեսության առջև դրված լուրջ խնդիրները։

ԱՎԱԿԻՄՅԱՆ Մ. Ս.

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԻՄՆԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԻ ՆՈՐԱՑՈՒՄԸ

ՍՄԿԿ XXIII համագումարում 1966—1970 թթ. հնգամյա պլանի դիրեկտիվների վերաբերյալ իր զեկուցման մեջ ընկ. Ա. Ն. Կոսիգինը անդրադառնալով գիտատեխնիկական առաջադիմության հարցին, նշեց, որ «Գիտության զարգացման աստիճանից, գիտական հետազոտությունների արդյունքներն արտադրության մեջ օգտագործելու մասշտաբներից հսկայական չափով կախված է համաշխարհային երկու սիստեմների տնտեսական մրցության ընթացքը»։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մեծ միջոցներ են հատկացնում մեր երկրում գիտության ու տեխնիկայի արագ զարգացմանը։ Բավական է նշել, որ միայն 1967 թվականին գիտահետազոտական, նախագծային կազմակերպություններն ու արդյունաբերական ձեռ-



նարկություններն ստեղծել են ավելի քան 3.000 նոր մեքենա ու սարքավորում և մոտ 1.500 սարք։ Արտադրության մեջ նոր տեխնիկայի ու գիտության նվաճումների արագ ներդրումը արտադրության արդյունավետության բարձրացման վճռական գործոնն է, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հիմնական գրավականը։

Այս առումով կարևոր նշանակություն ունի հիմնական ֆոնդերի նորացումը, քանի որ աշխատամիջոցները «արտադրության հեղաշրջման ելակետային բազան» են։

Հիմնական ֆոնդերում որքան մեծ է բարձրարտադրողական, համաշխարհային առավել զարգացած տեխնիկայի մակարդակին համապատասխանող մեքենաների և սարքավորումների բաժինը, այնքան բարձր է (այլ հավասար պայմաններում) արտադրության արդյունավետությունը։ Օգտագործվող հիմնական ֆոնդերի կազմում բարձր արդյունավետ աշխատամիջոցների ներդրման մասշտաբների լայնացումը, դրանց տեսակարար կշռի մեծացումը բարձրացնում է արտադրության միջին ճյուղային ցուցանիշները և այն մոտեցնում նոր տեխնիկայի անհատական տվյալներին։ Այդ առթիվ Կ. Մարքսը նշում է. «Որքան արտադրության որոշ ճյուղերում մեքենան ընդհանուր տարածում է ստանում, այնքան ընկնում է մեքենայական արդյունքի հասարակական-արժեքը՝ հասնելով արդյունքի անհատական արժեքին» (Կապիտալ, հ. I, էջ 426—427)։

Հիմնական ֆոնդերի անբավարար նորացումը հանգեցնում է գիտատեխնիկական առաջադիմության տեմպերի դանդաղեցման և արտադրության արդյունավետության բարձրացման ռեզերվների չօգտագործման։ Հայտնի են դեպքեր, երբ աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում նոր տեխնիկայի ընձեռած հնարավորությունները, հիմնական ֆոնդերի ոչ բավարար նորացման հետևանքով երկար տարիներ չեն օգտագործվել։ Այսպես, չնայած ՍՍՀՄ-ում մեքենաշինության մեջ ավտոմատ գծերի կիրառման քսանամյա փորձին, դրանց ներդրումը դեռևս նախնական փուլում է, ավտոմատ գծերը լայնորեն չեն կիրառվում և, ըստ էության, որոշիչ դեր չեն խաղում արտադրության մեջ։

Հայկական ՍՍՀ արդյունաբերական ձեռնարկություններում (ԿՎՎ միանվագ հաշվառման տվյալներով)[1], մինչև 1965 թ. տեղակայվել են 203 հարահոս գծեր (որոնց մոտ կեսը՝ 1961—65 թթ.)։ Դրանք բնորոշվում են բարձր տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով։ Չնայած նման առաջադիմական տեղաշարժին, այդ գծերի ազդեցությունն արտադրանքի թողարկման հասարակական ծախսումների կրճատման վրա դեռևս որոշիչ չէ։ Դրանցում ընդգրկված սարքավորումների (2608 միավոր) բաժինն ընդհանուր մեքենայական պարկում աննշան է (1 տոկոսից պակաս)։ ՍՄԿԿ ծրագրի համապատասխան, անհրաժեշտ է առավելագույն արդյունավետությամբ մասսայաբար իրականացնել կոմպլեքսային ավտոմատացումը, որի նյութական պայմաններից մեկն արդյունավետ կոմպլեքսային սարքերի ներդրման մասշտաբների մեծացումն է։

Ժամանակակից գիտատեխնիկական հեղաշրջումն արտադրության արդյունավետության բարձրացման համար մեծ հնարավորություններ է ստեղծել։ Այն իր բազմազանությամբ ու խորությամբ ընդգրկել է ժամանակակից արտադրության բոլոր տարրերը, ինչպես բուն աշխատամիջոցների, նույնպես և աշխատանքի առարկաների, արտադրանքի մշակման եղանակների ու ձևերի կատարելագործումը։

Տեխնիկական առաջադիմության լայն ծավալումը, իր հերթին, ընդլայնել է հիմնական ֆոնդերի նորացման հիմքերը, այն դուրս բերել աշխատամիջոցների կատարելագործման շրջանակներից և տարածել տեխնիկական առաջադիմության բոլոր տարրերի վրա։ Տեխնիկական առաջադիմության միասնական պրոցեսի յուրաքանչյուր տարրի շարժումն անխուսափելիորեն

1 Վիճակագրական ժողովածու «Экономика и культура Армении к 50-летию Великого Октября», Ереван, 1967, стр. 96.

առաջ է բերում հիմնական ֆոնդերի նորացման անհրաժեշտություն, արտադրության հագեցում նոր միջոցներով, գործող աշխատամիջոցների փոխարինում արմատապես տարբեր կոնստրուկցիայի սարքավորումներով, որոնք կապված են օգտագործվող աշխատանքի առարկաների, տեխնոլոգիական մեթոդների փոփոխության հետ։ Այսպես, առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների կիրառումն ապահովում է նախապատրաստուկների ձևակազմության կատարելագործում, հնարավորություն ընձեռում դրանց ձևերն ու չափերը մոտեցնել պատրաստի դետալի չափերին, դրանով իսկ փոքրացնել մեխանիկական մշակման ծավալը, հետևաբար և արտադրանքի թողարկման աշխատատարությունը, կրճատել թափթփուկները և բարձրացնել հանրային աշխատանքի արտադրողականությունը։ Չնայած նախապատրաստուկների ձևակազմության առաջադիմական տեխնոլոգիայի առավելություններին, մետաղների մշակման բնագավառում այն դեռևս տիրապետող չէ և առայժմ չի որոշում աշխատանքի հասարակական ծախսումների միջին մակարդակը։ Առաջադիմական տեխնոլոգիայի լայն արմատավորման նախապայմաններից մեկը հատուկ սարքերով ժողովրդական տնտեսության հագեցվածությունն է։

Հայկական ՍՍՀ մեքենաշինության, ինչպես նաև ողջ արտադրության մեջ, մետաղահատ և դարբնոցա-մամլակային հաստոցների հարաբերակցությունը որոշ չափով անբարենպաստ է և զիջում է Միության միջին ցուցանիշներին։ Հանրապետության մեքենաշինության մեջ 1967 թ. տվյալներով 10 միավոր մետաղահատ հաստոցին ընկնում էր 2 դարբնոցա-մամլակային հաստոց, որը չի համապատասխանում տեխնիկական առաջադիմության ժամանակակից պահանջներին։

Մեքենայական պարկի տարբեր խմբերի հարաբերակցության փոփոխումը պահանջում է առաջադիմական սարքավորումների նորացման առաջանցիկ տեմպերի ապահովում։

Ռացիոնալ նորացմամբ է միայն հնարավոր բուն մետաղահատ հաստոցների կառուցվածքի օպտիմալացումը՝ բարձր ճշտության հաստոցների տեսակարար կշռի բարձրացումը և, համապատասխանորեն, մետաղամշակման հանրորեն անհրաժեշտ ծախսումների մակարդակի առավել մոտեցումը ճշգրիտ սարքերի անհատական տեխնիկա-տնտեսական ցուցանիշներին։

Մեր հանրապետությունում դեռևս լայն տարածում չեն գտել նաև ձուլման ճշգրիտ մեթոդները։ Օրինակ, մեքենաշինության առաջատար ճյուղերից մեկում՝ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ, առաջադիմական մեթոդներով թողարկվող ձուլվածքի տեսակարար կշիռը չի գերազանցում 14 տոկոսից։ 1968 թ. պլանով, ճնշմամբ ձուլման, թաղանթային կաղապարներով, կենտրոնախույս եղանակներով ձուլածոյի ծավալը կավելացվի մոտ 50 տոկոսով և կկազմի ընդհանուր թողարկման 21 տոկոսը։ Կիրառվող տեխնոլոգիական մեթոդների նման առաջադիմական տեղաշարժերը, իրենց հերթին, պահանջում են աշխատամիջոցների նորացում՝ արտադրության հագեցում ճշգրիտ ձուլման սարքերով, ավտոմատ լցման, ջերմության վերահսկման ավտոմատներով ու կիսավտոմատներով։

Հիմնական ֆոնդերի նորացման անհրաժեշտությունը թելադրվում է նաև թողարկվող արտադրանքի կատարելագործման, որակական հատկանիշների բարձրացման կապակցությամբ։ էլեկտրատեխնիկական արտադրանքի (և ոչ միայն էլեկտրատեխնիկական) նկատմամբ որակի, հուսալիության, երկարակեցության, ամրության բարձր պահանջներ են ներկայացվում։ Իսկ այդ, իր հերթին, պահանջում է հիմնական ֆոնդերը համալրել հատուկ ստուգող, չափող, վերահսկող սարքերով։

Աշխատամիջոցների նորացման անհրաժեշտությունը սերտորեն առնչվում է կիրառվող աշխատանքի առարկաների կազմում տեղի ունեցող տեղաշարժերի հետ։ Օրինակ, պլաստմասսաների օգտագործումը մեծ չափով անդրադառնում է մետաղահատ ու դարբնոցա-մամլակային հաստոցների հարաբերակցության վրա։ Արտադրության քիմիացումը, տրադիցիոն մետաղների փոխարեն արհեստական նյութերի կիրառումը փոփոխություն է մտցնում դետալների մշակման մեթոդների հարաբերակցության մեջ, կրճատելով մետա-



ղամշակման տիրապետող կտրման, դրոշմման մեթոդները (համապատասխանորեն և մետաղահատ հաստոցների բաժինը) և ավելացնում դարբնոցա-մամլակային աշխատանքների ծավալն ու հաստոցների բաժինը։ Օրինակ, կոմպլեքսային էլեկտրասարքավորման համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի ուսումնասիրությունների համաձայն սինթետիկ նյութերից կարելի է պատրաստել մինչև 100 կվտ հզորության գեներատորների 13 և I, II տրամաչափի ուժային տրանսֆորմատորների 19 հանգույց։ Փոխարինման ենթակա դետալների համար որպես փոխարինիչ առաջարկվում է օգտագործել կոնստրուկցիոն սինթետիկ նյութեր, ինչպիսիք են՝ ԱԳ—4Վ տիպի պոլիմիդային խեժերը (смола), լարինիտը և այլն։

Արհեստական նյութերից դետալների պատրաստման տիրապետող եղանակը մամլումն է։ Հետևապես, քիմիացումը կուղեկցվի մետաղահատ հաստոցների նկատմամբ արտադրության պահանջի որոշ կրճատմամբ և, ընդհակառակը, դարբնոցա-մամլակային հաստոցների պահանջի ավելացմամբ, համապատասխանորեն և սարքավորումների այդ 2 կարևոր խմբերի հարաբերակցության փոփոխությամբ։ Հաշվարկները ցույց են տալիս, որ միայն վերոհիշյալ երկու տիպի մեքենաների արտադրության քիմիացման շնորհիվ 1970 թ. ժողովրդական տնտեսությունը կտանա 8 մլն ռուբլի տնտեսում, որից 4,6 մլնը կապիտալ ներդրումների կրճատման հաշվին։

Բերված օրինակները գիտատեխնիկական առաջադիմության և հիմնական ֆոնդերի նորացման սերտ կապի ու պայմանավորվածության վկայությունն են։

Գիտատեխնիկական առաջադիմության ծավալման և հանրային արտադրության արդյունավետության բարձրացման շահերը պահանջում են հիմնական ֆոնդերի նորացման մեթոդների ռացիոնալ զուգորդում և համամասնական ծավալում։ Հիմնական ֆոնդերի կազմում առաջադիմական մեքենաների ու սարքավորումների բաժնի ավելացումը ձեռք է բերվում ինչպես մեքենայական պարկի ընդլայնման, նույնպես և ֆիզիկապես ու բարոյապես հնացած սարքավորումը նորով փոխարինելու կամ կատարելագործելու ուղիով։

Հիմնական ֆոնդերի վերոհիշյալ ուղիների ազդեցությունը հանրային արտադրության արդյունավետության բարձրացման գործում միատեսակ չէ։ Առավել արդյունավետ պետք է համարել հիմնական ֆոնդերի ինտենսիվ նորացումը։ Արտադրության արդյունավետության բարձրացման վճռական գործոնն այս դեպքում ո՛չ թե կուտակման ֆոնդի ծավալային աճն է, այլ արտադրաապարատի մեկ միավորի արդյունավետության բարձրացումը։

Գիտատեխնիկական առաջադիմության ազդեցության տակ արտադրության աճի գործոնների նման վերախմբավորման փաստն ընդգծել է դեռևս Կ. Մարքսը. «Գիտությունն ու տեխնիկան գործող կապիտալին հաղորդում են ընդարձակման մի այնպիսի կարողություն, որը կախված չէ նրա տվյալ մեծությունից» (Կապիտալ, հ. I, էջ 634)։

Հիմնական ֆոնդերի որակական կատարելագործման և արտադրության արդյունավետության վրա իրենց ներգործության աստիճանով նորացման վերոհիշյալ եղանակները կարելի է բնորոշել որպես էքստենսիվ ու ինտենսիվ։ Հիմնական ֆոնդերի նորացման մակարդակն ուղիղ համեմատական է էքստենսիվ ու ինտենսիվ եղանակների հարաբերակցությանը։ Այլ հավասար պայմաններում, նոր գործարկված հիմնական ֆոնդերի կազմում որքան բարձր է փոխարինող աշխատամիջոցների բաժինը, այնքան բարձր է նորացման մակարդակը և մեծ է դրա ազդեցությունը արտադրանքի թողարկման հանրորեն անհրաժեշտ ծախսումների կրճատման վրա։

Մեր հանրապետության արդյունաբերության հիմնական ֆոնդերի վերարտադրության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ տարեցտարի կատարելագործվում ու նորացվում են արդյունաբերական հիմնական արտադրաֆոնդերը։ 1962—1966 թթ. վիճակագրական տվյալների համաձայն, հիմնական արտադրաֆոնդերի նորացման գործակիցը (ըստ տարիների) տատանվում է 0,09—0,13 սահմաններում, ընդ որում հատկանշական է հիշյալ ցու-

ցանիշի գերազանցումը արդյունաբերության միջին ցուցանիշին մեքենաշինության, քիմիական արդյունաբերության մեջ և գունավոր մետալուրգիայում։

Արդյունաբերության առանձին ճյուղերի հիմնական արտադրաֆոնդերի նորացման մակարդակի մասին պատկերացում կարելի է կազմել ստորև բերվող աղյուսակի տվյալներից.

Հիմնական արտադրաֆոնդերի նորացման գործակցի դինամիկան

| | 1962 | 1963 | 1964 | 1965 | 1966 |
|---|---|---|---|---|---|
| Ամբողջ արդյունաբերությունը | 0,123 | 0,119 | 0,105 | 0,088 | 0,127 |
| այդ թվում՝ | | | | | |
| Մեքենաշինություն և մետաղամշակություն | 0,167 | 0,142 | 0,163 | 0,125 | 0,133 |
| Գունավոր մետալուրգիա | 0,069 | 0,276 | 0,128 | 0,053 | 0,128 |
| Քիմիական արդյունաբերություն | 0,338 | 0,095 | 0,177 | 0,071 | 0,162 |
| Թեթև արդյունաբերություն | 0,06 | 0,08 | 0,117 | 0,099 | 0,189 |

Վիճակագրական տվյալները ցույց են տալիս, որ նորացումն իրականացվել է գերազանցապես էքստենսիվ եղանակով։ Երկար տարիներ ֆիզիկապես մաշված ու բարոյապես հնացած սարքավորման փոխարինման պրոցեսը դանդաղ է ընթացել։ 1962—1964 թթ. հիմնական ֆոնդերի փոխարինման նպատակով է ծախսվել նոր գործարկված ֆոնդերի միայն 5—10 տոկոսը։ Այս ցուցանիշը համեմատաբար բարձր է եղել գունավոր մետալուրգիայում և թեթև արդյունաբերությունում։ Մեքենաշինության մեջ ինտենսիվ նորացման գործակիցը (նշված տարիներին) չի գերազանցել 0,044-ից. այդ նշանակում է, որ նոր գործարկված ֆոնդերի 95 տոկոսից ավելին հատկացվել է արտադրական ոլորտի ընդլայնմանը, իսկ մնացածը՝ փոխարինմանը։ Բայց 1965—1966 թթ. նորացման եղանակների հարաբերակցության մեջ էական տեղաշարժեր են նկատվում։ Այդ տարիներին ինտենսիվ նորացման գործակիցն արդյունաբերության մեջ բարձրացել է 0,145—0,177-ի, մեքենաշինության մեջ՝ 0,102, 0,107։ Չնայած վերջին տարիներին հանրապետության արդյունաբերության մեջ էքստենսիվ ու ինտենսիվ եղանակների հարաբերակցության փոփոխությունը տեղի է ունեցել հօգուտ վերջինի, սակայն մաշվածության և հնացածության հետևանքով հիմնական ֆոնդերի ելքի փաստացի ցուցանիշը մեծ չափով ետ է մնում ամորտիզացիոն նորմաների հաշվարկման հիմքում ընկած ելքի գործակցից։

Արդյունաբերության մեջ հնացածության ու մաշվածության հետևանքով օգտագործումից հիմնական ֆոնդերի հանման նորմատիվային և փաստացի գործակիցների շեղումը տատանվում է 40—75 տոկոսի սահմաններում։ Ճիշտ է, տեսական, ինչպես նաև գործնական նկատառումներով վերոհիշյալ գործակիցների բացարձակ համընկնում չի կարելի սպասել, այնուամենայնիվ, ինտենսիվ նորացման դանդաղ տեմպերի մասին է վկայում դրանց շեղման մեծ ամպլիտուդան։

Արտադրության զարգացման ժամանակակից էտապում, երբ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումի և XXIII համագումարի որոշումների լույսի տակ տնտեսական մեծ բարեփոխումներ են կատարվում, արտադրության զարգացման գործոնների մեջ վճռական նշանակություն են ստանում ինտենսիվ բնույթի գործոնները։ Կարևոր նշանակություն ունի նաև ֆիզիկապես մաշված և բարոյապես հնացած աշխատամիջոցները նորերով փոխարինելը։ Այդ կապակցությամբ կարևոր է շահագործման մեջ գտնվող ֆիզիկապես մաշված ու բարոյապես հնացած սարքավորման չափի բացահայտումը և օգտագործումից դրանց հանման պրոցեսի պլանավորումը։ Ցավոք, հիմնական ֆոնդերի հաշվառման և հաշվետվության գործող կարգը ստույգ պատկերացում չի տալիս հնացած առկա սարքավորման չափերի մասին։



Հայտնի է, որ ԿՎՎ մեքենաների ու սարքավորումների հասակային կազմի հաշվառում անց է կացվում պարբերաբար (մի քանի տարին մեկ անգամ)։ Արդյունաբերության մեքենայական պարկի հասակային գործոնի վերաբերյալ վերջին տվյալները վերաբերում են 1962 թ., ըստ որի, հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում տեղակայված մետաղահատ և դարբնոցա-մամլակային հաստոցների 25 տոկոսից ավելին օգտագործվում է ավելի քան 10 տարի։

Հաջորդ տարիներին հնացածության ու մաշվածության հետևանքով հիմնական ֆոնդերի ելքի գործակիցը բավականին ցածր է և այդ պատճառով հանրապետության արդյունաբերության հիմնական ֆոնդերի և, հատկապես, ակտիվ գործող տարրի՝ մեքենաների հասակային կազմի լավացման գործում էական փոփոխություն չի նկատվում։ Այդ մասին պատկերացում է տալիս ստորև բերված աղյուսակը։

Հիմնական ֆոնդերի ելքը (տոկոսներով)

| ՏԱՐԻՆԵՐ | Ամբողջ արդյունաբերությունը | ԱՅԴ ԹՎՈՒՄ | | | |
|---|---|---|---|---|---|
| | | Մեքենաշինություն և մետաղամշակություն | Գունավոր մետալուրգիա | Քիմիական արդյունաբերություն | Թեթև արդյունաբերություն |
| 1962 | 0,89 | 0,91 | 0,92 | 0,28 | 0,85 |
| 1963 | 0,70 | 0,75 | 1,41 | 0,25 | 1,35 |
| 1964 | 1,10 | 0,82 | 3,20 | 0,83 | 1,67 |
| 1965 | 1,61 | 1,51 | 3,03 | 1,35 | 2,3 |
| 1966 | 2,10 | 1,55 | 2,9 | 1,5 | 4,5 |

Տվյալներից երևում է, որ մաշվածության ու հնացածության հետևանքով 1962—66 թթ. հանրապետության արտադրության հիմնական ֆոնդերի ելքը (ըստ տարիների) տատանվում է 0,7—2,1 տոկոսի սահմաններում, ընդ որում, հատկանշական է ելքի գործակցի արժեքի բարձրացումը վերջին տարիներին։ Մաշված աշխատամիջոցները օգտագործումից հանելու և նորով փոխարինելու տեմպերը հատկապես ցածր են մեքենաշինության ու մետաղամշակման ճյուղում, որոնց հիմնական ֆոնդերի տեխնիկական կատարելագործման խնդիրն առաջնահերթ նշանակություն ունի։ Հնացածության ու մաշվածության հետևանքով մեքենաշինության մեջ հիմնական ֆոնդերի ելքը 1966 թ. կազմում էր 1,55 տոկոս, որն իր մեծությամբ 2,4 անգամ զիջում է ամորտիզացիայի հիմքում ընկած ելքի գործակցին։ 1966 թ. հանրապետության արդյունաբերության մեջ հնացածության ու մաշվածության պատճառով օգտագործումից հանվել է հիմնական ֆոնդի 2,1 տոկոսը։ Չնայած ելքի գործակցի բարձրացմանը, այնուամենայնիվ, ժամանակակից, գիտատեխնիկական առաջադիմության պայմաններում այն բավարար համարել չի կարելի։

Օգտագործումից հիմնական ֆոնդերի մաշված տարրերի հանման նման տեմպերի պայմաններում մեքենաշինության մեջ մեքենայական պարկի հասակային գործոնի էական բարելավում չի լինի։ Հնացած սարքավորումների բացարձակ մեծությունը մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության մեջ հասնում էր 4732 միավորի։ Եթե պայմանականորեն ընդունենք, որ 1962 թ. հետո հնացած սարքավորումների դուրս բերման և մինչև 10 տարի օգտագործած սարքավորումների հասակի ավելացման տեմպերը համընկել են, ապա կնշանակի, որ մոտակա 5 տարիների ընթացքում ֆիզիկապես և բարոյապես մաշված սարքավորումների վերացման նպատակով կպահանջվի օգտագործումից տարեկան հանել մոտ 950 միավոր։

Իրականում այդ մեծությունն ավելին է, որի մասին է վկայում առանձին մեքենաշինական ձեռնարկությունների մեքենայական պարկի հասակային կազմի ուսումնասիրությունը։ Այսպես, Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում 1968 թ. սկզբին, 10 տարուց ավելի օգտագործման մեջ գտնվող սարքավորման բաժինը մետաղահատ հաստոցների խմբում կազմում էր 40,4 տոկոս (1962 թ. 38,8 տոկոսի դիմաց)։

1968 թ. սկզբին մետաղամշակման հաստոցների ծավալը հանրապետության արտադրության մեջ հասնում է մոտ 15 հազարի. այդ նշանակում է՝ անհրաժեշտ է տարեկան նորացնել (փոխարինման և մոդեռնացման եղանակով) հաստոցային պարկի մոտ 6 տոկոսը։ Որոշ տնտեսագետների հաշվարկներով (տե՛ս «Вестник машиностроения», 1966, № 7, стр. 71) 100 միավոր նոր կոնստրուկցիայի հաստոցների տեղակայումը հնարավորություն կընձեռի օգտագործումից հանել 140—145 միավոր հնացած կոնստրուկցիայի սարքավորում, որի շնորհիվ 300—350 հազար ռուբլով կկրճատվեն հաստոցների շահագործողական ծախսերը, կազատվեն արտադրական հրապարակները։ Ելնելով այս օրինաչափությունից (ըստ մեր հաշվարկների), եթե նշված ծավալի սարքավորման միայն կեսը փոխարինվի նորով (մնացած կեսը՝ մոդեռնացվի), ապա արտադրանքի ծավալի անփոփոխ պայմաններում տարեկան կպահանջվի 340 միավոր նոր սարքավորում, որոնց տեղակայմամբ կտնտեսվեն շահագործողական ծախսերը (1 մլն ռուբլուց ավելի)։ 1,4 հերթափոխության գործակցի պայմաններում կազատվի մոտ 190 բարձր որակավորում ունեցող բանվոր (որի պահանջը սուր զգացվում է արդյունաբերության մի շարք ճյուղերում) և տարեկան կտնտեսվի մոտ 220 հազար ռուբլի։

Արդյունաբերական ձեռնարկությունների արտադրական ոլորտի բարելավումն ու նոր տեխնիկայով վերազինումը տեխնիկական առաջադիմության և արտադրության արդյունավետության բարձրացման հրամայական պահանջն է։

ՇԱԽՈՅԱՆ ԳՈՀԱՐ



# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

ԲԱՅՐԱՄՅԱՆ Լ. Ա.

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ 50-ԱՄՅԱԿԻ ՏԱՐԻՆ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության բարերար ազդեցության շնորհիվ Գերմանիայում հեղափոխական շարժումները բուռն վերելք ապրեցին։

Համաշխարհային իմպերիալիստական պատերազմից դժգոհ մասսաները երես էին դարձրել աջ օպորտունիստներից և ձախ սոցիալ-դեմոկրատների ղեկավարությամբ, հակապատերազմյան ցույցեր կազմակերպելով ողջունում էին Ռուսաստանում սովետական իշխանության հաստատումը, կառավարությունից պահանջում հաշտություն կնքել բանվորա-գյուղացիական պետության հետ։

Լենինյան գաղափարների ազդեցության տակ, հեղափոխական գործին նվիրված սպարտակյանները, ձերբազերծվելով սոցիալ-դեմոկրատիզմի օպորտունիստական հայացքներից, ընդունեցին բոլշևիկյան տեսակետը։ Նրանք առաջ քաշեցին «Գլխավոր թշնամին գտնվում է սեփական երկրում» լոզունգը, ուր քննադատում էին սոցիալիզմի գործին դավաճանած շեյդեմանականների ու կաուցկիականների սոցիալ-շովինիստական քաղաքականությունը։ Ձախ սոցիալ-դեմոկրատների դեռևս 1916 թ. հիմնած «Սպարտակ խումբը», որը դարձավ Գերմանիայի ապագա կոմունիստական կուսակցության սաղմը, երկար ժամանակ չկարողացավ հաղթահարել իր կազմակերպական ու գաղափարական թուլությունը։

1917 թ. «Սպարտակ խումբը» մտավ Գերմանիայի անկախ սոցիալ-դեմոկրատական կուսակցության մեջ, որի լիդերները սոցիալ-շովինիստներից տարբերվում էին զուտ հեղափոխական ֆրազներով, ընդունում պրոլետարիատի պայքարի միայն պառլամենտական ուղին։ Չնայած այդ սխալին, սպարտակյանները ղեկավարում էին պրոլետարիատի պայքարը կառավարության՝ պատերազմի շարունակման քաղաքականության դեմ։

Հոկտեմբերյան օրերին ձախերը խնդիր էին դրել՝ տապալել բուրժուական կարգերը, իշխանությունը հանձնել սովետներին և Սովետական Ռուսաստանի հետ բարեկամական սերտ հարաբերություններ հաստատել։

«Սպարտակ խումբն» իր հերոսական գործունեությամբ, բռնակալական կարգերի պայմաններում պրոլետարիատին ցույց տվեց քաղաքական պայքարի ճիշտ ուղին, «փրկեց գերմանական սոցիալիզմի և գերմանական պրոլետարիատի պատիվը» (Լենին, Երկեր, հ. 35, էջ 404)։ Կազմակերպչորեն չձևավորվելով որպես ինքնուրույն կուսակցություն, «Սպարտակ խումբը» 1918 թ. նոյեմբերյան հեղափոխության ժամանակ չկարողացավ ապահովել հեղափո-

խական պրոլետարիատի ղեկավարությունը։ Աջ սոցիալ-դեմոկրատներն ու անկախականները, օգտվելով սպարտակյանների թուլությունից, բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների սովետներում կազմեցին մեծամասնություն, իրենց ձեռքը վերցրին կենտրոնական կառավարությունը և Գերմանիայում հաստատեցին բուրժուական հանրապետություն։ Նրանք մերժեցին երկիրը սոցիալիստական հանրապետություն հռչակելու, օրենսդիր և գործադիր իշխանությունը սովետներին հանձնելու, կառավարության կազմից բուրժուա մինիստրներին հեռացնելու «Սպարտակ խմբի» պահանջները։

Համաձայն չլինելով սոցիալիստ-դավաճանների քաղաքականությանը, սպարտակյանները, հեղափոխությունը գլխավորելու նպատակով, իրենց խումբը վերակազմեցին և վերանվանեցին «Սպարտակ միություն»։ Միության Կենտկոմի կազմում ընտրվեցին գերմանական ժողովրդի լավագույն զավակները, բանվորական շարժման ականավոր գործիչներ՝ Կ. Լիբկնեխտը, Ռ. Լյուքսեմբուրգը, Լ. Իոգիխեսը, Վ. Պիկը և Ֆ. Մերինգը։ Այսպիսով, ձախ սոցիալ-դեմոկրատները մի քայլ ևս կատարեցին ինքնուրույն մարքսիստական կուսակցություն ստեղծելու ճանապարհին։

Աջ օպորտունիստներ էբերտի և Շեյդեմանի սոցիալ-դեմոկրատական կառավարությունը պահպանեց մոնոպոլիստների և յունկերների տիրապետությունը, չլուծեց ագրարային հարցը, զինված ուժերը ուղղեց հեղափոխությունը ճնշելուն և Սովետական Ռուսաստանի նկատմամբ շարունակեց վարել թշնամական քաղաքականություն։

Կառավարության հակադեմոկրատական քաղաքականությունը ոտքի հանեց պրոլետարիատին, գործադուլային շարժումների նոր ալիք բարձրացավ։ Մասսաների ճնշման տակ հեղափոխության հրատապ հարցերը լուծելու համար հրավիրվեց համագերմանական սովետների համագումար։

1918 թ. դեկտեմբերի 16-ին, սովետների համագումարի բացման օրը, Բեռլինի 250-հազարանոց ցուցարարները, սպարտակյան առաջնորդների գլխավորությամբ, համագումարից պահանջեցին՝ կառավարությունից հեռացնել դավաճաններ էբերտին և Շեյդեմանին, Գերմանիան հռչակել սոցիալիստական հանրապետություն, իշխանությունը հանձնել բանվորների և զինվորների պատգամավորների սովետին, անմիջապես ազգայնացնել արդյունաբերությունը, զինել պրոլետարիատին, զինաթափել բուրժուազիային, կազմել կարմիր գվարդիա և պայքարել պրոլետարական Գերմանիայի ներքին ու արտաքին թշնամիների դեմ։

Սովետների համագումարը, որի ղեկավարությունը աջ և անկախ սոցիալ-դեմոկրատների ձեռքում էր, հաշվի չառավ պրոլետարական մասսաների պահանջները, որոշեց 1919 թ. հունվարին անցկացնել սահմանադիր ժողովի ընտրություններ, իսկ մինչ այդ՝ իշխանությունը թողնել էբերտի և Շեյդեմանի ձեռքում։ Դրա հետևանքով սովետները ենթարկվեցին ինքնալուծարքի, որը գերմանական հեղափոխության ողբերգությունն էր։

Նոյեմբերյան հեղափոխության պարտության պատճառը սոցիալ-շովինիստների դավաճանությունն էր, մարքսիստական կուսակցության բացակայությունը։ Ինչպես նշել է Է. Թելմանը, «Սպարտակ միության» հեղափոխական բնազդը, նրա առանձին առաջնորդների հերոսությունը չէր կարող փոխարինել հեղափոխական պայքարի բովում փորձված ու պողպատի նման կոփված կուսակցությանը» (Избранные статьи и речи, М., 1958, т. II, стр. 9—10)։

Սոցիալ-դեմոկրատական լիդերների օպորտունիստական, դավաճանական քաղաքականությունից հիասթափված սպարտակյանները որոշեցին հրավիրել կոմունիստական կուսակցության հիմնադիր համագումար։

Այդ նպատակով 1918 թ. դեկտեմբերի 29-ին, Բեռլինում, սպարտակյանների նախաձեռնությամբ կայացավ ինտերնացիոնալիստների կոնֆերանս։ Հաջորդ օրը բացվեց Գերմանիայի կոմունիստական կուսակցության (ԳԿԿ) հիմնադիր համագումարը, որտեղ Կ. Լիբկնեխտը զեկուցեց ԳՍԴԿ ճգնաժամի ու ԳԿԿ հիմնադրման, իսկ Ռ. Լյուքսեմբուրգը՝ երկրի քաղաքական ճգնաժամի ու կոմկուսի ծրագրի մասին։



Համագումարը նշեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության պատմական նշանակությունը, վճռականորեն հանդես եկավ սոցիալիստական հեղափոխության հացեին զրպարտանքներ տարածող բուրժուազիայի ու սոցիալ-դեմոկրատների դեմ, իր համերաշխությունը հայտնեց Ռուսաստանի սովետական հանրապետությանը և խիստ դատապարտեց իմպերիալիստական կառավարությունների հակասովետական քաղաքականությունը։ Համագումարը «Ի՞նչ է ցանկանում» «Սպարտակ միությունը» կոչն ընդունեց որպես ԳԿԿ ծրագիր։

Այսպիսով, ԳԿԿ-ն ծնվեց նոյեմբերյան հեղափոխության բովում։ Այդ Հոկտեմբերյան հեղափոխության բարերար ազդեցությունն էր գերմանական պրոլետարիատի վրա, 1917—1918 թթ. մասսայական հեղափոխական շարժումների կարևորագույն արդյունքը, մարքսիզմ-լենինիզմի հաղթանակը՝ սոցիալ-դեմոկրատական գաղափարախոսության հանդեպ։ ԳԿԿ հիմնադրումը պատմական անհրաժեշտություն էր, օրինաչափ երևույթ։ Հանձին ԳԿԿ ստեղծվեց իսկական ազգային, բանվորական-հեղափոխական կուսակցություն։ Նա կանգնեց Սովետական Ռուսաստանի հետ բարեկամության քաղաքականություն հաստատելու դիրքերում, բարձրացրեց ազգային ճնշման ու սոցիալական ստրկության դեմ պայքարի դրոշը։

Գերմանիայի կոմկուսն իր հիմնադրման առաջին օրից պայքարեց ազգային ու սոցիալական ճնշման, միլիտարիզմի ու պատերազմի դեմ, մարտնչեց աշխատավորների դեմոկրատական իրավունքների և ազատության համար, ժողովրդին ցույց տվեց ազգային կործանումից փրկվելու, կայուն խաղաղություն ստեղծելու և հասարակության առաջադիմության ուղիները։ ԳԿԿ հիմնադիր համագումարի որոշումներում սպրդած սխալները ատաճանաբար հաղթահարվեցին, և կուսակցությունը զինվեց մարքս-լենինյան անհաղթ ուսմունքով։ ԳԿԿ հիմնադրումը խոշոր իրադարձություն էր երկրի քաղաքական կյանքում, շրջադարձային կետ Գերմանիայի բանվորական շարժման պատմության մեջ։ Այն մեծ նշանակություն ունեցավ նաև միջազգային բանվորական շարժման, կոմունիստական ինտերնացիոնալի հիմնադրման գործում։ «Երբ «Սպարտակ միությունը» իրեն անվանեց «Գերմանիայի կոմունիստական կուսակցություն»,— գրում է Վ. Ի. Լենինը,— այն ժամանակ իրոք պրոլետարական, իրոք ինտերնացիոնալիստական, իրոք հեղափոխական III ինտերնացիոնալի, կոմունիստական ինտերնացիոնալի հիմնադրումը դարձավ փաստ» (Երկեր, հ. 28, էջ 559)։

Բուրժուազիան ու նրան սպասարկու սոցիալ-դեմոկրատները, սարսափելով ԳԿԿ-ից, համախմբվեցին նրա դեմ և չխնայելով անգամ ԳԿԿ առաջնորդներ Կ. Լիբկնեխտին և Ռ. Լյուքսեմբուրգին, կազմակերպեցին նրանց սպանությունը։ Սակայն բուրժուազիայի բռնությունները չընկճեցին կոմունիստների աննկուն ոգին, ԳԿԿ-ն դարձավ մասսայական կուսակցություն, պրոլետարիատի հեղափոխական պայքարի գաղափարական, մարտական դրոշը։

Կ. Լիբկնեխտը և Ռ. Լյուքսեմբուրգը բանվորական շարժման տաղանդավոր, անվեհեր գործիչներ էին։ Նրանք իրենց ներքին համոզմունքով ու վճռականությամբ բարձրացնում էին մասսաների սոցիալական պայքարի մարտական ոգին, կռում ու կոփում նրանց կամքը։ Նրանց ողջ կյանքը անդուլ պայքար էր շահագործողների ու բռնակալների դեմ, իսկ գործունեությունը՝ հերոսություն և անձնուրացություն։ Նրանք բանվորական շարժման առաջնորդների անմահ տիպարներ էին, որոնց անունն ու արյունը տասնյակ հազարավոր բանվորների կյանքի ու մահվան պայքարի մղեց կապիտալի տիրապետության դեմ։

ԳԿԿ գործունեությունը ֆաշիզմի, միլիտարիզմի, ռևանշիզմի, պատերազմի քաղաքականության դեմ մղած հետևողական պայքարի և պրոլետարիատի դասակարգային մարտերի ղեկավարման պատմությունն է։ ԳԿԿ պատմության վառ էջերից են՝ Բավարիայում սովետական իշխանության հաստատումը, Բեռլինում իշխանությունը նվաճած միապետականներ Կապպի-Լյուտվիցի կառավարության տապալումը, Անտանտայի III արշավանքի ժամանակ՝ «Ձեռքերդ հեռո՛ւ Սովետական Ռուսաստանից» քաղաքական կամպանիայի

կազմակերպումը, 1921 թ. անբերրիության հետևանքով սկսված սովի տարիներին սովետական քաղաքացիներին ցույց տված օգնությունը, ֆրանսիական և բելգիական իմպերիալիստների կողմից Ռուրի մարզի օկուպացիայի դեմ պայքարը, Հռենոսի մարզում Կ. Ադենաուերի ղեկավարած սեպարատ շարժման ձախողումը, 1923 թ. հունիսի 29-ին հակաֆաշիստական օրվա անցկացումը, 1923 թ. Համբուրգի պրոլետարիատի զինված ապստամբության ղեկավարումը, որի մասին Է. Թելմանը գրել է՝ Համբուրգի հեղափոխական բանվորները «փրկեցին Գերմանիայի կոմունիստական կուսակցության պատիվը»։

1923 թ. վերջերից հեղափոխական շարժումների մակընթացությունը փոխվում է տեղատվության, կապիտալիզմի ժամանակավոր կայունացման տարիներին ԳԿԿ-ն զտում է իր շարքերը աջ և «ձախ» թեքումներից, աստիճանաբար ուղղում գաղափարական սխալներն ու հաղթահարում կազմակերպական թուլությունը։ 1925 թ. հոկտեմբերյան կոնֆերանսի ժամանակ կուսակցության մարքսիստական կորիզից ստեղծվում է լենինյան Կենտկոմ Է. Թելմանի գլխավորությամբ։ Այդ ժամանակ ԳԿԿ-ն դարձավ մասսայական հեղափոխական մարքսիստական կուսակցություն (տե՛ս 35 лет коммунистической партии Германии, стр. 16)։

Համաշխարհային տնտեսական ճգնաժամի տարիներին ԳԿԿ-ն պրոլետարիատի տնտեսական և քաղաքական իրավունքների համար մղած պայքարի ոգեշնչողն ու կազմակերպիչն էր։ Սուր դասակարգային պայքարը ցնցեց կապիտալիզմի հիմքերը, և Գերմանիայի մոնոպոլիստները այլևս չէին կարողանում երկիրը ղեկավարել բուրժուական դեմոկրատիայի մեթոդներով և 1933 թ. հունվարին իշխանությունը հանձնեցին ֆաշիստներին։ Գերմանիայում ստեղծվեց ֆաշիստական դիկտատուրա, որն ամենառեակցիոն, ամենաագրեսիվ ուժերի արյունալի տեռորիստական դիկտատուրան էր, ռեակցիայի և տոտալիտարիզմի գերիշխանությունը։ Երկրում սկսվեց սև մղձավանջի շրջան, որը մեծ աղետ բերեց մարդկությանը։ Ֆաշիստները հրկիզեցին Ռայխստագի շենքը, մտումնավոր ձևով մեղադրեցին ԳԿԿ-ն և արգելեցին նրա գործունեությունը։ Նրանք Լայպցիգում դատավարություն սարքեցին, որտեղ աշխարհով մեկ հնչեց ֆաշիստների ստոր, հակամարդկային գործարքները մերկացնող Գ. Դիմիտրովի մեղադրական խոսքը։

Նախապատրաստվելով պատերազմի, ֆաշիստները երկրում ստեղծեցին զորանոցային ռեժիմ, 18—25 տարեկան երկսեռ երիտասարդների համար աշխատանքային պարհակ մտցրին։ Գերմանիայում ամենուր վխտում էին տեռորիստների ու լրտեսների ոհմակները, համակենտրոնացման ճամբարները լցվեցին քաղաքական բանտարկյալներով, հրահրվեց ներկուսակցական օպոզիցիայի ջարդ։ Էկոնոմիկան փոխադրվեց ռազմական ռելսերի վրա, մտցվեց պարտադիր զինվորական ծառայություն, ծավալվեց ռասայականության թեորիայի պրոպագանդան։

ԳԿԿ նախաձեռնությամբ հայրենասիրական ուժերից ընդհատակում կազմակերպվում է հակաֆաշիստական ճակատ, որը սկսում է պայքարել ֆաշիզմի ու նրա պատերազմական քաղաքականության դեմ՝ հանուն ազգային փրկության։ Հակաֆաշիստական շարժման ոգեշնչողները կոմունիստներն էին։ 1939 թ. ամռանը ԳԿԿ հրապարակած կոչում ասված էր՝ կոմունիստները սիրում են հայրենիքը, դրա համար ֆաշիստների երդվյալ թշնամիներն են, նրանց ազգադավ քաղաքականությունը Գերմանիայից կխլի միլիոնավոր մարդկային զոհեր, քաղաքներն ու գյուղերը կվերածվեն ավերակների և Գերմանիան կկանգնի ազգային կործանման առջև։ Կոչը պահանջում էր, որ գերմանացիները համախմբվեն ժողովրդական ճակատում, տապալեն Հիտլերի դիկտատուրան և Գերմանիան փրկեն ազգային աղետից։ Երբ ֆաշիստները հարձակվեցին ՍՍՀՄ վրա, ԳԿԿ-ն, դիմելով աշխատավորությանը, ասում է, որ գերմանական ժողովուրդը պետք է ինքը տնօրինի իր երկրի բախտը, վերջ դնի պատերազմին, կնքի պատվավոր հաշտություն, երկիրը փրկի անխուսափելի ավերումից։ Նոր Գերմանիան կլինի աշխատավորների՝ հավասարը հավասարների մեջ, խաղաղասիրական երկիր։

ԳԿԿ-ն իր որոշումները կենսագործելու համար հիմնում է բազմաթիվ



ընդհատակյա խմբեր։ Ֆաշիստների տեռորը չընկճեց կոմունիստների մարտական ոգին, ֆաշիզմի դեմ հաղթանակի հավատը։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ԳԿԿ-ն սկսեց պայքարել հանուն միասնական դեմոկրատական և խաղաղասիրական Գերմանիայի։ Սակայն ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի իմպերիալիստական կառավարությունները հրաժարվեցին Ղրիմի ու Պոտսդամի կոնֆերանսների որոշումներից, իրենց օկուպացիոն գոտիներում հովանավորեցին գերմանական մոնոպոլիստական կապիտալին, վերականգնեցին նրանց տնտեսական, ռազմական պոտենցիալը և 1949 թ. սեպտեմբերին հիմնեցին Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունը (ԳՖՀ)։

Ներկայումս արևմտագերմանական կառավարությունը վարում է միլիտարիստական, ռևանշիստական քաղաքականություն, Հյուսիս-ատլանտյան ագրեսիվ ռազմական բլոկի միջոցով ձգտում սպառազինվել ջերմամիջուկային զենքով։ Պատերազմից հետո վերականգնված գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության նոր լիդերները սերտորեն համագործակցում են մոնոպոլիաների հետ։ Արևմտյան Գերմանիայում կոմունիստական կուսակցությունը հայտարարվեց օրենքից դուրս։

Գերմանիայի արևելյան օկուպացիոն գոտում պրոգրեսիվ ուժերը ՍՍՀՄ օգնությամբ դեմոկրատական կարգեր հաստատեցին։ Արևելյան գոտու կոմունիստները և սոցիալ-դեմոկրատները 1946 թ. միավորվեցին և հիմնեցին Գերմանիայի սոցիալիստական միասնական կուսակցություն (ԳՍՄԿ)։ ԳՍՄԿ շնորհիվ նպաստավոր պայմաններ ստեղծվեց երկրի հետագա դեմոկրատացման համար։ 1949 թ. հոկտեմբերի 7-ին հիմնվեց Գերմանիայի Դեմոկրատական Հանրապետությունը (ԳԴՀ)։ Գերմանիայի պատմության մեջ այն առաջին դեմոկրատական, խաղաղասիրական պետությունն է, որտեղ իշխանությունը պատկանում է բանվորներին ու գյուղացիներին և կառուցվում է սոցիալիստական հասարակարգ։

Երկրորդ համաշխարհային պատերազմում քայքայված էկոնոմիկան վերականգնելու և զարգացնելու համար ԳՍՄԿ-ն մշակում է ժողովրդական տնտեսության զարգացման պլաններ, որոնք շնորհիվ ժողովրդի խանդավառության, աշխատանքային սխրագործությունների, ինչպես նաև ՍՍՀՄ ու մյուս սոցիալիստական երկրների ցույց տված բազմակողմանի, անշահախնդիր օգնության, կատարվեցին ու գերակատարվեցին։

ԳԴՀ-ն դարձել է ինդուստրիալ պետություն, ուր լուծվում է նաև գյուղի սոցիալիստական վերակառուցման հարցը։

Այժմ ԳԴՀ-ն արդյունաբերական արտադրանքով Եվրոպայում բռնում է 5-րդ, աշխարհում 10-րդ տեղը։ Մեկ շնչի հաշվով էլեկտրաէներգիայի արտադրությամբ ԳԴՀ-ն առաջ է անցել ԳՖՀ-ից, Ֆրանսիայից, Իտալիայից, Բելգիայից. գորշ քարածխի հանույթով գերազանցում է բոլոր կապիտալիստական երկրներին։ ԳԴՀ ժողովրդական տնտեսության մեջ մեծ տեղ է գրավում քիմիական արդյունաբերությունը, որի զարգացման համար ավելի մեծ հեռանկար բացեց «Բարեկամություն» նավթամուղով սովետական նավթի մատակարարումը։ ԳԴՀ-ն մեքենաներ է տրամադրում սոցիալիստական լագերի երկրներին և մեծ քանակությամբ արտահանում կապիտալիստական շուկա։ Նրա էքսպորտի 47,4 տոկոսը մեքենաշինական արդյունաբերության արտադրանքն է։ ԳԴՀ-ն իր տեմպերով առաջ է անցել բոլոր կապիտալիստական երկրներից։ 1951—1966 թթ. նրա արդյունաբերության զարգացման տարեկան միջին աճը կազմեց 9,3 տոկոս, մինչդեռ ԱՄՆ-ինը՝ 4,7 է, Անգլիայինը՝ 3, ԳՖՀ-ինը՝ 7,6, Ֆրանսիայինը՝ 5,7 տոկոս։

Բուրժուական տնտեսագետները, անդրադառնալով ԳՖՀ էկոնոմիկայի զարգացման արագ տեմպերին, այն հրաշք են համարում։ Սակայն իսկական հրաշքը ԳԴՀ-ում է։ ԳՖՀ-ն, իմպերիալիստական պետությունների օգնությամբ, վերականգնեց պատերազմում քայքայված էկոնոմիկան, մինչդեռ ԳԴՀ-ում, ԳՍՄԿ ղեկավարությամբ, բանվոր դասակարգը կառուցեց նոր՝ սոցիալիստական հասարակարգ, որի արդյունաբերության զարգացման տեմպերն անհամեմատ բարձր են, քան ԳՖՀ-ինը։

Կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների պայքարը մի ազգի ներսում ունի միջազգային նշանակություն, քանի որ այստեղ ավելի ակնհայտ է երևում սոցիալական նոր գոյաձևի առավելությունը, նույն ազգի տարբեր սոցիալական կարգերի պայմաններում գտնվող հատվածների սոցիալական առաջադիմության մակարդակը։ ԳԴՀ-ում ընդմիշտ վերացել է գործազրկությունը՝ բուրժուական հասարակարգի սոցիալական չարիքը, բարձրացել աշխատավորության գնողունակությունը։ 1967 թ. աշխատավարձի մինիմումը 220-ից հասավ 300 մարկի, դիֆերենցված կարգով բարձրացվեց մինչև 400 մարկ ստացողների աշխատավարձը, որից շահեցին 800 հազար աշխատավոր։

Բարձրացվել են բազմազավակ ընտանիքներին տրվող նպաստները, կենսաթոշակների նվազագույն չափը 120-ից հասել է 150 մարկի։ Լուրջ ուշադրություն է նվիրվում նաև բնակարանային շինարարությանը։ Միայն 1966 թ. աշխատավորներն ստացել են 65,3 հազար բարեկարգ նոր բնակարաններ։ ԳԴՀ աշխատավորները, ԳՍՄԿ-ի ղեկավարությամբ, մեծ նվաճումներ են ձեռք բերել նաև ժողովրդական կրթության ասպարեզում։ Դպրոցներում տրվում է պոլիտեխնիկական կրթություն։ Երիտասարդությունը դաստիարակվում է սոցիալիստական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով։ Դպրոցը դարձել է գիտության օջախ։ ԳՍՄԿ վարած ճիշտ քաղաքականության շնորհիվ ծաղկում է ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ ԳԴՀ-ն ժողովրդական կրթության գործի ֆինանսավորմամբ աշխարհում 4-րդ տեղում է, ԳՖՀ-ն՝ 22-րդ։

ԳՍՄԿ-ն և ԳԴՀ կառավարությունը իրավահավասարության, ազգային շահերի հարգման, փոխադարձ շահավետության սկզբունքների հիման վրա քաղաքական, տնտեսական, դիվանագիտական և ռազմական բնագավառներում սերտորեն համագործակցում են սոցիալիստական լագերի երկրների հետ։ ԳԴՀ-ն Վարշավայի պակտի անդամ է։

1968 թ. ապրիլի 6-ին համաժողովրդական քվեարկությամբ ընդունվեց ԳՍՄԿ նախաձեռնությամբ մշակված նոր սահմանադրությունը, որն օրենսդրությամբ ամրապնդեց աշխատավորների տնտեսական և քաղաքական նվաճումները։ Նոր սահմանադրության մեջ նշված է, որ գերմանական ժողովրդի ապագան՝ խաղաղությունը, դեմոկրատիան, հումանիզմն ու սոցիալիզմն են։ ԳԴՀ աշխատավորները ցանկանում են, որ Գերմանիան միավորվի դեմոկրատիայի և սոցիալիզմի սկզբունքներով։

Սոցիալիստական սահմանադրությունը ԳԴՀ-ի արտաքին քաղաքականության սկզբունքը համարում է ՍՍՀՄ և սոցիալիստական լագերի երկրների հետ դաշինքն ու բարեկամությունը, որը բխում է ժողովուրդների ազգային շահերից և համապատասխանում պրոլետարական ինտերնացիոնալիզմին։ Այն դատապարտում է ռևանշիզմը, միլիտարիզմը, ռասայականության, գաղութային քաղաքականությունը և նպաստում Եվրոպայում կոլեկտիվ անվտանգության ու ողջ աշխարհում խաղաղության ամրապնդմանը։

ԳԿԿ-ի հիսուն տարիների պատմությունը ֆաշիզմի, միլիտարիզմի, բանվորական շարժման ռենեգատների դեմ և աշխատավոր ժողովրդի ազատագրության համար մղած փառապանծ պայքարի պատմությունն է։ Այդ պայքարի հաղթական պսակը արևելյան Գերմանիայի պրոլետարիատի շարքերի համախմբումն է, ԳՍՄԿ կազմակերպումը և ԳԴՀ հիմնադրումը, որտեղ ոչընչացվել է ֆաշիզմը, նրա սոցիալական հենարանը՝ մոնոպոլիստական կապիտալն ու յունկերական հողատիրությունը։ ԳՍՄԿ ղեկավարությամբ ԳԴՀ-ն Եվրոպայի կենտրոնում դարձել է խաղաղության ու սոցիալիզմի միջնաբերդը, միասնական դեմոկրատական Գերմանիայի ստեղծման հզոր պատվարը։ Մարքսի և Էնգելսի անմահ գաղափարները իրականություն են դարձել գերմանական առաջին բանվորա-գյուղացիական պետությունում։





# ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ԵՐԳԻՉԸ

*(Մ. Պեշիկթաշլյանի մահվան 100-ամյակի առթիվ)*

Նա երգիչն էր միության, սիրո և հայրենիքի...
Դ. ՎԱՐՈՒԺԱՆ

Պեշիկթաշլյանը հայ դասական գրականության, մասնավորապես պոեզիայի հետաքրքրական դեմքերից մեկն է։ Նրան հափշտակությամբ ու սիրով կարդացել են, դարձրել պաշտամունքի առարկա ամեն տեղ, ուր հայ մարդը գիտե կարդալ հայերեն։ Նրա **Եղբայր եմք մեք** բանաստեղծությունը երգի թևերով թռել է հեռո՜ւ, շա՜տ հեռու, թունդ հանել մարդկանց սրտերը, տոգորել եղբայրության ու բարեկամության վեհ գաղափարներով։ Պեշիկթաշլյանի հայրենասիրական ազնիվ զգացմունքների խտացումն է այն, որ ժամանակին հսկայական դեր է կատարել տարբեր դավանանքների տեր հայ մարդկանց միավորման գործում։ Իզուր չէ, որ այն շատ բարձր է գնահատվել մեր գրականագետների կողմից, իր կատարած դերով համեմատվել ֆրանսիական հեղափոխական հիմնի՝ **Մարսելյոզի** հետ։



Թեև վաղուց արդեն գոյություն չունեն այդ երգին ծնունդ տվող պատմական-հասարակական դրդապատճառները՝ հայ ժողովրդին բաժան-բաժան անող կրոնական պայքարն ու վեճերը, երգը շարունակում է հուզել, յուրաքանչյուր սերնդի հետ նորոգվում, նոր իմաստ է ստանում ու թովում է նոր ձևով։ **Եղբայր եմք մեք**-ը գերում է ո՜չ միայն բանաստեղծական ձևի կատարելությամբ, այլև զգացմունքների անկեղծությամբ ու խորությամբ, սրտամոտ քնքշությամբ ու հոգեհարազատությամբ։ Դրանով պետք է բացատրել նրա հավիտենական հմայքի գաղտնիքը։

Եղբայր եմք մեք... մրմնջացել է օտարության մեջ տառապող հայ մարդը, հուսալով, որ աշխարհում ցանուցիր իր ժողովրդի զավակները մի օր նորից պիտի միանան, միասին աշխատեն ու քրտինք թափեն հայրենի հողի վրա։ Ու երբ Սովետական Հայաստանը տուն է կանչել աստանդական իր զավակներին, տարագիր հայը կարոտի և ուրախության արցունքն աչքերում ծնկի է իջել հայրենի հողը համբուրելու, նրա հայրենապապակ շուրթերից նոր իմաստով են հնչել բանաստեղծի եղբայրության հոգեբուխ զգացմունքով լի տողերը.

*Տո՛ւր ինձ քու ձեռքդ, եղբա՛յր եմք մեք,*
*Որ մըրըրկավ էինք զատված.*
*...Մեկտեղ լացինք մենք ի հընում...*

րով, հայրենասիրական իր զգացմունքներով ու խոհերով ապրում է բոլոր եկող սերունդների հետ, որպես լավ բարեկամ ու ընկեր մասնակցում նրանց հայրենաշեն գործերին:

Մեծ չէ Պեշիկթաշլյանի թողած գրական ժառանգությունը, բայց այն հաստատուն տեղ ունի հայ ժողովրդի հոգևոր կուլտուրայի գանձարանում:

Պեշիկթաշլյանը գրել սկսել է վաղ հասակից: Նրա առաջին բանաստեղծությունները, որ լույս են տեսել 1840-ական թվականներին, մեծ մասամբ գրված են գրաբարով և կրում են Մխիթարյանների, մասնավորապես Ղևոնդ Ալիշանի ազդեցության կնիքը:

Ալիշանն իր տաղանդի ուժով պոեզիան դուրս բերեց վանքի նեղ շրջանակներից, հայ բանաստեղծությունը դարձրեց սրտի արգասիք, **Պլպուլն Ավարայրին, Հայոց աշխարհիկ** ու ջերմաշունչ մի շարք այլ երգերով հայրենասիրական նոր խոսք պատգամեց ժողովրդին: Թեև հայրենիքից հեռու, բորբոքեց իրական, կենդանի հայրենիքի գաղափարը, մտածելու, խորհելու ասպարեզ բացեց:

Աշակերտելով Ալիշանին՝ Պեշիկթաշլյանն առաջ անցավ նրանից, պոեզիայի առանցք դարձնելով իրական հայրենիքը՝ իր վշտերով և ուրախություններով, իր տառապանքներով ու հերոսամարտերով: Նրա պոեզիայում հայրենասիրական մոտիվների կողքին տեղ գտան նաև բնության ու սիրո գողտրիկ մոտիվները: Վերջինս ամենամեծ տարբերիչ գիծն է, որ նրան հեռացնում է իր ուսուցիչներից: Պեշիկթաշլյանը քնքուշ սիրերգակ էր: Սակայն մտնելով այն աշխարհը, ուր

*Շող լուսնակին, կոյսն ծաղիկ*
*Զիրար շոյեն սիրատարփիկ,*

նա չմնաց լոկ կույսի, զեփյուռի ու լուսնյակի երգիչ: Այս երգերում ևս նա ամենից առաջ քաղաքացի է և ապա՝ պոետ. ծաղիկների բույրն ու կույսի սերը նրա համար իմաստավորվում է միայն հայրենիքում: Իր հոգու բոլոր լարերով նա կապված է հայրենիքին: Ահա թե ինչու բանաստեղծը մերժում է օտար բնության հաճույքները— ծաղիկների ու կույսի մազերի վրա շնկշնկացող առավոտյան զով հովիկը, հանդարտիկ վտակի մրմունջը, ծառերի սաղարթների միջից հնչող թռչունների մեղմ երգը: Թեև իր հայրենիքն ավերված է, լի հառաչանքներով ու տխրությամբ, բայց նա հարազատ ու սիրելի է.

*Թեպետ թռչնիկն ու հովն Հայոց*
*Ավերակաց շրջին վերա,*
*Թեպետ պղտոր վտակն Հայոց*
*Նոճիներու մեջ կը սողա,*
*Նորա հառա՛չք են Հայրենյաց,*
*Նորա չերթա՛ն սրտես ի բաց:*

Պեշիկթաշլյանը ներբողում է հայրենիքը, արձագանքում ժողովրդի ամենանվիրական ցանկություններին ու ձգտումներին: Ալիշանի նման, Պեշիկթաշլյանն էլ վառված է մաքուր, սուրբ հայրենասիրությամբ: Սակայն տարբեր էր նրանց ապրած միջավայրը, տարբեր էր նաև բանաստեղծական ոգորումների արգասիքը: Ալիշանը, ինչպես ինքն է ասում, «Խավարի մեջ նստած լույս է որոնում», այսինքն՝ Ադրիական ծովի փոքրիկ կղզում նստած, հայրենիք է երգում: Պարզ է, որ այդքան հեռավորությունից նա չէ կարող տեսնել հայրենիքի իրական ցավերն ու վերքերը: Այլ է Պեշիկթաշլյանը: Նա ապրում էր բուն ժողովրդի մեջ, լալիս, հառաչում ու ծիծաղում ժողովրդի հետ, արտահայտելով նրա տրամադրությունը՝ իր արվեստը ծառայեցնում նրան:

Հայրենիքի ներկան բանաստեղծի պոեզիայում պատկերվում է մռայլ գույներով, հառաչանքներով ու տխրությամբ լի.

*Գոց են ամպով աստղունք... և հույս,*
*Դեռ շատ հեռու է Արշալույս:*

Սակայն նա չի մնում հայրենիքի ցավերը պասիվ կերպով վերարտադրողի դերում: Հայրենիքի ստրկական վիճակը նրան խորապես հուզում է, և բանաստեղծի պոեզիայում հնչում են բողոքի մոտիվները.

*Ո՜, ինչվան ե՞րբ հաճույք և սեր*
*Առանց սուգի պիտի չըլլան:*

Պեշիկթաշլյանը վստահում է ժողովրդի ուժին և հավատում, որ հայրենիքի վրա իջած խավար գիշերին պիտի հաջորդի ազատության պայծառ արշալույսը: Վանեցի ծերունին մահանալուց առաջ նոր սերնդի համար արշալույս է գուշակում.

*Եվ դու Մեհեկ, կուլա՞ս անհույս,*
*Ո՜հ, ո՛չ, գընա՛... գա Արշալույս:*

Այս լավատեսական տրամադրությունն ավելի ուժգին է հնչում 1862 թ. գրած զեյթունյան երգերում: Այստեղ բանաստեղծն որոշակի ցույց է տալիս լավագույն ապագայի ճշմարիտ ուղին՝ ազատագրական պայքարի ուղին: Զեյթունյան շարքը կազմող երգերը՝ **Հայ քաջորդի, Մահ քաջորդվույն, Թաղումն քաջորդվույն** և **Հայ քաջուհին** մի օրգանական ամբողջություն են կազմում: Էականում դրանք նույն հերոսական պոեմի տարբեր մասերն են, գրված դեպքերի անմիջական ազդեցության տակ: 1862 թ. Զեյթունի լեռնականները, այլևս անկարող լինելով տանել թուրքական տիրակալության վայրագ բռնապետությունը, ապստամբում են և հերոսական պայքարով ետ մղում թուրքական զորքերի հարձակումները: Սակայն հետո ստիպված են լինում տեղի տալ թշնամու մեծաքանակ ուժի առաջ: Սկսվում է ժողովրդի տառապանքների նոր շրջանը— հարցաքննությունների, ճնշման և դատաստանի շրջանը: Զեյթունցիները պատվիրակներ են ուղարկում Պոլիս, խնդրելով առաջնորդարանի և պոլսահայերի օժանդակությունը:

Որպես բարեգործական ընկերության անդամ, Պեշիկթաշլյանը ո՛չ միայն մոտիկից ծանոթ էր ապստամբության ղեկավարների հետ, այլև հարկ եղած դեպքում օգնում էր նրանց. «Մի քանի պարոնների հետ Զեյթունից եկած մասնավոր գրությանց պատասխաններ գրելու և ուղարկելու հոգսով էի զբաղված»,— ասել է Պեշիկթաշլյանը մի առիթով:

Ապստամբության օրերին, ինչպես և հետո, զեյթունցիների ազատագրական պայքարը հայրենասեր բանաստեղծի համար հարցերի հարցն էր: Նա արցունքն աչքերին լսում էր իր ժողովրդի հերոսամարտերի և թուրք խաժամուժի չարագործությունների մասին: Եվ, ահա, ազգային հպարտության զգացմունքից ու ասպատակված ժողովրդի սրտի ցավից հյուսվում է բանաստեղծի երգ-երգոցը՝ զեյթունյան երգերի շարքը, որը հայ գրականության ամենափայլուն գոհարներից է: Ահա թե ինչ է պատմում Պեշիկթաշլյանի ժամանակակիցներից մեկը **Մահ քաջորդվույն** բանաստեղծության գրության հանգամանքների մասին. «1863-ի սկզբում, ձմեռային մի ցուրտ երեկո էր, տեր Մովսեսի (որը Զեյթունի անցքերից անմիջապես հետո եկել էր Պոլիս) հետաքրքրական վեպերը գրաված էին չորս կողմ խմբված երիտասարդների ուշադրությունը. նա պատմում էր մի սիրտ ճմլող անցք, թե ինչպես մի հուսահատ մայր, մի խղճուկ հայ կին, գիշերային լռության մեջ, պատերազմի դաշտի վերա փնտրում էր իր միակ որդվույն դիակը, որ մի օր առաջ մեծ ջարդ տված էր իր հայրենյաց թշնամյաց: Խորին լռությամբ և մորմոքած սրտերով լսում էինք այդ պատմությունը. տպավորությունը շատ մեծ էր... Նույն գիշերը հյուրերից մի քանիսը մնացին մեր տանը քնելու, որոնց թվումն էր նաև Պեշիկթաշլյանը: Մյուս օրը, նախաճաշիկի ժամանակ, Պեշիկթաշլյանը կարդաց մի կտոր թղթի վերա մատիտով գրած հետևյալ բանաստեղծությունը (**Մահ քաջորդվույն**), որ գրած էր տեր Մովսեսի առաջին գիշերվա արած տխրագին պատմության ազդեցության տակ»:

Այս շարքի առաջին բանաստեղծության մեջ պատկերվում է ապառաժոտ լեռան կողքին վշտահար կանգնած հայ քաջորդին, որ մերժում է իրեն առաջարկված բոլոր հաճույքները— փոթորկահույզ ծովը, ահեղաշուք, աստղազարդ երկինքը, բնության պայծառ —զարդերը՝ ծաղիկներն ու զեփյուռը, մայրական փայփայանքն ու սիրած աղջկա գգվանքը: Վշտահար պատանին խնդրում է միայն վառոդ ու գնդակներ: Երկրորդ բանաստեղծության (**Մահ քաջորդվույն**) մեջ արդեն բացվում է հայ քաջորդու ցավի պատճառը: Ոչ մի հաճույք չի կարող փարատել նրա վիշտը, քանի դեռ սիրելի հայրենիքը արյուն-արցունքի մեջ է: Նա իր խնդրած վառոդն ու գնդակները օգտագործում է հայրենիքի ազատության համար: Կռվի դաշտում վիրավոր ընկած քաջորդին դիմելով մորը խնդրում է նրան անլաց աչքերով դիտել իր արյունածոր վերքերը և չվշտանալ, որովհետև ինքն ընկել է հայրենիքի ազատության համար.

*«Նորեկ որդվույս կենացն արև*
*Ձեզի համար փայլի՛, հայե՛ր»,*
*Այսպես յայնժամ դու կ'երգեիր՝*
*Օրորոցիս նստյալ քովեր.*

*Անոնց համար շիջավ, և դուն*
*Ուրախ լուրեր տար ի Զեյթուն:*

Մեռնող հերոսի պատգամը՝ «ուրախ լուրեր տար ի Զեյթուն», կրկնվելով յուրաքանչյուր տան վերջում մարտական թափ ու լավատեսական տրամադրություն է հաղորդում բանաստեղծությանը՝ վանում մահվան գաղափարը և ընթերցողին համակում ապրելու, կռվելու ցանկությամբ:

Հաջորդ բանաստեղծության մեջ պատկերվում է քաջորդու թաղումը, որը կատարվում է լուռ ու անաղմուկ, առանց հանդիսավորության. սրտահույզ ճառեր չեն արտասանվում, արտասուք չի թափվում:

*Ո՛չ փող զարկինք, ո՛չ արձագանք լեռնասույզ*
*Սարե ի սար չարաշըշուկ տարին լուր.*
*Ու չերգեցինք ողբոց երգեր սրտահույզ,*
*Երբ պատանվույն բացինք մըռայլ փոսին դուռ:*

Քաջորդու ճակատը պսակող պայծառ վերքերը տեսնելով, բոլորը միաբերան շշնջում են.

*Վասն հայրենյաց մեռար, դու շատ ապրեցար:*

Այս մի տողի մեջ խտացված է բանաստեղծության գաղափարական բովանդակությունը՝ հայրենիքի համար ընդունած մահը հավասար է անմահության: Այս շարքի վերջին բանաստեղծությունը **Հայ քաջուհին** է, որտեղ կերտված է ազգային ազատագրական պայքարին մասնակցող հայ կնոջ հերոսական կերպարը:

*Բայց ո՞ւր կերթա այն գեղադեմ*
*Աղջիկ թողուցյալ լերանց վըրան,*
*Փափուկ թեթև ոտիցն ի ճեմ,*
*Ուսից վըրան հերքըն ծըփան:*

Հայ քաջուհին սպառազեն նետվում է պատերազմի դաշտ, որովհետև այդպես է պահանջում հայրենիքի շահը: Նա գոռ ձայնով մարտի է կոչում յուրայիններին.

*Հառա՛ջ, մոտ կա ժանտ թշնամին,*
*Զինք վանեցե՛ք կոտորածով:*

Հայ քաջուհու մարտահրավերը խոր արձագանք է գտնում կռվող մարտիկների մեջ.

*Հայկունի՛ն է, կտրիճ եղեք,*
*Հայկունին տա խրախույս հորդոր.*

*Ժանտից վրա հուր տեղացեք*
*Մինչև մոխիր դառնան բոլոր։*

Տոկուն ու քաջ է հայ կինը, նա տուն է վերադառնում հաղթանակից հետո, դափնիներով զարդարված։

Ջեյթունցյան շարքը համակված է բանաստեղծի լավատեսական տրամադրություններով։ Ծանր ու մռայլ է հայրենիքի ներկան, սակայն չի մեռել հայ ժողովրդի դյուցազնական ոգին, և նա թեև հազարապատիկ խոցված ու վիրավոր, ժայռի նման կանգնած է ամուր և լի է ազատագրական պայքարի պոտենցիալ ուժերով, բռնապետությունը տապալելու վճռականությամբ։

Ինչպես ասացինք, հայրենասիրական ազատաշունչ երգերի հեղինակ Պեշիկթաշլյանը միաժամանակ մեր գրականության լավագույն սիրերգակներից է։ Նրա սիրային լիրիկան աչքի է ընկնում գույների բազմազանությամբ, խոհականությամբ, զգացմունքների հորդությամբ ու վեհությամբ։ Բնության և սիրո երգերում բանաստեղծը միացնում է երգչի, նկարչի և երաժշտի հատկությունները՝ տեղ-տեղ պատկերները դարձնելով շոշափելիության չափ իրական ու հմայիչ, միաժամանակ խիստ երաժշտական։ Այդպիսիք են նրա **Գարունը**, **Առ զեփյուռն Ալեմտաղի**, **Ճեմք ի լյառն հսկային**, **Ալեմտաղն այն գեղեցիկ**, **Աշուն** և այլ բանաստեղծությունները։

Վերոհիշյալ երգերում, ինչպես և ընդհանրապես Պեշիկթաշլյանի ողջ ստեղծագործության մեջ, բնությունը վճռական տեղ ունի։ Նա բնության անզուգական երգիչ է, զգում է այն իր կախարդական բոլոր հրապույրներով։ Սակայն նրա համար բնության գլուխգործոցը մարդն է, որն իր միջավայրի հարազատ զավակն է, ուժ է առնում հայրենի բնաշխարհից և նրանով են միայն իմաստավորվում կյանքի գեղեցկությունները։ Հիշենք **Աշուն** բանաստեղծությունը։ Անցել է բնության երիտասարդությունը՝ գարունը տեղի է տվել աշնանային ցրտերին, ոչ զեփյուռ կա, ոչ ծաղիկ ու թիթեռ, ոչ վարդ ու սոխակ.

*Սակայն կուսի՜կ մի կա փափուկ,*
*Բոլոր անձեն շնչե գարուն.*
*...Այլ ի՞նչ պիտին ծաղկանց փունջեր,*
*Յորժամ նորա այտերն հայիս.*
*Այլ ի՞նչ պիտին վարդից հոտեր*
*Յորժամ նորա մոտ գտընվիս։*

Բնությունը մարդով է միայն իմաստավորվում— հաստատում է բանաստեղծը, սակայն սա դեռ բոլորը չէ Պեշիկթաշլյանի համար։ Կարող են լինել գեղեցիկ բնություն, քնքուշ կույս, բայց ոչինչ չասել բանաստեղծի սրտին.

*Ո՜հ ի՞նչ անուշ և ի՜նչպես զով*
*Առավոտուց փըչես, հովի՜կ,*
*Ծաղկանց վըրա գուրգուրալով*
*Եվ մաղերուն կուսին փափկիկ,*
*Բայց չես հովիկ իմ Հայրենյաց*
*Գընա՛, անցի՛ր սըրտես ի բաց։*

Այստեղ արդեն ամբողջանում է բանաստեղծի իդեալը. հայրենիքից դուրս նրա հոգու համար չկա ո՛չ գեղեցկություն, ո՛չ սեր։

Սիրային լիրիկայի ինտիմ լարեր էլ ունի Պեշիկթաշլյանը։ Մեծ մասամբ նա երգում է մերժված սիրո տվայտանքն ու ցավը։

*Ի՞նչ ըրի ես քեզի,*
*Որ ցավոց այդպիսի*
*Եվ անբույժ հարվածոց*
*Ըլլամ արժանի։*

Ճիշտ է, այստեղ ինքնակենսագրական տարրը մեծ դեր է խաղացել, սակայն անպատասխան սիրո մորմոքով լի այդ երգերում նույնպես չկա հոռետեսություն։ Բանաստեղծի սիրո ողբերգությունը լուծվում է հայրենիքի ընդհանուր ցավի մեջ.

*Մնացե՛ս բարյավ, սե՛ր, իմ սե՛ր,*
*Հրավեր մարտից որոտաց.*
*Թե չեմ քաջաց ես ընկեր՝*
*Չկա՛ բաժին ինձ փառաց։*
*...Ի սուրբ հողոս Հայրենյաց*
*Բառնամ ըզլուծ օտարի։*

Եվ այսպես. բնության ու սիրո երգերում էլ Պեշիկթաշլյանը մնում է մեծ հայրենասեր։

Հետաքրքրական է եղել Պեշիկթաշլյանի գրական ճակատագիրը։ Նա մեկն է այն քիչ բախտավորներից, որոնք դեռ իրենց կենդանության օրոք գնահատվել են հասարակության կողմից, սիրվել և հմայել հետագա սերունդներին։ Նա հրատարակված չտեսավ իր երկերի ոչ մի ժողովածու։ Նրա ստեղծագործությունները միայն հետմահու է, որ բազմաթիվ հրատարակություններ են ունեցել, անցել ձեռքից-ձեռք, միշտ ոգևորել երիտասարդությանը, նրան դաստիարակել հայրենասիրության, բարու և գեղեցկի զգացմունքներով։

Ո՞րն է Պեշիկթաշլյանի ստեղծագործության, նրա հմայքի երկարակեցության գաղտնիքը։

Գաղտնիքներ չունի բանաստեղծը, նա պարզապես իր ապրած ժամանակաշրջանի առաջավոր գաղափարների արտահայտիչն է, հայ ժողովրդի ինքնաճանաչման, նրա հերոսամարտերի պանծացնողն ու վառ գալիքի ավետաբերը։ Նրա երգը ժողովրդի սրտի երգն է։

**ԴԱՐԲԻՆՅԱՆ ՀՐԱՆՈՒՇ**



# ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

## ԵՐԵՎԱՆ ՔԱՂԱՔԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ*

*Երևանը Սովետական Միության ժամանակակից այն խոշոր քաղաքներից է, որը համեմատաբար կարճ ժամանակամիջոցում աճել է 7—8 անգամ։ Երևանը աճում է ավելի արագ, քան միութենական հանրապետության ցանկացած մայրաքաղաքը։ Այսպես, 1939 թ. մինչև այժմ Բաքուն աճել է 1,4, Թբիլիսին՝ 1,5, Ռիգան՝ 1,8, Վիլնյուսը՝ 1,3, Տաշքենդը՝ 1,3, Կիևը՝ 1,4, իսկ Երևանը՝ 3 անգամ։*

*Հարց է առաջանում. ինչո՞ւ Երևանի աճի տեմպերն այդքան բարձր են, մինչդեռ հանրապետության մնացած քաղաքները, բացառությամբ մեկ-երկուսի, չեն ունեցել այդպիսի տեմպեր, չնայած դրանց մեծ մասը զարգացման բարենպաստ պայմաններ են ունեցել։ Այդ, ամենից առաջ, պայմանավորված է հանրապետությունում արտադրաուժերի մինչև այժմ անհամաչափ տեղաբաշխմամբ և չափից ավելի կենտրոնացմամբ Երևանում։*

*Հայաստանի արդյունաբերության ժամանակակից տեղաբաշխումը բնութագրվում է հետևյալ տվյալներով. ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի մոտ 78 տոկոսը կենտրոնացված է Երևան, Լենինական և Կիրովական քաղաքներում։ Այստեղ են կենտրոնացված նաև արդյունաբերական անձնակազմի մոտ 75 տոկոսը։ Ընդ որին Երևանին (հանրապետության մասշտաբով) բաժին է ընկնում համապատասխանաբար՝ 62 և 49 տոկոս, իսկ մնացած 47 քաղաքներին ու քաղաքատիպ ավաններին, ինչպես նաև արդյունաբերական ձեռնարկություններ ունեցող այլ բնակավայրերին՝ արդյունաբերական արտադրանքի ընդամենը 22 և անձնակազմի 24 տոկոսը։ Մոտավորապես նույն պատկերն ունի արդյունաբերական հիմնական ֆոնդերի բաշխվածության հարաբերությունը։ Այժմ Երևանում է ապրում հանրապետության բնակչության 1/3-ը (որը մոտ 1,5 անգամ ավելի է, քան մնացած 22 քաղաքներում և 27 քաղաքատիպ ավաններում ապրող բնակչությունը միասին վերցրած), բարձրագույն ուսումնական հաստատությունների, տեխնիկումների և գիտահետազոտական հիմնարկությունների ու կազմակերպությունների 90 տոկոսից ավելին։*

*Իսկ ինչպե՞ս կզարգանա Երևանը հետագայում։ Արդյոք առաջիկայում ևս կզարգանա արագ տեմպերով, թե՞ հնարավորին չափ կսահմանափակվի և ինչպե՞ս։*

*Երևանի ինչպես բնակչության, այնպես էլ արդյունաբերության հետագա աճի կարգավորումն ու սահմանափակումը վաղուց հասունացած հարց է, ժամանակակից պայմաններում՝ հրամայական անհրաժեշտություն։*

*Հայտնի է, որ խոշոր քաղաքի ստեղծումը տնտեսապես շահավետ և նպատակահարմար չէ։ Քաղաքի աճի հետ միաժամանակ բնակչության կենսապայմանները վատանում են, իսկ շինարարության և քաղաքային տնտեսության ծախսերը մեծանում։ Խոշոր քաղաքներին հատուկ են բնակչության աշխատանքի և կենցաղային պայմանների վրա բացասաբար ազդող լուրջ թերություններ։ Քաղաքի աճին զուգընթաց մեծանում է բնակելի և արդյունաբերական ձեռնարկությունների միջև եղած տարածությունը (Երևանում հատկապես ուժեղ է արտահայտված), կապված նոր բնակելի զանգվածների կառուցման հետ։ Քաղաքի սահմաններում մեծ տարածությունների վրա աշխատավորության երթևեկությունն իջեցնում է նրանց աշխատունակությունը, կրճատում հանգստի ժամանակը, ծնում մեծ քաղաքներին հատուկ «տրանսպորտային հոգնածություն», նվազում է տրանսպորտի արագությունը։*

*Ժամանակակից պայմաններում խոշոր քաղաքներում բնակչության կյանքի նորմալ պայ-*

*) Տպագրվում է քննարկման կարգով։ Խմբ.։

մաններ ստեղծելու համար պահանջվում են տնտեսության շահագործման մեծ ծախսեր: Հաշվարկները ցույց են տալիս, որ ընդհանուր առմամբ մեկ բնակչին ընկնող շինարարության միջին արժեքը մեծ քաղաքում մոտ 20—25 տոկոսով բարձր է, քան միջին և փոքր քաղաքներում, իսկ քաղաքային տրանսպորտի ու մագիստրալ փողոցների կառուցման ծախսերը 500 հազար բնակիչ ունեցող քաղաքում 3 անգամ ավելի է, քան 50 հազար ունեցողինը: Քաղաքային բնակավայրերում բոլոր տեսակի շինարարության վրա կատարված փաստական ծախսերի վերլուծությունը ցույց է տալիս, որ 1965 թ. փոքր քաղաքներում և քաղաքատիպ ավաններում, բնակչության մեկ շնչին ընկնող ծախսերը, միջին հաշվով, կազմել են 85 ռուբլի, իսկ խոշոր քաղաքներում, ներառյալ մայրաքաղաքները՝ 150—175 ռուբլի: Եթե սրան ավելացնենք այն, որ Երևանն ունի շատ բարդ ու դժվար հողա-գրունտային երկրաբանական, սեյսմիկական և տեղագրական պայմաններ, ապա այս ծախսերն անհամեմատ ավելի կմեծանան:

Խոշոր քաղաքների բացասական կողմերից մեկն էլ այն է, որ նրա օդավազանը միշտ կեղտոտ է: Օդավազանը Երևանում ածխածնի և ազոտի օքսիդների հագեցվածությամբ մի քանի անգամ գերազանցում է թույլատրելի նորմաները: Այդ ավելի վտանգավոր է տարվա ցուրտ եղանակներին (հատկապես ձմռանը), երբ սառչող ծուխն ու գազերը տարածվում են գետնի վրա, խիստ կեղտոտելով մթնոլորտի մերձգետնյա շերտը:

Խոշոր քաղաքներում, բնակչության անընդհատ աճի հետևանքով, դժվարանում է նաև բնակչությանը բնակարանով ապահովելու հարցը: Չնայած նրան, որ Երևանում բնակարանային շինարարությունն արագ թափով է զարգանում, բայց վերջին 7 տարվա ընթացքում մեկ շնչի հաշվով այն աճել է ընդամենը 0,6 քառ. մետրով:

Երևանի աճի կարգավորման և սահմանափակման անհրաժեշտությունը (բացի վերը նշված մեծ քաղաքներին հատուկ բացասական երևույթներից) պայմանավորված է նաև Երևանին հատուկ մի շարք առանձնահատկություններով: Քաղաքի հետագա զարգացման հետ կապված ամենադժվար պրոբլեմը (որն առնչված է քաղաքի արդյունաբերության աճի կարգավորման ու բնակչության մեխանիկական աճի հետագա սահմանափակման արդյունավետ միջոցառումների հետ) քաղաքի ընդարձակման խիստ սահմանափակվածությունն է:

Երևանի հետագա զարգացման համար (բնակչության թիվը մինչև 900 հազարի հասցնելու դեպքում) «Երևաննախագիծ» ինստիտուտի հաշվարկների համաձայն, պահանջվում է շինարարությանը հատկացնել լրացուցիչ մի քանի հազար հեկտար նոր տերիտորիա, որից մոտ 3000 հեկտարը խաղողի և պտղատու այգիներ, 2300-ը՝ ջրովի վարելահողեր և 1800-ը՝ տնամերձ հողեր: Ցավալի է, երբ նույն ձևով են վարվում նաև Երևանի շրջակա տերիտորիաների, ամբողջ Արարատյան գոգավորության հետ: Վերջին 6—7 տարիների ընթացքում Աշտարակի շրջանում տարբեր շինարարության համար հատկացվել է մոտ 1300 հեկտար հողատարածություն, որի 60 տոկոսը ոռոգելի է և պիտանի այգիների ու խաղողի մշակման համար: Աբովյանի շրջանում այն կազմել է մոտ 970 հեկտար: Միայն Արզնի, Նոր-Հաճն ավաններում և Աբովյան քաղաքում շինարարության համար հատկացվել է 440 հեկտար ջրովի արգավանդ հողեր: Չգալի կապիտալ ներդրումներ են կատարվում, կառուցվում են ոռոգելի սիստեմներ և ջրովի դարձվում, աղազերծվում, չորացվում ճահճացած հողերը, մաքրվում քարերից և հետագայում աստիճանաբար օգտագործվում շինարարության համար: Եթե այդպես շարունակվի, ապա մոտակա 50—60 տարում հանրապետության այս «մարգարիտը»՝ Արարատյան դաշտավայրը, ամբողջությամբ կկառուցապատվի:

Խոշոր քաղաքների բնակչության աճի կարգավորման պրոբլեմները միշտ եղել են կուսակցության և կառավարության ուշադրության կենտրոնում: Այսպես, դեռևս 1931 թ. քաղաքաշինությանը նվիրված ՀամԿ(բ)Կ Կենտկոմի հունիսյան պլենումը նշել է, որ ձևավորված խոշոր քաղաքներում բնակչության աճն արգելակելու և քաղաքի ու գյուղի միջև եղած հակադրությունները վերացնելու նպատակով չկառուցել արդյունաբերական նոր ձեռնարկություններ: Այնուհետև, ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1956 թ.՝ «Սովետական Միության քաղաքների հատակագծման և կառուցապատման նախագծերը հաստատելու կարգի մասին» որոշման մեջ դիրեկտիվ է տրված. «Խոշոր քաղաքներում թույլ չտալ արդյունաբերական ձեռնարկությունների ավելորդ կենտրոնացում և դրա հետ կապված բնակչության թվի մեծացում, նկատի ունենալով ձեռնարկությունների նպատակահարմար տեղաբաշխումն արդյունաբերության զարգացման համար նպաստավոր պայմաններ ունեցող փոքր և միջին քաղաքներում» (տե՛ս Постановления ЦК КПСС и Совета Министров СССР по вопросам строительства «Госполитиздат», 1956 г., стр. 161):

ՍՄԿԿ XX և XXIII համագումարները խնդիր դրեցին ո՛չ միայն դադարեցնել խոշոր քաղաքների բնակչության մեխանիկական աճը, այլ դրանց շուրջը ոչ մեծ բարեկարգ քաղաքներ



ստեղծելու միջոցով ապակենտրոնացնել նրանց բնակչությունը:

Երևանի բնակչության աճի կարգավորման և մեխանիկական աճի սահմանափակման անհրաժեշտության հարցին անդրադարձավ նաև ՀԿԿ Կենտկոմի քարտուղար Ա. Ե. Քոչինյանը (1967 թ. մարտի 17-ին) ընտրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ, ինչպես նաև Երևանի կուսակցական XXXII կոնֆերանսում արտասանած ճառերում:

Չնայած բերված անժխտելի փաստերին, Երևանի հետագա զարգացման հարցը դիտվում է որպես չկարգավորվող պրոցես: Այդ է վկայում վերջերս մշակված և հաստատված Երևանի հետագա զարգացման տեխնիկա-տնտեսական հիմնավորման նախագիծը: Ցավալի է, որ այնտեղ չեն նշված այնպիսի արմատական միջոցառումներ, և հիմնավորված առաջարկություններ, որոնք կփոխեին Երևանի հետագա զարգացման ընթացքը: Ի դեպ, տեղին է նշել այդ նախագծի երկու կարևոր թերություն. առաջինը՝ բնակչության հեռանկարային թվի հարցն է, որը դժվար է գերագնահատել: Բնակչության նախագծային թիվը կանխորոշում է քաղաքի տերիտորիալ, ինժեներական, տրանսպորտային կառուցվածքների ու ցանցի զարգացման մասշտաբները, քաղաքային շինարարության ծավալը և այլն: Ինչպես հայտնի է, այդ նախագծով Երևանի բնակչության թիվը 1980 թ. նախատեսվում է 900 հազար: Ստացվում է այնպես, որ մոտակա 10—13 տարում այն պետք է աճի 200 հազարով, քանի որ այժմ քաղաքի բնակչությունը մոտ 700 հազար է: Բայց իրականում ինչպե՞ս կարելի է ռեալ համարել այդպիսի կողմնորոշումը, երբ նախագծում գործնական միջոցառումներ չեն նախատեսվում քաղաքի արդյունաբերության աճի կարգավորման ու բնակչության մեխանիկական աճի սահմանափակման ուղղությամբ: Եթե քաղաքի աճի տեմպերը առաջիկայում էլ պետք է պահպանվի նույն մակարդակի վրա, ապա այդ ժամանակամիջոցում նախատեսված նախագծային թվին կհասնենք միայն մեխանիկական աճի հաշվին: Այս կապակցությամբ միանգամայն տեղին է Հ. Իսաբեկյանի անհանգստությունն ու կասկածները (տե՛ս «Լենինյան ուղիով» № 2, 1967 թ., էջ 49):

Նախագծի մյուս կարևոր թերությունը՝ դա շրջակա տերիտորիաներից և բնակավայրերից ամբողջ երևանյան ագլոմերացիայից, մեկուսացված լինելն է: Ժամանակակից պայմաններում Երևանի հետագա զարգացման տնտեսական և քաղաքաշինական արմատական հարցերը որոշելիս անտեսել դրա հետ կապված շրջակա բնակավայրերի հետագա զարգացումն ու դրանց փոխհարաբերության հարցերը, անթույլատրելի է: Երևանի հետագա զարգացումը պետք է դիտել երևանյան ագլոմերացիայի կոմպլեքսում, քանի որ ինչպես քաղաքի, այնպես էլ ամբողջ ագլոմերացիայի արդյունաբերության հետագա զարգացման, աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ օգտագործման, բնակեցման ձևերի ընտրության, խոշոր ինժեներական կառուցվածքների և շատ այլ հարցեր պետք է որոշեն կոմպլեքսորեն, միաժամանակ և համատեղ: Դա յուրօրինակ մի ամբողջություն է, որը հատուկ մոտեցում և ուսումնասիրություն է պահանջում:

Հանրապետության քաղաքների հետագա զարգացման տեխնիկա-տնտեսական հիմնավորման նպատակով կատարված աշխատանքների մակարդակը (կապված քաղաքների գլխավոր հատակագծերի նախագծերը կազմելու հետ) դեռևս բավարար չէ: Այս բնագավառը ետ է մնում քաղաքաշինության կողմից առաջադրվող ժամանակակից պահանջներից: Մինչև այժմ այդ աշխատանքները կատարվում են սրանից 15—20 տարի առաջ կազմված հրահանգներով ու նորմատիվներով, որոնք շատ դեպքերում չեն համապատասխանում լեռնային սակավահող հանրապետությունների բնակավայրերի հատակագծման ու կառուցապատման առջև ծառացած հրատապ խնդիրների լուծմանը:

Այժմ տեսնենք, թե Երևանի արդյունաբերության աճի կարգավորման և բնակչության մեխանիկական աճի սահմանափակման ինչ ուղիներ և իրագործելի հնարավորություններ կան:

Կիրառվող վարչական միջոցները, անձնագրային ռեժիմը (քաղաքի բնակչության մեխանիկական աճը սահմանափակող) սպասվելիք արդյունքներ չտվեցին: Երևանի աճի կարգավորման և սահմանափակման ամենակարևոր նախապայմանը (որը հաստատում է քաղաքաշինության համաշխարհային ու սովետական պրակտիկան), նոր արդյունաբերական ձեռնարկությունների, բուհերի, գիտահետազոտական հիմնարկների և քաղաքի աճին նպաստող այլ օբյեկտների շինարարության արգելման ուղին է, տեղաբաշխելով դրանք հանրապետության այլ բնակավայրերում: Երևանում մինչև այժմ շարունակվում է արդյունաբերական ձեռնարկությունների, ինչպես նաև քաղաքի աճին նպաստող այլ օբյեկտների տեղադրումն ու կազմակերպումը: Ներկայումս քաղաքում կառուցվում և նախատեսվում են կառուցել մի շարք նոր խոշոր ձեռնարկություններ և արտադրամասեր, այդ թվում՝ ավտոմոբիլային, քիմիական ռեակտիվների, վիտամինների գործարանները և այլն: Ի դեպ, պետք է ասել, որ եթե որոշ ձեռնարկությունների կառուցումը Երևանում (օրինակ՝ քիմիական ռեակտիվների գործարանը) մասամբ արդարացվում է, ապա ավտոմոբիլային գործարանինը՝ արդարացուցիչ չէ: Մի այլ օրինակ. Երևանում այժմ Հայկոոպը կառուցում է երկաթ-բետոնե կոնստրուկցիաների գործարան (35 հազար խմ կարողությամբ), ուր նախա-

յանի՝ վերջերս լույս տեսած կապիտալ աշխատությունը*, որը հրատարակել է ՀՍՍՀ գիտությունների ակադեմիան՝ ակադեմիկոս Աշոտ Հովհաննիսյանի խմբագրությամբ։

Գրախոսվող աշխատությունը հեղինակի՝ երկու մասից բաղկացած մենագրության առաջին գիրքն է, ուր հանգամանորեն հետազոտված է հայ իրականության մեջ գիտական սոցիալիզմի գաղափարների թափանցման ու զարգացման ընթացքը 1880-ական թվականներից մինչև 1904 թ. ընկած ժամանակաշրջանում, ցույց են տրված հայ հասարակական, քաղաքական մտքի մեջ կատարված արմատական բեկումը և դրա շնորհիվ՝ հայկական պրոլետարիատի և աշխատավոր զանգվածների ազատագրական ընդվզումների ու հեղափոխական պայքարի վերելքը ռուսական առաջին հեղափոխության նախօրյակին։

Հայաստանի հասարակական-քաղաքական կյանքի կարևոր դեպքերը հեղինակն իրավամբ դիտում է՝ սերտորեն կապված պատմական այն իրադարձությունների հետ, որ ծավալվեցին Ռուսաստանում և սկիզբ դրին մարքսիզմի տարածման նոր, լենինյան փուլին։ Այնուհետև ընդգծելով, որ գիտական սոցիալիզմի գաղափարների տարածումը տարբեր ժողովուրդների շրջանում ընթացել է այլ ճանապարհներով, տեղի և ժամանակի պայմանների համեմատ, նա բացահայտում է հայ իրականության կոնկրետ յուրահատկությունները, որոնք պայմանավորեցին մարքսիզմի համեմատաբար արագ թափանցումը Հայաստան։ Դրանցից կարևոր էր, հատկապես, այն հանգամանքը, որ տակավին 1880—90-ական թվականներին Եվրոպայի և Ռուսաստանի բարձրագույն դպրոցներում սովորում էին շատ հայ երիտասարդներ. ծանոթանալով գիտական սոցիալիզմի ուսմունքին, նրանք ձեռնարկեցին մարքսիստական գրականության հայերեն առաջին թարգմանություններին ու հրատարակությանը։ Հեղինակը մարքսիզմի տարածումը Հայաստանում չի սահմանափակում միայն վերոհիշյալով, ինչպես այդ արծարծված է տվյալ պրոբլեմին նվիրված մի շարք այլ աշխատություններում։ «Մարքսիզմի տարածումը Հայաստանում,— նշված է գրքում,— ընդգրկում է նաև հայ հասարակական մտքի մարքս-լենինյան էտապը, ուտոպիական ու մանրբուրժուական, սոցիալիզմի, բուրժուական գաղափարախոսության դեմ հայ լենինյանների մղած պայքարը, մարքսիստական տեսության հարցերի զարգացումն ու պրոպագանդան, սոցիալիզմի միացումը բանվորական շարժմանը, սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների առաջացումը, բանվորական հեղափոխական և ագրարային շարժումների ծավալումը և բազմաթիվ այլ հարցեր» (էջ 10)։

Հայաստանում մարքսիզմի տարածման վրա չէր կարող իր կնիքը չդնել մեր ժողովրդի բաժանվածությունը երկու հատվածների՝ արևելահայ և արևմտահայ։ Եթե թուրքական բռնապետության տակ հեծող արևմտահայ հատվածի համար երկրի տնտեսական ու քաղաքական ծայրահեղ հետամնացության պատճառով համեմատաբար սահմանափակ էին առաջավոր գաղափարների հետ շփվելու հնարավորությունները, ապա արևելահայ հատվածը, գտնըվելով ռուսական ցարիզմի բիրտ տիրապետության ներքո, այնուամենայնիվ, ուներ ավելի բարենպաստ պայմաններ. ռուս հասարակական առաջավոր մտքի ինքնուրույն ու խիզախ որոնումների շնորհիվ մարքսիստական ուսմունքն այստեղ բարձրացել էր զարգացման նոր աստիճանի և դարձել պրոլետարիատի հեղափոխական պայքարի ստույգ կողմնացույցը։

Հայկական արդյունաբերական պրոլետարիատը, որ ձևավորվում է Կովկասում անցյալ դարի վերջերին, կապիտալիստական հարաբերությունների զարգացմանը համընթաց, հանդես է գալիս որպես Ռուսաստանի բազմազգ պրոլետարիատի առաջավոր ջոկատներից մեկը, իսկ հայ ժողովրդի շատ զավակներ՝ թրծվելով դասակարգային պայքարի բովում, դառնում են պրոֆեսիոնալ հեղափոխականներ, համախմբվում պրոլետարիատի առաջնորդ Վ. Ի. Լենինի շուրջը և, որպես կոմունիստական կուսակցության ականավոր գործիչներ, մարքսիզմի ճանաչված տեսաբաններ, իրենց խոշոր ավանդը մուծում Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթության գործում։

Փաստական հարուստ նյութի հիման վրա գրքում ցույց է տրված, որ հայ հասարակական մտքի էվոլյուցիան, մարքսիստական ուսմունքի տարածումը ինչպես ամենուրեք, այնպես էլ հայ իրականության մեջ, ընթացել են գաղափարական ցավատանջ պայքարով. հարկ է եղել հաղթահարել մարքսիզմին հակառակ հոսանքների դիմադրությունը, երբեմն էլ խոտորումները հենց իրենց՝ նոր գաղափարախոսության կողմնակիցների միջև։ «Պատմական եղելչների անաչառ նկարագրությունը,— գրում է հեղինակը,— օգնում է վերականգնելու իսկական ճշմարտությունը, տալու հակոտնյա գաղափարախոսությունների՝ բուրժուական և սոցիալիստական գաղափարախոսության գոտեմարտը, ճիշտ ընկալելու մարքսիստական ավագ սերնդի հեղափոխական գործերն ու ավանդները» (էջ 11)։

Խ. Հ. Բարսեղյանի գրքի կարևոր արժանիքներից մեկն էլ նրա պատմագիտական և աղբյուրագիտական հարուստ հիմքն է՝ գիտական եզրահանգումներով հանդերձ։ Ինչ խոսք, ընթերցող հասարակայնությանը հեղինակը վաղուց է հայտնի Ստ. Շահումյանին, Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ձևավորմանը, բոլշևիկյան հայ մամուլի պատմությանը և այլ պրոբլեմներին նվիրված իր արժեքավոր ուսումնասիրություններով։ Գրախոսվող աշխատությունը գրելիս նա կրկին դիմել է արխիվներին, պարբերականներին, վերանայել հսկայական գրականություն և ժողովել բազմապիսի հարուստ նյութ։ Բայց կարևորը միայն նյութի կուտակելը չէ, այստեղ էականը առանձին դեպքերի ու դեմքերի նկատմամբ ցուցաբերված նոր մոտեցումն է։ Հեղինակը վերականգնել է պատմական ճշմարտությունը, որը հնարավոր դարձավ ՍՄԿԿ XX համագումարից հետո ընկած ժամանակամիջոցում, երկրի գաղափարական կյանքում ստեղծված բարենպաստ մթնոլորտի շնորհիվ։ Փաստերի համադրումը և դրանցից արվող մեկնաբանություններն ու եզրակացությունները, պրոբլեմի կարևոր կողմերն ընդգրկող հարցերն ըստ ամենայնի առաջին պլանի վրա դնելու կարողությունը, աշխատության գաղափարական-քաղաքական նպատակասլացությունը մի անգամ ևս վկայում են ո՛չ միայն գիտական ամենաբարդ խնդիրներում հեղինակի ճիշտ կողնորոշվելու ունակության, այլև այն մասին, թե տակավին ինչպիսի՜ խոշոր, չբացահայտված հնարավորություններ ունի պատմա-կուսակցական գրականությունը՝ որպես երիտասարդ սերնդի կոմունիստական դաստիարակության հզոր միջոց։ Գրքում արտացոլված է, թե ինչպես մեր առաջադեմ նախորդներն իրենց ողջ ուժերը նվիրել են ժողովրդին, պատկերված են նրանց սքանչելի կյանքը և վեհ գործերը։

Ըստ արժանվույն գնահատելով հետազոտվող պրոբլեմի ուղղությամբ կատարվածը, հեղինակը ցույց է տվել Հայաստանում մարքսիզմի տարածման սոցիալ- տնտեսական նախադրյալները, հատկապես անդրադարձել արդյունաբերական հայ պրոլետարիատի ձևավորմանը, բանվորական շարժման առաջացմանն ու զարգացմանը։

Հաջորդ բաժինը նվիրված է հայ իրականության մեջ մարքսիզմի տարածման գաղափարական նախադրյալների և առանձնահատկությունների ուսումնասիրությանը։

Բացահայտելով արևելահայ հասարակական մտքի էվոլյուցիան նախամարքսյան շրջանում, Խ. Հ. Բարսեղյանը ցույց է տալիս, թե ինչպես մեծ լուսավորիչ ու մտածող Խաչատուր Աբովյանը հայ հասարակական միտքն ու մշակույթը դուրս բերեց դեմոկրատական զարգացման ուղին, մեծ դեր խաղաց մեր ժողովրդի ազգային զարթոնքի ասպարեզում։

Հետաքրքրական է 1840-ական թվականների ռուսական իրականության մեջ առաջին ուտոպիստ-սոցիալիստ Դ. Ախշարումովի (ծագումով հայ) հեղափոխական գործունեության ու աշխարհայացքի բացահայտումը, նրա կապը պետրաշևականների հետ։ Սակայն նախամարքսյան հայ հասարակական մտքի գագաթնակետը Միքայել Նալբանդյանն էր. հաղթահարելով հետադիմական ու լիբերալ-բուրժուական հոսանքներին հատուկ գաղափարական սահմանափակությունը, նա առաջադրեց հայ աշխատավոր զանգվածների՝ տիրող քաղաքական կարգերի դեմ հանուն հողի ու ազատության մղած պայքարի ծրագիրը։ Նալբանդյանն իր ստեղծագործությամբ ընդհանրացրեց հայ հասարակական առաջադեմ միտքը, նախապատրաստելով գիտական սոցիալիզմի արագ թափանցումը մեր իրականության մեջ։

1880-ական թվականներին սկսվում են հայ առաջադեմ մտքի մարքսիստական որոնումները։ Հեղինակն արտացոլում է հայ առաջին մարքսիստներից Գ. Ղարաջյանի (Ս. Տ. Արկոմեդ) գործունեությունը. Արկոմեդը կապ է հաստատում Գ. Վ. Պլեխանովի «Աշխատանքի ազատագրության խմբի» հետ, ապա ֆրանսերենից հայերեն թարգմանում Կոմունիստական կուսակցության մանիֆեստը. քննադատելով նարոդնիկության հայեցակետը երկրամասի տնտեսական զարգացման հեռանկարների գնահատման հարցում, նա որոշակիորեն բացահայտեց Անդրկովկասի՝ կապիտալիստական զարգացման փուլը թևակոխելու պատմական փաստը։ Գրքում հանգամանորեն խոսվում է նաև Հովսեփ Աթաբեկյանցի գործունեության մասին . 1894 թ. նոյեմբերի 1-ին նա դիմեց Ֆ. Էնգելսին՝ Մանիֆեստի հայերեն հրատարակության համար առաջաբան գրելու։

Հայ հասարակական մտքի պատմության մեջ նոր էջ է բացվում 1895 թ., երբ սկսվում է բանվորական շարժման, գիտական կոմունիզմի հեղափոխական տեսության տարածման, սոցիալիզմը բանվորական շարժմանը միավորելու շրջանը։ Դասակարգային մարտերում ձևավորվում են հայկական պրոլետարիատի առաջին հեղափոխական ջոկատները՝ «Հայ բանվոր հեղափոխականների ասոցիացիան», Թիֆլիսի հայ բանվորների մարքսիստական առաջին խումբը, Ստ. Շահումյանի՝ Ջալալօղլու մարքսիստական խմբակը, Թիֆլիսի հայ սոցիալ-դեմոկրատների միությունը և այլն։ Հենց այս շրջանում էլ, երբ Ռուսաստանում սկզբնավորվում էր մարքսիզմի տարածման լենինյան փուլը, մյուս ազգերի ներկայացուցիչների հետ համառուսական հեղափոխական շարժման ասպարեզ դուրս եկան բազմաթիվ ականավոր հայ մարքսիստ-լենին-

* Խ. Հ. Բարսեղյան, Մարքսիզմի տարածումը Հայաստանում (1880-ական թթ.—1904 թ.), գիրք առաջին, Երևան, 1967, տպաքանակ 1000, 455 էջ։

յաններ՝ Խ. Լալայանցը, Բ. Կնունյանցը, Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Ա. Զուրաբյանը, Վ. Կասպարովը (Գասպարյան), Ս. Կասյանը (Տեր-Կասպարյան), Ս. Տեր-Գաբրիելյանը, Ա. Բեկզադյանը և ուրիշներ։

Մենագրության մեջ մեծ տեղ է հատկացված Հայաստանում սոցիալ-դեմոկրատական, լենինյան-իսկրայական կազմակերպությունների ձևավորմանը։ Հեղինակն ընդգծում է, որ Երևանում, Ալեքսանդրապոլում, Հաղպատում և Հայաստանի այլ վայրերում կուսակցական կազմակերպությունների ստեղծմամբ ի հայտ են գալիս մինչ այդ չեղած հնարավորություններ՝ պրոլետարիատի, ժողովրդական զանգվածների ավելի լայն խավերի շրջանում պրոպագանդելու մարքսիզմի ուսմունքը, պայքարելու հանուն ժողովուրդների միջև ամեն տեսակ խտրության ու ճնշման վերացման։ Հենց այդ ժամանակ էլ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Բ. Կնունյանցի և նրանց զինակիցների ջանքերով սկիզբ է դրվում մարքսիստական գրականության հայերեն թարգմանությունների գիտական հրատարակությանը։

Ռուսական առաջին հեղափոխության նախօրեին, հայ առաջադեմ հասարակական-քաղաքական մտածողները կանգնում են բոլշևիկյան դիրքերում։ Դա խոշոր չափով նպաստում է հայ աշխատավորության դասակարգային գիտակցության վերելքին, նրան պայքարի հանում ինքնակալության դեմ։ Մենագրության մեջ հաջող են բացահայտված Վ. Ի. Լենինի ծառայությունները հայ ժողովրդի ազատագրական պայքարի կազմակերպման , բոլշևիկյան կազմակերպությունների ձևավորման ու ամրապնդման գործում, ցույց է տրված երկրամասում ռուս մարքսիստների խաղացած դերը։ Այս աշխատությամբ գիտական շրջանառության մեջ են դրվում նորահայտ շատ նյութեր, որոնք օգնում են ճիշտ ընկալելու Հայաստանում ծավալված հեղափոխական շարժումները դարասկզբին, հայ իրականության մեջ մարքսիզմի տարածման առանձնահատկությունները։

Սրանով ավարտվում է տեսական-գիտական բարձր մակարդակով գրված մենագրության առաջին մասը, որը կարևոր ներդրում է սովետահայ պատմագիտության մեջ։ Ցանկալի է, որ այն հրատարակվի նաև ռուսերեն։

Մի դիտողություն, որ վերաբերում է ինչպես հեղինակին, այնպես էլ հրատարակչությանը։ Գրքի 288-րդ էջին հաջորդող ներդիրները խմբանկարներ են՝ Ռիգայի Ստ. Շահումյանի մարքսիստական «Թեորետիկ» խմբակի անդամները, Ջալալօղլու ՝ Ստ. Շահումյանի խմբակի անդամները և Հայ սոցիալ դեմոկրատների միության անդամները։ Սակայն հիշյալ նկարներում պատկերված մարդկանց անունները մենք կարդում ենք միայն 452 էջում զետեղված ցուցակում, և քանի որ նկարները համարակալված չեն, ընթերցողը դժվարությամբ կարող է որոշել, թե որտե՞ղ ո՞ւմ նկարն է։ Հարկավոր էր հենց ներդիրների տակ նշել այդ։ Մեր կարծիքով, այսպիսի գրքի համար շատ փոքր է 1000 օրինակ տպաքանակը։

Գրախոսվող մենագրության երկրորդ գիրքը, ինչպես նշված է առաջինի նախաբանում, պետք է ընդգրկի մարքսիստական միտքը Հայաստանում, այսինքն՝ հայ պրոլետարիատի և աշխատավոր զանգվածների ազատագրական, հեղափոխական պայքարը՝ բոլշևիկյան կազմակերպությունների ղեկավարությամբ, Հայաստանում մարքս-լենինյան գաղափարների հաղթանակը։ Ցանկանք հեղինակին հաջողությամբ իրականացնել իր մտահղացումը։



# Գիտության աշխարհում

ՂԱՖԱԴԱՐՅԱՆ Կ. Գ.

Պրոֆեսոր

## ՀՆԱԳԻՏԱԿԱՆ ՊԵՂՈՒՄՆԵՐԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Սովետական կարգերի հաստատումից առաջ Հայաստանում չկար որևէ գիտական հաստատություն կամ բարձրագույն դպրոց, այդ պատճառով հնագիտական ուսումնասիրություններով զբաղվում էին միայն անհատ մարդիկ՝ իրենց անձնական նախաձեռնությամբ։

Նախասովետական շրջանում հնագիտական պեղումներով զբաղվող գիտնականներից հիշատակության արժանի են ազգագրագետ-հնագետ Երվանդ Լալայանը, որն իր բազմաթիվ ազգագրական ուսումնասիրություններին զուգահեռ շատ դամբարաններ և մի քանի բնակավայրեր է պեղել, Թորոս Թորամանյանը, որն իր ողջ կյանքը նվիրեց միջնադարյան հայ ճարտարապետության ուսումնասիրությանը և մշակեց նրա զարգացման տեսությունը, Նիկողայոս Մառը, որ հայկական մշակույթն ուսումնասիրելու նպատակով տարիներ շարունակ պեղեց Հայաստանի միջնադարյան մայրաքաղաքի՝ չքնաղ Անիի ավերակները։

Այսպիսի անձնավորությունները բացառություն էին հին կարգերի ժամանակ և իրենց աշխատանքը կատարում էին մեծ զոհողությունների գնով, հաճախ հանգանակած գումարներով կամ իրենց անձնական սուղ միջոցներով։ Իսկական գիտնականների կողքին կային նաև սիրող հնագետներ. նրանցից մի քանիսը թեև նվիրված էին իրենց գործին, բայց մասնագիտական կրթություն չունենալու հետևանքով չէին կարողանում իրենց գործը դնել գիտական հիմքերի վրա։ Այդպիսիներից մեկն էր Խաչիկ վարդապետ Դադյանը. առանց գրամական հաստատուն միջոցների նա պեղումներ կատարեց Էջմիածնի շրջանում, Դվինում, Եղվարդում և բաց արեց Զվարթնոցի տաճարը, Եղվարդի նշանավոր եռանավ բազիլիկ տաճարը և Դվինի մայր եկեղեցու հիմքերի արտաքին երեսը։ Սակայն նրա աշխատանքները գիտական արժեք չունեն, որովհետև վայրի ու շերտագրությունն էր հայտնի և ոչ էլ ճիշտ տեղը։ Զվարթնոցում Խաչիկ Դադյանը պայթեցրել է մեծազանգված մնացորդներ և դրանով իսկ մեծ վնաս հասցրել ավերակներին։

Հնագիտական ուսումնասիրությունների և հուշարձանների պահպանության վիճակը միանգամայն փոխվեց Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո։ Դեռևս իր գոյության առաջին տարին չբոլորած, Սովետական Հայաստանը Երևանում ունեցավ իր թանգարանը, որի առաջին վարիչներից մեկը այժմ ՍՍՀՄ ժողովրդական նկարիչ Մարտիրոս Սարյանն էր։ Նա մեծ ջանք թափեց հնագիտական, գեղարվեստական առարկաների հավաքման և կենտրոնացման գործում։

տնոթներով, պատկանում էր բրոնզեդարի վաղ շրջանին, իսկ մյուս երկուսը՝ ավելի ուշ ժամանակների։

Հայաստանի գունազարդ կավանոթները, որոնք կարմիր ֆոն ունեն, սև ներկով երկրաչափական ու կենդանական նկարներ, ծանոթ են շատ հնավայրերից։ Նման կավանոթներ գտնվել են նաև հեռավոր ու մոտակա երկրներում՝ Միջին Ասիայից սկսած, մինչև Միջերկրական ծովի շրջապատը. բուրժուական հնագետները մի ժամանակ տարածել էին այն կարծիքը, թե այդ մշակույթը պատկանել է արիական մի ցեղի, որ երկրից երկիր անցնելով այն տարածել է ամեն տեղ։

Միգրացիայի հետ կապված ռասայական այդ տեսությունը շուտով հերքվեց։ Տարբեր երկրներում հետզհետե այնքան շատ և երկար ժամանակ կենցաղում մնացած գունազարդ կավանոթների հնավայրեր բացվեցին, որ այլևս մեկ կամ մի քանի ցեղերի չէր կարելի վերագրել այն և պարզվեց, որ ամեն մի երկրում այդ մշակույթն օրգանապես կապված է իր տեղի ավելի հին մշակույթի հետ և յուրաքանչյուր վայրում հանդես է եկել մարդկային հասարակության զարգացման որոշ աստիճանի վրա, անկախ մարդկանց ցեղային պատկանելության։

Հետզհետե ծավալվող բրոնզեդարյան հնավայրերի ուսումնասիրությունը Սևանի ափերին (Հարություն Մնացականյան), Արթիկում, որոնք պեղվում են հանքվարչության տրամադրած միջոցներով (Տելեմակ Խաչատրյան), ինչպես նաև պրոֆեսոր Հարություն Մարտիրոսյանի, Ստեփան Եսայանի և ուրիշների կատարած բազմաթիվ պեղումները Հայաստանի տարբեր շրջաններում՝ Լոռիում, Լենինականում, Կիրովականում, Շամշադինում, Իջևանում, ցույց տվին, որ լեռնային անասնապահ ցեղերն ունեցել են բրոնզի ձուլման և մշակման բարձր մշակույթ, ինչպես նաև՝ կատարելագործված բրոնզե զենքեր։ Այս շրջանում տոհմային համայնքն սկսել է քայքայվել. առաջ է եկել մասնավոր սեփականությունը, որին օժանդակել է բրոնզի մշակության լայն տարածումը։ Բրոնզե զարդերն ու այլ առարկաներ դարձել են մասնավոր սեփականություն ցեղապետերի և առաջնորդների համար։ Դրա արտահայտությունն են ցեղապետերի մեծ դամբարաններում եղած երկանիվ և քառանիվ սայլերն ու կառքերը, որոնք զարդարված են բրոնզե բազմաթիվ մասերով և արձանիկներով, իսկ դամբարանները հարուստ են ոսկե և արծաթե զարդերով։ Ուզունլարում 1938 թ. տոհմապետի պատահաբար բացված դամբարանի մեջ կային բազմաթիվ ոսկե զարդեր։ Այս շրջանում լեռնաբնակ անասնապահ ցեղերը որոշ փոխհարաբերության մեջ են եղել դաշտաբնակների հետ. մասցու անասուններ են տվել նրանց և փոխարենն ստացել հացահատիկ։ Այդ ժամանակ է, որ տոհմերն իրենց անասունները, գույքը, տները և ուտեստի պաշարները թշնամի ցեղերի հարձակումներից ազատ պահելու համար բնակավայրերը հիմնել են բլուրների վրա և շրջափակել բերդաքարերի հսկայական պարսպով։

Ցիկլոպյան այդ «ամրոցները» Հայաստանում կոչվել են բերդշեն, որոնց ուսումնասիրության հիմքը դրել է Թ. Թորամանյանը 20-ական թվականներին և այժմ շարունակում են հնագիտության և ազգագրության ինստիտուտի աշխատակից Գեդեոն Միքայելյանը և ուրիշներ։

Բրոնզին հաջորդել է երկաթը, որն ավելի լայն հնարավորություններ է ընձեռել տեխնիկայի, հետևապես և տնտեսության զարգացմանը։

Երկաթի դարաշրջանը Հայաստանում գրեթե համընկնում է Ուրարտական պետության ժամանակաշրջանի հետ, որն արևելյան տիպի ստրկատիրական հզոր մի պետություն էր և իր ուժերը չափում էր Ասորեստանի հետ։ Այն ուներ սեպագրեր և կառուցում էր անառիկ քաղաքներ ու ամրոցներ՝ շինարարական բարձր տեխնիկայով և արվեստով։

Ուրարտուն Սովետական Միության սահմաններում եղած առաջին պետությունն է. նրա մայրաքաղաքը եղել է Վանը (Տուշպա<Տոսպ), որտեղ և սկսվել են առաջին ուսումնասիրությունները նախասովետական շրջանում։

Սովետական Հայաստանի սահմաններում, եթե չհաշվենք մի երկու տասն-



յակ սեպագիր արձանագրությունների պատահական գյուտերը, Ուրարտուի ուսումնասիրությունն ամբողջովին կատարել են սովետական հնագետները և հասել մեծ հաջողությունների։

1936 թվականին Ներքին Զարբախ գյուղի աշակերտները զբոսանքի էին գնացել իրենց գյուղի դաշտերը և Կարմիր բլրի վրա գտել սեպագիր արձանագրության մի բեկոր, որից հետո սկսվեց այդ հնավայրի ուսումնասիրությունը։ Նույն թվականին այստեղ մենք հետախուզական աշխատանքներ կատարեցինք և բլրի գագաթին ի հայտ եկան մի մեծ ամրոցի ավերակներ, որոնց սիստեմատիկ պեղումներն սկսվեցին 1939 թ. և շարունակվում են մինչև օրս։

Ինչպես պարզվեց սեպագիր արձանագրություններից, այդ բերդ-քաղաքը կառուցել է Ռուսա Արգիշտորդի (մ. թ. ա. 685—640 թ.) ուրարտական թագավորը։ Քաղաքը նվիրված է եղել պատերազմի Թեյշեբ աստծուն։ Այդ պատճառով էլ կոչվել է Թեյշեբաինի— Թեյշեբի քաղաք։

Պեղումները հսկայական նյութ տվին Ուրարտուի քաղաքական, սոցիալ-տնտեսական, ինչպես նաև մշակույթի, արհեստների, ռազմական տեխնիկայի, քաղաքաշինության և շատ այլ հարցերի վերաբերյալ։

1950 թ. Երևանը հնագիտական առումով ունեցավ ևս մի անակնկալ հայտնագործություն։ Հայրենադարձ հայերն իրենց տներն էին կառուցում Նոր Արեշում. դրանց մոտ բլրի գագաթին նրանք բաց էին արել մի քարհանք։ Հողի տակից հանում էին քարերը, գլորում ներքև և օգտագործում շինարարության մեջ։ Ուսումնասիրությունը պարզեց, որ քարերն արդեն օգտագործված են եղել հնում և այդ բլրի վրա ուրարտական մի խոշոր ամրոց կա, որին բնակիչներն անվանում էին Արին-բերդ։ Պեղումներն սկսվեցին 1950 թ., ճարտարապետության դոկտոր Կոստանդին Հովհաննիսյանի ղեկավարությամբ և շարունակվում են մինչև այսօր։

Բլրի գագաթին բացվեցին պալատական շենքեր և մի քանի խիստ ուշագրավ սեպագիր արձանագրություններ, որոնց վերծանումից հայտնի դարձավ քաղաքի անունը և կառուցման ժամանակը։

Պարզվեց, որ քաղաքը կառուցել է ուրարտական թագավոր Մենուաորդի Արգիշտին (782—760 թ. մ. թ. ա.) և այն կոչվել է Էրեբունի, որ Երևանի անվան հնագույն հորջորջումն է։

Այնտեղ գտնված արձանագրություններից մեկը, որի մեջ Արգիշտին խոսում է Էրեբունի քաղաքի կառուցման մասին, ունի հետևյալ բովանդակությունը.

«Խալդ աստծու կամքով Արգիշտի Մենուաորդին այս անառիկ ամրոցը կառուցեց տալով նրան Էրեբունի անունը՝ Բիաինա երկրի հզորության և թշնամի երկրներին սարսափեցնելու (համար)։ Արգիշտին ասում է. այդ տեղը կառուցապատված չէր, ես այնտեղ մեծ գործեր կատարեցի։

Արգիշտի Մենուաորդին, հզոր թագավորը, Բիաինա երկրի թագավորը, Տուշպա քաղաքի կառավարիչը»։

Էրեբունիի միջնաբերդում ի հայտ եկավ պալատական շենքերի մի մեծ խումբ, որի մեջ կան հեթանոսական տաճարներ։ Դրանցից մեկը նվիրված է եղել իրենց գլխավոր Խալդ աստծուն։ Այստեղ բացվել են բազմաթիվ այլ շենքեր և սյունազարդ մի ներքին բակ, տնտեսական հարկաբաժիններ՝ հսկայական կարասների շարքերով։

Խիստ հետաքրքրական են հայտնաբերված որմնանկարները, որոնք ուրարտական արվեստի համար ունեն բացառիկ նշանակություն։ Դրանց մեջ պատկերված է Խալդ աստվածը՝ առյուծի վրա կանգնած. կան եզների և առյուծների նկարներ, կենաց ծառի պաշտամունքի տեսարաններ և երկրաչափական զարդաձևեր։

Պեղումները պարզեցին, որ Էրեբունի ամրոցն ու քաղաքն իրենց գոյությունը պահպանել են նաև հետագայում, ուրարտական պետության անկումից հետո, VI—V դարերում, այսպես կոչված՝ վաղ հայկական (արմենական) ժամանակաշրջանում։

Այստեղ բացված պալատական մեծ շինությունները, առանձնապես 30

սյուներով զարդարված հսկայական դահլիճը (29×33 մետր), ինչպես նաև հելլենիստական մեծ ու փոքր ատրուշանները վկայում են այն մասին, որ Էրեբունին վաղ հայկական շրջանում ևս կարևոր դեր է խաղացել Հայաստանի վարչական և սոցիալ-տնտեսական կյանքում և, Արմավիրի հետ մեկտեղ, հանդիսացել է երկրի հյուսիսային մասերի կենտրոններից մեկը։

Էրեբունիի վաղ հայկական կառուցվածքները, որոնք համեմատելի են Աքեմենյան Պարսկաստանի կենտրոնների շինությունների հետ, բացառիկ արժեք ունեն Հայաստանի ճարտարապետության հնագույն ժամանակների պատմության համար և ապացուցում են, որ Երևանը (Էրեբունին) վաղ հայկական շրջանում եղել է խոշոր կենտրոն, իշխանի աթոռանիստ։

Հայաստանում սիստեմատիկ պեղումներ են կատարվում նաև մի շարք այլ վայրերում՝ Դվինում, որ Հայաստանի միջնադարյան մայրաքաղաքն է եղել, Արմավիրում և Դավթի սարում, որոնք ուրարտական կենտրոններ են եղել, բայց իրենց գոյությունը շարունակել են նաև վաղ հայկական շրջանում, բազմաշերտ Սև բլուրում (Մեծամոր), որտեղ երկրաբան-հնագետներն աշխատում են մետաղների ձուլարաններ և աստղադիտարաններ հայտնաբերել։

Կարևոր աշխատանքներ են կատարված նաև վիմական արձանագրությունները հավաքելու և հրատարակելու ուղղությամբ, որով զբաղված է հնագիտության և ազգագրության ինստիտուտի բաժիններից մեկը։ Անցյալ մի քանի տասնյակ տարիների ընթացքում ամրապնդված ու վերանորոգված են բազմաթիվ ճարտարապետական կառուցվածքներ։ Միայն Երևանում վերանորոգված են Ավանի երեք տաճարները, Նորքի կամուրջը, Երևանի կաթողիկեն և այլ հուշարձաններ։

* * *

Հնագիտությունն այն գիտությունն է, որի գործնական օգնությամբ միայն հնարավոր է լինում վեր հանել մարդկության նախնադարյան ողջ պատմությունը, իրեղեն ապացույցներով պարզել, թե ինչպիսին են եղել մարդկանց փոխհարաբերությունները, հասարակության կառուցվածքը մեր դարաշրջանից առաջ։ Շատ բան է արված այս դժվարին, աշխատատար բնագավառում և դեռ մեծ են անելիքները։ Հնագետը շատ սրտացավ, զգույշ պետք է լինի պեղված հնությունների պահպանության, նորերի հայտնաբերման գործում։

Մեծ զգուշություն, գիտելիքներ են անհրաժեշտ, հատկապես նյութական կուլտուրայի ուսումնասիրման հիման վրա սոցիալական հարցերի, ազգերի պատմության լուսաբանման, ազգերի փոխհարաբերությունները պարզելու ասպարեզում արվող եզրակացություններում։ Ներկայումս հնագիտության հաջողություններն այնպիսի մակարդակի են հասել, որ հնարավորություն են ընձեռում սեղծելու ժողովուրդների և երկրների մեծ մասի ճշգրիտ պատմությունը։ Ուրեմն, ինչպես հարկն է պահպանենք այդ հնությունները, մարդկության պատմության հնամենի, «լուռ», բայց շատ բան ասող ու արտացոլող իրեղեն ապացույցները։



# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ՄԵՐ ՆԵՐՍԵՍԸ

(Իմ հուշերից)

Մեր Ներսեսը...

Տխրում է հոգիս, երբ հիշում եմ նրան։ Իմ մեջ սկսում է ուռճանալ մի այրող ցանկություն՝ գրել նրա մասին այնպես, որ բոլորը սիրեն նրան, ինձ նման սիրեն...

Վերցնում եմ գրիչս, որ գրվատեմ նրան արժանի խոսքերով, սակայն համոզվում եմ, որ ցնցեցիկ խոսքերի հարկ չկա։ Համեստությունն ու պարզությունն էին բյուրեղացած նրա մեջ, ուստի և նրան պետք է բնորոշել համեստ ու պարզ խոսքերով։ Իր ողջ էությամբ մաքուր ու համեստ, ազնիվ էր նա։ Եվ երբ հաճախ, վերհիշումներիս տրտում պահերին, ուզում եմ կենդանացնել Ներսեսին հիշողությանս մեջ, իմ մտապատկերում նա հառնում է իր բարեհամբույր, մշտաժպիտ դեմքով։ Ցուրահատուկ էր նրա ժպիտը՝ մեղմ ու թախծոտ։ Նրա դուրեկան դեմքին միշտ նկատվում էր թախիծը, որը հիշեցնում էր մեր հայրենի գետակների վրա կռացած ուռենիներին։

Ներսեսի անմոռաց հիշատակին եմ նվիրել իմ բանաստեղծություններից մեկը, ուր արտահայտված է այդ նմանությունը.

Չգիտեմ ինչո՞ւ, երբ տեսնում եմ ես՝<br>Ինչպես կռացած ուռին է մեղմիվ<br>Ջրերի վրա՝ գլխիկոր ու հեզ՝<br>Տխուր օրորվում,— ընկե՛ր իմ ազնիվ,<br>Ես քեզ եմ հիշում, հիշում եմ այնպես,<br>Ու արցունքներս պահում եմ հազիվ...

Խոնարհ ուռենու պես համեստ էր նա, բայց նրա անապական, անսահման զգայուն սիրտը նաև գիտեր պղտորվել ու մոլեգնել, ինչպես զուլալ ջրերն են պղտորվում ու վարարում հորդ տեղատարափներից։ Նա չէր հանդուրժում անարդարությունն ու բռնությունը։

Աշխատավոր գեղջուկի ընտանիքում սնված, ծանր կարիքի բովում թրծված մարդը շատ շուտ էր կարողանում նվաճել իր շրջապատի անկաշառ սերը։ Չէր կարելի չսիրել նրան։ Բոլշևիկ էր նա՝ ժողովրդի վշտերն ամոքելու, նրան ազատություն, բարեկեցիկ կյանք ապահովելու ազնիվ մղումով։ Ստ. Շահումյանի, Ս. Սպանդարյանի, Ս. Կասյանի, Ա. Խումարյանի և շատ այլ ականավոր բոլշևիկների մտերմի ու զինակցի կյանքի ուղին շատ կողմերով խիստ ուսանելի է։

* * *

Ներսես Իվանի Ներսիսյանը ծնվել է 1886 թ., նախկին Նախիջևանի գավառի Աստապատ գյուղում։ Նրա հայրը՝ Օվան ապերը, սակավահող երկրագործ էր, ծանրաբեռնված մշտական կարիքի մեջ ապրող մեծ ընտանիքով։ Ներսեսը վաղ հասակից է ըմպել չքավորության ու դառնության բաժակը. նա ծանոթ էր գյուղի, իսկ հետո՝ քաղաքի աշխատավորության ծանր վիճակին։ Սկզբնական կրթությունն ստացել է իր ծննդավայր Աստապատ գյուղի ծխական դպրոցում, որից հետո հաճախել գավառի հայաբնակ Յամխանա գյուղի ռուսական դպրոցը, որը, ինչպես նշում է Ներսիսյանի մանկության ընկերներից Գարեգին Կարապետյանը, գավառի «համալսարանի» հռչակ ուներ գյուղական փոքրիկ դպրոցների շարքում։ Սովորաբար Յամխանայի դպրոցն ավարտելուց հետո աշակերտների որոշ մասը գնում էր Թիֆլիս՝ ուսումը շարունակելու Մանվելյանի՝ իր ժամանակին հայտնի մասնավոր հաշվապահական դասընթացներում, որից հետո աշխատանքի անցնում քաղաքի հարուստ առևտրականների խանութներում՝ որպես հաշվապահ, գործակատար։ Բարեպատեհ հանգամանքների բերումով, երբ Ներսեսն ավարտում է Յամխանայի դպրոցը, հայրը համոզված, որ գյուղում մնալով նա երբեք չի ազատվի չքավորության ճիրաններից, քանի որ վարելահող չունի, վճռում է ամբողջ ընտանիքով տեղափոխվել Թիֆլիս՝ «բախտ որոնելու»։

1905—1906 թթ. Ներսիսյանների ընտանիքն արդեն Թիֆլիսում էր. երիտասարդ Ներսեսն ընդունվում է Մանվելյանի դասընթացները, ավարտում ու ստանում հաշվապահի վկայական։

Անցնելով 1905—1906 թթ. հեղափոխական շարժման բովով, 1908 թ. նա կապվում է սոցիալ-դեմոկրատական բանվորական խմբակների հետ, իսկ 1911 թվականին արդեն բոլշևիկյան կուսակցության նվիրված մարտիկներից էր։ Հենց այդ տարվանից էլ նա մտերմանում է Սուրեն Սպանդարյանի հետ, նրա օգնությամբ ծավալում պրոպագանդիստական-կազմակերպչական աշխատանք բանվորների, ծառայողների, արհեստավորների ու գործակատարների շրջանում։ Չնայած իր հռետորական համեստ ունակություններին, նա համարձակ ելույթներ է ունենում բանվորական միտինգներում և հավաքույթներում, ուղղված դաշնակցական և մենշևիկյան կուսակցությունների դեմ, բուրժուանացիոնալիստական կուսակցությունների ազգայնամոլ, շովինիստական հայացքների դեմ։

Ներսես Ներսիսյանի նման պրոպագանդիստներ այն տարիներին մենք շատ չենք ունեցել։ Նա կարողանում էր մտնել բանվորների շարքերը և գրավել մարդկանց, հավատ ներշնչել իր անկեղծ ու պարզ խոսքի նկատմամբ։ Քանի՜, քանի՜ հայ բանվորներ Ներսեսի օգնությամբ ու ջանքերով մտել են բոլշևիկյան կուսակցության շարքերը, դարձել մեր կազմակերպության հավատարիմ մարտիկներ։

Ներսիսյանը քիչ ջանքեր չի թափել նաև հեղափոխական գաղտնի գրականության, թռուցիկների տարածման գործում։ Մեծ աշխատանք է կատարել նա Թիֆլիսում, որպես բոլշևիկյան բանվորական խմբերի կազմակերպիչ, ագիտատոր-պրոպագանդիստ։ Ներսիսյանի հոր բնակարանը Թիֆլիսում՝ բոլշևիկյան կուսկազմակերպության ընդհատակյա բնակարաններից մեկն էր։ Քիչ գաղտնի ժողովներ չեն հրավիրվել Վողնեսենսկայա փողոցի վրա գտնվող այդ տան ներքնահարկում։

Թիֆլիսի Մալովանսկայա փողոցի № 7 տան նկուղում ցարական պահնորդական բաժանմունքը 1912 թ. գտել էր բոլշևիկյան կազմակերպության արխիվը (ականավոր բոլշևիկ Ելենա Ստասովայի «պորտֆելը», որի մեջ կային գաղտնի գրագրություն, ցուցակներ և այլ փաստաթղթեր)։ Այդ առիթով ձերբակալվում են մի շարք բոլշևիկներ՝ Ելենա Ստասովան, Սուրեն Սպանդարյանը, Վասիլ Խաչատրյանը և ուրիշներ։ «Պորտֆելում» գտնված փաստաթղթերի հետքերով ժանդարմերիային հեշտությամբ հաջողվում է հայտնաբերել նաև կազմակերպության գաղտնի տպարանը՝ Վասիլ Խաչատրյանի քրոջ բնակարանում։

Թիֆլիսի ժանդարմերիան, քաջալերված նման հաջողություններից, մանրազնին խուզարկում է Ներսիսյանի բնակարանը, սակայն ոչինչ չի գտնում։ Ընկերների ձերբակալության լուրն առնելով, նա կռահում է, որ հերթն իրեն է հասնելու և այնպես է անում, որ ժանդարմերիան ոչ մի կասկածելի բան չի հայտնաբերում իր բնակարանում։ Չնայած դրան, Ներսիսյանը ձերբակալվում է և մի քանի ամիս բանտում պահվելուց հետո երեք տարով աքսորվում Աստրախան։ Այդ տարիներին Աստրախան էին աքսորված Ստեփան Շահումյանը, Աշոտ Խումարյանը, կարճ ժամանակով՝ Սարգիս Կասյանը, Շալվա Էլիավան և ուրիշներ։ Աքսորից վերադառնալով Թիֆլիս՝ Ներսիսյանը շարունակում է բոլշևիկյան ընդհատակյա աշխատանքը։

* * *

Ներսես Ներսիսյանը 1911 թվականից սկսած մինչև Հոկտեմբերյան մեծ հեղափոխությունը Թիֆլիսի բոլշևիկյան կազմակերպության եռանդուն և աչքի ընկնող անդամներից էր։ Ակտիվ կուսակցական աշխատանք է տարել նա ցարիզմի օրոք, ընդհատակյա պայմաններում՝ Սուրեն Սպանդարյանի, Սարգիս Կասյանի, Ասատուր Կախոյանի և շատ ուրիշների հետ։ Թեպետ չէր սիրում ճառեր արտասանել, բայց ընդունակ պրոպագանդիստ էր, սրամիտ ընդդիմախոս, կարող էր մի երկու դիպուկ նկատողություններով և ռեպլիկներով տապալել հակառակորդին։

Կուսակցական աշխատանքի հենց սկզբից Ներսեսը վայելում էր բանվորների և ընդհանրապես շրջապատի վստահությունն ու հարգանքը։ Դրան իրազեկ ենք դառնում նրան լավ ճանաչող ընկերների հուշերից և, առաջին հերթին՝ Սուրեն Սպանդարյանի նամակներից։

1913 թ. Մետեխի բանտից կնոջը գրած նամակներից մեկում Սպանդարյանը հայտնում է նրան Ներսեսի հասցեն, որպեսզի Օլգա Սպանդարյանը հարկ եղած դեպքում դիմի նրան։ Ներսեսն այն ժամանակ Ռոստովում էր՝ աքսորավայրի ճանապարհին։

Սպանդարյանը չի մոռանում կնոջը հայտնել Ներսեսի մասին, երբ ինքը 1913 թ. հոկտեմբերի 7-ին Ռոստով-Դոնի վրայով «մեկնում էր» Սիբիր։ Ռոստովից գրած նրա նամակից երևում է, որ գնացքում նա տեսել է և Ներսեսին. վերջինս նրա համար տաք հագուստ է գնել։

Մի այլ նամակում , գրված Սիբիրից, 1915 թ. դեկտեմբերի 18-ին, մահից ամիսներ առաջ, Սպանդարյանը կրկին հատաքրքրվում է Ներսեսով և խնդրում ընկերոջը (որին հասցեագրված էր նամակը) «Եթե Նշանին տեսնես (Թիֆլիսի գրաշար բանվոր— Ա. Վ.)... հարցրու նրան մեր մեծ Ներսեսի մասին և եթե կարելի է, մի կերպ նրա հասցեն ինձ ուղարկիր» (ընդգծումը մերն է— Ա. Վ.)։

Ներսես Ներսիսյանին «Մեծ Ներսես» էին անվանում տարիքով իրենից փոքր գրաշար Ներսեսից տարբերելու համար։ Ականավոր բոլշևիկը չի մոռանում համեստ ընկերոջը՝ մեր Ներսեսին և միշտ հիշում է նրան իր նամակներում։



Սպանդարյանը Ներսեսի համար եղել է պրոֆեսիոնալ հեղափոխականի օրինակելի կերպար, նա անկեղծ սիրել ու հարգել, երբեք չի մոռացել նրան, մի առանձին թախիծով հիշել է միշտ, մինչև իր կյանքի վերջը։

Ներսիսյանն իր հուշերում, դեռ 1916 թ. գրել է, թե ինչպիսի մեծ ազդեցություն է թողել Սպանդարյանը իր և ընկերների վրա։ 1911 թ. ամառանը Թիֆլիսի բուսաբանական այգում Սուրենը զրուցել է մի խումբ բանվորների նոր կազմակերպված բջջի ժողովում։

— Սուրենը մեծ ազդեցություն գործեց իմ ընկերների վրա,— պատմում է Ներսեսը,— այնպես տպավորիչ էր նրա ամեն մի խոսքը։ Այդ օրվանից Սուրենը դարձավ բոլորիս սիրելին և անբաժան ընկերը։

Հասնում է 1917 թվականը. տապալվում է ցարական բռնակալությունը, և բռնկվում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը։ Ներսիսյանը՝ քաղաքի կուսկազմակերպության ակտիվ մասնակիցը, լծվում է կուսակցական ակտիվ աշխատանքի. 1920 թ., որպես Սովետական Ռուսաստանի լիազոր ներկայացուցիչ, Թիֆլիս է գալիս Ս. Մ. Կիրովը։ Ներսեսը դառնում է նրա գործակիցը։ Վրաստանի մենշևիկյան կառավարությունը, որը քաջ տեղյակ էր Ներսիսյանի հեղափոխական գործունեությանը, ձերբակալում է նրան և աքսորում Բաթումի։ Մենշևիկյան աքսորից Ներսիսյանը, ինչպես և մի շարք այլ աքսորյալներ, Վրաստանում սովետական իշխանության հաստատվելուց հետո վերադառնում են Թիֆլիս։

Ներսես Ներսիսյանը հաստատվում է Վրաստանում. նա մեծ պարտաճանաչությամբ և բոլշևիկյան եռանդով ֆինանսական աշխատանքի է անցնում. երկար տարիներ նա աշխատել է Վրաստանի կոմկուսի Կենտկոմի և կոմկուսի Անդրկովկասյան երկրային կոմիտեում որպես ֆինանսական բաժնի վարիչ։ Երբ 1923 թ. Ալեքսանդր Մյասնիկյանի առաջարկությամբ աշխատանքի անցա կոմկուսի Անդրկովկասյան երկրային կոմիտեում, մտերմացա այդ ազնիվ ու համեստ մարդու հետ։ Հիշում եմ ինչպիսի՜ բծախնդիր խնայողությամբ էր նա տնօրինում պետական գումարները, ամեն կերպ խուսափում ավելորդ ծախսերից, շռայլումներից, խստապահանջությամբ նա հսկում էր կուսակցական ու պետական կոպեկները։ Ոչ ժլատ, բայց անձնական կյանքում խիստ սակավապետ այդ մարդը հաճախ էր ասում՝ կուսակցական ապարատը պետք է օրինակ հանդիսանա սովետական հիմնարկություններին համար։ Ինչպե՞ս կարող ենք շռայլություն թույլ տալ։ Միայն մի «շռայլություն» էր նա իրեն թույլ տալիս. գրքեր ձեռք բերելու համար ոչինչ չէր խնայում։ Սիրում էր կարդալ. ազատ ժամերի մեծագույն հաճույքն էր այդ նրա համար։ Թեև չուներ բարձրագույն կրթություն, բայց լավ ծանոթ էր հայ և ռուս կլասիկներին։ Սիրով կարդում էր նաև արևմտաեվրոպական գրողների երկերը։ Նրա տնային գրադարանում կարելի էր գտնել բոլոր անվանի հեղինակների գործերը, համամիութենական ակադեմիայի ամենարնտիր հրատարակությունները։ Նա կարդում էր ո՛չ միայն գեղարվեստական գրականություն, ոչ միայն «ռոմաններ», այլև գիտական-քաղաքական-մարքսիստական հանրամատչելի գրականություն։ Դեռ այն ժամանակներից, երբ Նպարավաճառի խանութում գործակատար էր, ռուսերեն հրատարակվող գիտա-մասսայական հանդեսներից մեկի մշտական բաժանորդն էր նա։

1928 թ. Ներսիսյանն աշխատանքի անցավ Անդրերկրկոմում։ Նա գոհ էր իր աշխատանքից։ 1935 թվականին ազատվելով Անդրերկրկոմի ապարատից, նա աշխատանքի անցավ Անդրկովկասյան հեռագրական գործակալությունում։

* * *

Ներսես Ներսիսյանը բացառիկ նվիրված ընկեր էր։ Անաչառ ու անհիշաչար, բայց ընկերական ոչ մի կապ չէր կարող ստիպել նրան «ներել ընկերոջ անվայել արարքը, ծածկել նրա հանցանքը»։ Ներսեսի սիրած խոսքն էր լատինական հայտնի ասացվածքը. «Պլատոնը բարեկամս է, բայց ճշմարտությունն առավել մեծ բարեկամ է»։ Մինչև վերջ նա հավատարիմ մնաց այդ սկզբունքին։

Իսկ երբ հարկ էր լինում, անձնազոհության հասնող նվիրվածությամբ նա պաշտպանում էր իր մտերմին, եթե վերջինիս սպառնում էր որևէ անարդարություն։ Նման դեպքերը շատ են, հնարավոր չէ այստեղ հիշել դրանք։ Այս իմաստով ավելի քան բնորոշ են հետևյալ տողերը՝ գրված նրա հիշատակին.

Ամպրոպի պահին դու չպահվեցիր,
Խիզախ փորձեցիր կայծակը գրկել,—
Հեղեղը եկավ, և դու փորձեցիր
Ընկերոջդ դին հեղեղից փրկել,—
Բայց մութ ջրերում ինքդ սուզվեցիր,
Ինքդ շանթվեցիր ու ընկար հրկեզ...

1937 թվականին մենք կորցրինք մեր անզուգական ընկերոջը՝ Ներսես Ներսիսյանին։

ՎԱՐԴԱՆՅԱՆ Ա. Հ.



# «ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ 1968 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ ՀՈԴՎԱԾՆԵՐԻ ԵՎ ՆՅՈՒԹԵՐԻ ՑԱՆԿ



## ԱՌԱՋՆՈՐԴՈՂՆԵՐ



## Կ. ՄԱՐՔՍԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



## ԼԵՆԻՆՅԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԵՐԵՆ



## ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ



## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



## ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ







## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ



## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



## ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ



## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ԱՄԲԻՈՆ



## ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ







## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ



## ՄԵՐ ՀՐԱՊԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ



## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ



## ՄԱՄՈՒԼԻ ՕՐՎԱ ԱՌԹԻՎ



## ԴՐՎԱԳՆԵՐ ՄԵԾ ՀԱՅՐԵՆԱԿԱՆԻՑ



## ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



## ԱՀԱ ՄԵՐ ՆՈՐ ԳՅՈՒՂԸ



## ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԱՐԴԻԿ

# Թվեր ու փաստեր

Անցած տարվա համեմատությամբ, պլանով նախատեսված 6,8 տոկոսի դիմաց ՍՍՀՄ ազգային եկամուտը 1968 թվականին անեց մոտ 7,2 տոկոսով: Եկող տարում այն կանի ևս 6,5 տոկոսով, ընդ որում ազգային եկամտի մեջ սպառման ֆոնդերի տեսակարար կշիռը փոքր ինչ ավելանում է: 1969 թվականին ազգային եկամտի ծավալը 1965 թվականի մակարդակը կգերազանցի մոտ 31 տոկոսով:

●

Հնգամյակի երեք տարում ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը աճել է մոտավորապես 30 տոկոսով, այդ թվում՝ ժողովրդական սպառման ապրանքներինը՝ 28 տոկոսով, որը զգալիորեն գերազանցում է պլանային առաջադրանքը:

Հնգամյակի երեք տարում շարք է մտել ավելի քան 1.000 նոր, խոշոր ձեռնարկություն. արդյունաբերական հիմնական արտադրաֆոնդերն աճել են 28 տոկոսով:

●

1969 թվականին երկրում արտադրվելու է 687 միլիարդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն այնքան, որքան արտադրվել է 1961 և 1962 թվականներին միասին վերցրած:

Այս տարի Սովետական Միությունում արտադրվել է ավելի քան 309 միլիոն տոննա «սև ոսկի»՝ նավթ: Այսքան նավթ մեր երկրում երբեք չի արտադրվել: Այդքան նավթը փոխադրելու համար կպահանջվի 5 միլիոն երկաթուղային վագոն: Այդ վագոնները միմյանց կցելու դեպքում, կունենան մոտ 50 հազար կիլոմետր երկարություն:

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ. պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

Ձև. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 26/XII 1968 թ.:

ՎՖ 05893 Պատվեր 602 Թղթի չափսը՝ 70 × 108 1/16: Տպաքանակ՝ 10801: Գինը՝ 25 կոպ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյանի փողոց № 28:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՄԱՐՔՍ Կ., ԷՆԳԵԼՍ Ֆ., ԼԵՆԻՆ Վ. Ի.— Պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին: *Մ. քաղհրատ, 1968, 636 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Սովետական վիճակագրության կազմակերպման մասին: *Մ. 1968, 136 էջ:*

ՎՈԼԿՈՎ Գ. Ն.— Հանճարի ծնունդը: *Կարլ Մարքսի անհատականության և աշխարհայացքի գոյացումը: Մ.,* «Молодая гвардия» *հրատ., 1968, 174 էջ:*

Կուսակցական աշխատանքը նոր խնդիրների մակարդակին: *Մ., Քաղհրատ, 1968, 288 էջ:*

Զրույցներ սոցիալիզմի քաղաքատնտեսության մասին: *Կուսուսուցման սիստեմի համար: Մ., քաղհրատ, 1968, 336 էջ:*

Պատերազմը և հեղափոխությունը Իսպանիայում 1936—1939: *Հատոր I: Իսպաներեն լեզվով ներկա աշխատությունը պատրաստել է հանձնաժողովը՝ Դոլորես Իբարուրիի նախագահությամբ: Մ.,* «Прогресс» *հրատ., 1968, 614 էջ:*

Սոցիալիստական տնտեսության կառուցման կոլեկտիվ փորձի մասին: *Մ., 1968, 415 էջ:*

Բանվոր դասակարգի դերը ՍՍՀՄ-ում գյուղի սոցիալիստական վերափոխման մեջ: *Մ.,* «Мысль» *հրատ, 1968, 255 էջ:*

ԶԱԳՈՐՈԴՆԻՅ Վ. Ի.— Կոմունիզմի կառուցումը և բաշխման հարաբերությունների զարգացումը: *Մ.,* «Мысль» *հրատ, 1968, 214 էջ:*

ՊՈՍՊԵԼՈՎ Պ. Ն.— Պատմության պրոբլեմները: *Մ.,* «Наука» *հրատ., 1968, 208 էջ:*

Խմբագրման տեսությունը և գործնականը: *Քրեստոմատիա, Մ.,* «Высшая школа» *հրատ., 1968, 439 էջ:*

ԿՈՒԶՆԵՑՈՎ Ե. Մ.— Քաղաքական ագիտացիան մեր օրերում: *Մ., 1968, 144 էջ:*

ՅԱՐԵՄԵՆԿՈ ՅՈՒ. Վ.— «Մեծ թռիչք»-ը և ժողովրդական կոմունաները Չինաստանում: *Քաղհրատ., 1968, 143 էջ:*

ԱՊՐԵՍՅԱՆ Հ. Զ.— Անդրկովկասյան ժողովուրդների գեղագիտական միտքը: *Մինչմարքսյան շրջան: Մ.,* «Искусство» *հրատ., 1968, 336 էջ:*

ԿՅՈՒՐԵՂՅԱՆ Վ. Ա.— Բանվորի աշխատանքի վարձատրումը: *Հարց ու պատասխաններ: Եր., «Հայաստան» հրատ., 1968, 108 էջ:*

Հայաստանի լենինյան կոմերիտմիության պատմություն: *Եր., «Հայաստան» հրատ., 1968, 415 էջ:*

ՌՇՏՈՒՆԻ Վ. Հ.— Ուրվագծեր Հայաստանի գյուղացիության պատմության: *1828—1917 թթ.: Մաս Բ (1870—1917): Եր., «Միտք» հրատ., 1968, 276 էջ:*

Գիտական աշխատություններ: *Հայ գրականության բաժին: Եր., 1968, 461 էջ:*

ՀԱԿՈԲՅԱՆ Թ. Խ. և ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Պ.— Երևան 2750 *(782 թ. մ.թ.ա.—1968 թ.), Եր., «Հայաստան» հրատ., 1968, 424 էջ:*

ԳԻՆԸ 25 Կ.



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՆՎՏԱՆԳ ՓՈՇԵՑԻՐ

*Ներկման արտադրամասում անվըստահությամբ են մոտենում ամեն տեսակի էլեկտրական փոշեցիրներին։ Դա լիովին հասկանալի է. պատահական կայծը կարող է հեշտությամբ բոցավառել լաքերի ու ներկերի գոլորշու խառնուրդը։ Պոդոլսկի Կալինինի անվան մեխանիկական գործարանում ջերմորեն ընդունվեց փոշեցիրների նոր կոնստրուկցիան։ Նոր փոշեցիրն անվտանգ է, կատարելագործված և լայնորեն գործադրվում է այդ գործարանում։*

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԿԱՐԴԻՈԼՈԳ

*Բժիշկներին օգնող, հիվանդությունն ախտորոշող հաշվիչ մեքենաներ են այժմ ստեղծվում շատ երկրներում։ Իհարկե, կիբեռնետիկական այդ ախտորոշիչները շատ արժանիքներ ունեն, սակայն քիչ չեն նաև թերությունները։ Այսպես, ախտորոշելով միայն հիվանդի մոտ առկա ախտանիշների հիման վրա, հանրագումարի են բերում հիվանդության միայն իրենց հայտնի ախտանիշները՝ չբացահայտելով դրանց միջև եղած փոխադարձ կապը։ Նման դեպքերում նվազում է ախտորոշման ճշգրտությունը։*

*Բուլղարացի գիտնականներն ու ինժեներներն ստեղծել են մի մեքենա, որը զերծ է վերոհիշյալ թերություններից և աչքի է ընկնում ախտորոշման առավել բարձր ճշգրտությամբ։ Այն հայտաբերում է սրտի 33 տեսակի ախտ։*

## ՆԱՎԱՐԿՈՂ ԳՈՐԾԱՐԱՆ

*Երկաթբետոնե ծանր շինանյութերը սովորաբար գործարանից շինարարության վայրն են փոխադրվում հատուկ ավտոմեքենաներով. այդ անշահավետ է և աննպատակահարմար։*

*Վերջերս Ֆրեյբուրգում (ԳԴՀ) շըրարկվել է «KOX—1» մակնիշի երկաթբետոնե սարքերի նավարկող գործարանը։ Այն անցնում է երկրի ներքին ջրային երթուղիներով, որը հնարավորություն է ընձեռում անմիջապես մոտ գտնվելու իր սպասարկմանը ենթակա օբյեկտներին։ Նավարկող գործարանի երկարությունը 80, լայնությունը՝ 9,42 մետր է, բեռնատարողությունը՝ 1350 տոննա։ Գործարանը, որտեղ աշխատում են ընդամենը 30 բանվոր, թողարկում է օրական 60 խմ պատրաստի շինանյութ։*

## ԿԱՐԵԼԻ Է ՀԱԼԵՑՆԵԼ ԵՐԻԿԱՄԱՅԻՆ ՔԱՐԵՐԸ

*Վերջերս հունգար գիտնականներն ստեղծել են նոր դեղամիջոց՝ կալկուրեն, որը հալում, վնասազերծում է երիկամային քարերը։ Նոր դեղամիջոցն առայժմ թողարկվում է փորձնական նպատակով։ Եթե կալկուրենն «արդարացնի իրեն», ապա երիկամաքարերի գրեթե $^{2}/_{3}$-ը հնարավոր կլինի հալել ու հեռացնել առանց օրգանիզմին վնաս կամ ցավ պատճառելու։*

## ԷՄԱԼԱՊԱՏ ԽԼԱՑՈՒՑԻՉՆԵՐ

*Մինչև վերջին ժամանակներս խլացուցիչը ավտոմեքենայի կարճակյաց մասերից էր։ Արտածվող գազերը մետաղն այնքան շուտ էին քայքայում, որ հարկ էր լինում մեկ տարի գործածելուց հետո փոխել այն։ Բելգիական գիտնականները որոշեցին էմալապատմամբ կանխել խլացուցչի քայքայումը։ Էմալապատումից հետո խլացուցիչների ծառայության ժամկետը երեք անգամ երկարեց։*

## ԱՎԵԼԻ ԼԱՎ Է ՉԾԽԵԼ

*1067 դիահերձման տվյալների հիման վրա պարզվել է, որ տղամարդկանց 33,3 տոկոսը, որ իրենց կյանքում ծխել են ավելի քան 500 հազար գլանակ, հիվանդացել են թոքերի քաղցկեղով։ 200—500 հազար գլանակ ծխողների մոտ այդ թիվը հասնում է 20,3, իսկ 200 հազարից պակաս գլանակ ծխողների մոտ՝ 14 տոկոսի. մահանալուց հինգ տարի առաջ ծխելը թողած մարդկանց մոտ փոքր-ինչ պակաս է՝ 11,5, բոլորովին չծխող մարդկանց մոտ՝ ընդամենը 1,3 տոկոս։*

*Գիտնականները գտնում են, որ ամենագլխավորը ծխած գլանակների ընդհանուր թիվն է, անկախ ծխելու ժամկետից և ծխողի տարիքից (Չեխոսլովակիա)։*